ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ—ТЕОРЕТИЧЕСКИЙ
ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

№ 11
ՆՈՅԵՄԲԵՐ
1961 Թ.

★

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
XXXVIII
ՏԱՐԻ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



### ԽՈՍՈՒՄ ԵՆ ՍՄԿԿ XXII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՊԱՏԳԱՄԱՎՈՐՆԵՐԸ



### ՀՈԴՎԱԾՆԵՐ



### ՀԼԿԵՄ ՔԱՌԱՍՈՒՆ ՏԱՐԻՆ



### ՆՇԱՆԱՎՈՐ ՏԱՐԵԹՎԵՐ



### ՀՈՒՇԵՐ ՌԵՎՈԼՅՈՒՑԻՈՆ ԱՆՑՅԱԼԻՑ



### ՆԱՄԱԿՆԵՐ ԵՎ ԹՂԹԱԿՑՈՒԹՅՈՒՆՆԵՐ

СОДЕРЖАНИЕ





# ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ԿԱՌՈՒՑՄԱՆ ՊԱՏՄԱԿԱՆ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ

Հոկտեմբերի 31-ին ավարտվեց մեծ, դարակազմիկ նշանակություն ունեցող ՍՄԿՊ XXII համագումարը, որը լիակատար հավանություն տվեց Կենտկոմի վարած քաղաքական գծին ու պրակտիկ գործունեությանը: Անձնախնդրաց ստեղծագործական քննարկմամբ համագումարը միաձայն ընդունեց պարտիայի նոր Ծրագիրն ու Կանոնադրությունը, հաստատեց Կենտրոնական վերստուգիչ Հանձնաժողովի հաշվետվությունը, ընտրեց պարտիայի կենտրոնական օրգաններ:

Քննարկած հարցերի ծավալով ու խորությամբ, ընդունած որոշումների այժմեականությամբ և կենսունակությամբ ՍՄԿՊ XXII համագումարը բացառիկ տեղ գրավեց ոչ միայն մեր պարտիայի, այլև միջազգային կոմունիստական շարժման պատմության մեջ: Լենինյան խորաթափանցությամբ և ամենայն կոնկրետությամբ սահմանելով մեր երկրում կոմունիզմի կերտման պրակտիկ ուղիները, համագումարը մի անգամ ևս վառ կերպով դրսևորեց մեր պարտիայի շարքերի կուռ միասնությունը, ժողովրդի հետ ունեցած իր անխզելի կապերի ամրապնդումը, մարդկության պայծառ ապագայի համար ցուցաբերած անսասան կամքն ու վճռականությունը:

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXII համագումարը մեր դարաշրջանի՝ մարքսիզմ-լենինիզմի փառահեղ հաղթանակների դարի աչքի ընկնող իրադարձությունն է: Պարտիայի ամենաներկայացուցչական այդ համագումարը իրավամբ կոչվեց կոմունիզմ կառուցողների ֆորում, որն իր ընդունած նոր Ծրագրում և որոշումներում մարմնավորում է ամբողջ աշխարհի աշխատավոր մարդկության լավագույն իղձերն ու ցանկությունները, որոնք այսօր իրագործվում են մեր մեծ Հայրենիքում:

***

Համագումարում ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի հաշվետվության և Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Ծրագրի մասին զեկուցումներով հանդես եկավ ՍՄԿՊ Կենտկոմի Առաջին քարտուղար Նիկիտա Սերգեևիչ Խրուշչովը: Ստեղծագործական մարքսիզմ-լենինիզմի այդ նշանավոր փաստաթղթերում համագումարի են բերված սովետական հերոս ժողովրդի վիթխարի պայքարի արդյունքները, բացահայտված են կոմունիստական հասարակարգի կառուցման պայծառ հեռանկարները, գծված են նոր կյանքի ուղիները: Ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուցումներում և համագումարի մյուս փաստաթղթերում տրված է ոչ միայն Սովետական Միության հետագա ծաղկման, այլև միջազգային կյանքի և խաղաղության կենսական հարցերի ճշմարիտ լուծման բանալին:

ՍՄԿՊ Կենտկոմի հաշվետվության մեջ նշվում է, որ պարտիայի XX համագումարից հետո անցած վեց տարիները մեր պարտիայի, սովետական ժողովրդի, ամբողջ մարդկության համար համաշխարհային պատմական բացառիկ նշանակություն ունեցան: «ՍՄԿՊ XX համագումարից հետո,— ասված է հաշվետու զեկուցման մեջ,— անցած ժամանակաշրջանի գլխավոր բովանդակությունը համաշխարհային երկու սոցիալական սիստեմների՝ սոցիալիստական և կապիտալիստական սիստեմների մրցությունն է: Այդ մրցությունը արդի պատմական էտապում դարձել է համաշխարհային զարգացման առանցքը, հիմքը: Հասարակական զարգացման մեջ ավելի ու ավելի պարզորոշ են դրսևորվել երկու գիծ, պատմական երկու տենդենց: Մեկը՝ սոցիալական առաջադիմության, խաղաղության և կառուցման գիծն է: Մյուսը՝ ռեակցիայի, ճնշման ու պատերազմի գիծն է»: Առաջին գծի կրողը սոցիալիզմն է, երկրորդինը՝ կապիտալիզմը:

Օգտագործելով կապիտալիզմի նկատմամբ ունեցած իր գերազանց առավելությունները, խաղաղ մրցության ընթացքում սոցիալիզմը հին աշխարհից դիրք-դիրքի հետևից է նվաճում: Սոցիալիզմը կապիտալիստական աշխարհին ամենից առաջ լրջորեն նեղել է մարդկային գործունեության վճռական՝ նյութական արտադրության ոլորտում: Համաշխարհային արտադրության մեջ բարձրացել է սոցիալիստական սիստեմի տեսակարար կշիռը, նրա զարգացման տեմպերը զգալիորեն ավելի առաջ են անցել կապիտալիստական ամենազարգացած երկրների տեմպերից: Սոցիալիստական երկրները 1960 թվականին, 1937 թվականի համեմատությամբ, արդյունաբերական արտադրության ծավալը ավելացրել են 6,8 անգամ, մինչդեռ կապիտալիստական երկրներինը՝ 2,5 անգամից էլ պակաս: Համաշխարհային արդյունաբերական արտադրության մեջ սոցիալիզմի երկրների բաժինը (որը 1955 թվականին կազմում էր 27 տոկոս) 1960 թվականին հասավ մոտավորապես 36 տոկոսի: Այստեղից հետևում է, որ սոցիալիզմի երկրները ի վիճակի են անհամեմատ ավելի արագ զարգացնելու արտադրողական ուժերը, քան կապիտալիզմը և՝ ստեղծելու նյութական և հոգևոր բարիքների իսկական առատություն:

Մեր պարտիայի XX համագումարի արած թեորիական կարևոր հետևություններից մեկն այն էր, որ մեր դարաշրջանի բնորոշ գիծը մեկ երկրի շրջանակներից սոցիալիզմի դուրս գալն ու համաշխարհային սիստեմի վերածվելն է: Համագումարից հետո անցած ժամանակաշրջանում,— ասում է ընկեր Ն. Ս. Խրուշչովը,— կատարվեց նոր, կարևոր տեղաշարժ՝ համաշխարհային սոցիալիստական սիստեմը դառնում է հասարակության զարգացման վճռական գործոնը:

Կենտկոմի հաշվետվության մեջ նշված է, որ անցած ժամանակաշրջանում ավարտվեց սոցիալիզմի համաշխարհային սիստեմի պատմական զարգացման կարևոր էտապը, որի բնորոշ առանձնահատկություններն են՝ Սովետական Միությունը ձեռնամուխ է եղել կոմունիզմի ծավալուն կառուցմանը. ժողովրդական դեմոկրատիայի երկրների մեծ մասում վերացել է էկոնոմիկայի բազմակացութաձևությունը և ավարտվում է սոցիալիզմի կառուցումը. սոցիալիստական երկրների միջև բազմակողմանիորեն զարգացել են եղբայրական համագործակցությունն ու փոխադարձ օգնությունը: Այժմ արդեն ոչ միայն Սովետական Միությունում, այլև բոլոր սոցիալիստական երկրներում վերացված են կապիտալիզմի վերականգնման սոցիալ-տնտեսական հնարավորությունները: Համաշխարհային նոր սիստեմի հարաճուն հզորությունը երաշխավորում է սոցիալիստական երկրների քաղաքական ու սոցիալ-տնտեսական նվաճումների



անխախտությունը: Իրոք ազատ ժողովուրդների համագործակցության շրջանակներում ապահովված է սոցիալիզմի լիակատար հաղթանակը:

Կոմունիստական և բանվորական պարտիաների ղեկավարությամբ գնալով ավելի կամրապնդվի սոցիալիստական երկրների ինտերնացիոնալ եղբայրությունը, որը խարսխված է մարքսիզմ-լենինիզմի վրա: Այդ երկրները իրավահավասարության, փոխադարձ շահավետության, ընկերական փոխօգնության ու արտադրական սերտ համագործակցության շնորհիվ ավելի կհզորանան և սոցիալիզմը միջազգային զարգացման վրա գլխավորապես կներգործի իր տնտեսական հաջողություններով: Դա արտահայտում է սոցիալիզմի լագերի երկրների արմատական շահերը: Սակայն այդ շահերին չեն համապատասխանում Ալբանիայի Աշխատանքի պարտիայի ղեկավարների գործողությունները, որոնք հակասում են Կոմունիստական և բանվորական պարտիաների ներկայացուցիչների 1957 և 1960 թվականների խորհրդակցությունների Դեկլարացիային ու Հայտարարությանը և չեն կարող որակվել այլ կերպ, քան որպես պառակտիչ գործողություններ, որոնք ուղղված են սոցիալիստական երկրների բարեկամությունն ու համախմբվածությունը քայքայելու նպատակին և ձեռնտու են իմպերիալիստներին: Համագումարը վճռականորեն մերժելով մեր պարտիայի ու նրա լենինյան Կենտկոմի վրա Ալբանիայի Աշխատանքի պարտիայի ղեկավարների անհիմն ու զրպարտչական հարձակումները, հույս հայտնեց, որ նրանք, եթե թանկ են գնահատում իրենց ժողովրդի շահերը և իրոք ցանկանում են բարեկամություն ՍՄԿՊ-ի, բոլոր եղբայրական պարտիաների հետ, կհրաժարվեն իրենց սխալ հայացքներից և կվերադառնան սոցիալիստական երկրների, միջազգային կոմունիստական շարժման հետ միասնության ու համագործակցության ուղին:

Այժմ, երբ սոցիալիստական երկրների ժողովրդական տնտեսությունն ու կուլտուրան բուռն ծաղկում են ապրում, երբ մեծ չափով աճում է ազգային եկամուտը և բարձրանում ժողովրդի նյութական բարեկեցությունը, կապիտալիստական աշխարհը գալարվում է իր հակասությունների ու դժվարությունների մեջ և ապրում է տնտեսական ու սոցիալական նոր ցնցումներ: Կապիտալիզմի հետագա նեխման ընդհանուր տենդենցը շարունակում է գործել անողորմ ուժով: Կապիտալիստական երկրների էկոնոմիկան է՛լ ավելի անկայուն է դարձել: Նրա կարճատև վերելքները հաճախակի փոխարինվում են անկումներով ու ճգնաժամերով: Միայն կապիտալիզմի միջնաբերդում՝ ԱՄՆ-ում, հինգ տարվա ընթացքում տեղի է ունեցել արտադրական երկու ճգնաժամային անկում, իսկ հետպատերազմյան ժամանակաշրջանում՝ այդպիսի չորս անկում: Նույնպիսի երևույթ առկա է նաև կապիտալիստական մյուս երկրներում, ուր միլիոնավոր բանվորներ զրկվում են աշխատանքից, գնալով ստվարանում է գործազուրկների բանակը: Կապիտալիստական շատ երկրներում գործազրկությունը տևական բնույթ է ստացել և ավելի է վատթարացել աշխատավորների վիճակը: Դա, իր հերթին, սրել է հակասությունը բանվոր դասակարգի և կապիտալի միջև, ուժեղացրել աշխատավորության պայքարը տիրող անարդարության դեմ: Արդի կապիտալիզմի հակասություններից կարևորագույնն այն է,— ասաց ընկեր Ն. Ս. Խրուշչովը,— որ մարդու աշխատանքը ավելի ու ավելի մեծ չափով է օգտագործվում կործանման միջոցներ ստեղծելու նպատակով: Այն հասարակարգը, որ ստեղծում է այդպիսի հակասություններ, վարկաբեկվում և ինքն իրեն սպառում է:

Կապիտալիստական երկրներում ներքին հակասությունների հետ միասին սրվում են նաև արտաքին հակասությունները: Այդպիսի հակասություններից են վերջին տարիներս կապիտալիստական աշխարհի ներսում ուժերի փոխհարաբերության մեջ տեղի ունեցած լուրջ փոփոխությունները: ԱՄՆ-ը համաշխարհային արտադրության և առևտրի ասպարեզում կորցրել են իրենց երբեմնի գերազանցությունը, նշանակալիորեն թուլացել են Անգլիայի ու Ֆրանսիայի դիրքերը. Արևմտյան Գերմանիան և Ճապոնիան համաշխարհային շուկայում հանդես են գալիս որպես Անգլիայի, Ֆրանսիայի և նույնիսկ ԱՄՆ-ի լուրջ մրցակիցներ: Հակասությունները դրսևորվում են նաև ՆԱՏՕ-ի մեջ և ռազմական մյուս ագրեսիվ բլոկներում:

Համագումարն ընդգծեց, որ գնալով խորանում է անդունդը մի կողմից գաղութային լուծը թոթափած և անկախություն նվաճած երկրների և, մյուս կողմից, բուն կապիտալիստական երկրների միջև: Ազատագրված ժողովուրդները այլևս չեն ցանկանում կողոպտվել կապիտալիստական գիշատիչ մոնոպոլիաների կողմից և պայքար են ծավալում նրանց դեմ: Չնայած գաղութային սիստեմը փուլ է եկել, բայց նրա մնացորդները վերացված չեն: Աֆրիկայում և Ասիայում միլիոնավոր մարդիկ դեռևս տառապում են գաղութային ստրկությունից և պայքար մղում իրենց ազատության համար: Դա դուր չի գալիս մոնոպոլիստներին և նրանց ագրեսիվ կորիզը կազմող Ամերիկայի Միացյալ Նահանգներին, որոնք դարձել են համաշխարհային ռեակցիայի կենտրոնը: Ստեղծված փակուղուց դուրս գալու նպատակով նրանք չտեսնված չափերով ավելացնում են ռազմական հատկացումները, մասսայական ոչնչացման զենքի արտադրությունը, բորբոքում ազատության ու անկախության համար մաքառող ժողովուրդների դեմ մղվող գաղութակալական պատերազմը:

Իմպերիալիստական շրջանները և ամենից առաջ ԱՄՆ-ը բացահայտորեն զինում են Արևմտյան Գերմանիայի ռևանշիստներին, տենդագին նախապատրաստվում համաշխարհային երրորդ պատերազմի: Բայց մեր ժամանակներում արդեն խիստ վտանգավոր է հակասություններից ելք որոնել պատերազմի միջոցով: Խաղաղության հուսալի պատվար Սովետական Միությունը, սոցիալիստական ողջ լագերը դարձել են մի այնպիսի հզոր ուժ, որ կործանիչ, մեկընդմիշտ ոչնչացնող հակահարված կհասցնեն բոլոր նրանց, ովքեր կհամարձակվեն ձեռք բարձրացնել սոցիալիստական երկրների վրա, ովքեր փորձ կանեն խախտելու աշխարհի խաղաղությունը: Սոցիալիստական երկրների հետ միասին խաղաղության քաղաքականությունը պաշտպանում են գաղութակալությունից ազատագրված Ասիայի, Աֆրիկայի, Լատինական Ամերիկայի շատ երկրներ, ամբողջ աշխարհի պրոգրեսիվ մարդկությունը:

Խաղաղության պահպանման համար կարևոր նշանակություն ունի Գերմանիայի հետ հաշտության պայմանագրի կնքումը և դրա հիման վրա Արևմտյան Բեռլինի դրության նորմալացումը: Սովետական կառավարությունը պնդել ու այժմ էլ պնդում է, որ անհրաժեշտ է շուտափույթ լուծել գերմանական հարցը. նա դեմ է դրա ձգձգմանը: Կենտկոմի հաշվետվության մեջ նշվում է, որ եթե արևմտյան տերությունները գերմանական պրոբլեմի կարգավորման պատրաստակամություն ցուցաբերեն, մենք այդ ժամանակ չենք պնդի, որ հաշտության պայմանագիրն անպայման ստորագրվի մինչև 1961 թվականի դեկտեմբերի 31-ը: Գլխավորն այն է, որ լուծվի այդ հարցը, վերացվեն երկրորդ համաշխար-



հային պատերազմի մնացորդները, Գերմանիայի հետ հաշտության պայմանագիր կնքվի:

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXII համագումարի բարձր ամբիոնից ընկեր Ն. Ս. Խրուշչովը հայտարարեց, որ մենք ամեն ինչ կանենք ամբողջ աշխարհի խաղաղությունն ամրապնդելու համար, որ ՍՍՌՄ արտաքին քաղաքականության ասպարեզում այսուհետև ևս պետք է՝

— անշեղորեն և հետևողականորեն իրագործենք սոցիալական տարբեր կարգեր ունեցող պետությունների խաղաղ գոյակցության սկզբունքը, որպես Սովետական Միության արտաքին քաղաքականության գլխավոր կուրս.

— ամրապնդենք սոցիալիզմի երկրների միասնությունը եղբայրական համագործակցության ու փոխօգնության հիման վրա, մեր ավանդը մուծենք համաշխարհային սոցիալիստական սիստեմի հզորության ամրապնդման գործում:

— զարգացնենք կոնտակտները և համագործակցենք ամբողջ աշխարհի խաղաղության բոլոր մարտիկների հետ. խաղաղություն ցանկացող բոլոր մարդկանց հետ միասին հանդես գանք նրանց դեմ, ովքեր պատերազմ են ուզում.

— ամրապնդենք պրոլետարական համերաշխությունը ամբողջ աշխարհի բանվոր դասակարգի և աշխատավորության հետ, բարոյական և նյութական բազմակողմանի աջակցություն ցույց տանք իմպերիալիստական ու գաղութային ճնշումից իրենց ազատագրման համար, իրենց անկախության ամրապնդման համար պայքարող ժողովուրդներին.

— ամենալայն կերպով զարգացնենք միջազգային գործարար կապերը, տնտեսական համագործակցությունն ու առևտուրը այն բոլոր երկրների հետ, որոնք ցանկանում են նույնպիսի հարաբերություններ պահպանել Սովետական Միության հետ.

— վարենք ակտիվ ու ճկուն արտաքին քաղաքականություն, հասնելով բանակցությունների միջոցով համաշխարհային հասունացած պրոբլեմների կարգավորման, մերկացնենք պատերազմի հրձիգների մեքենայություններն ու մանևրները, գործարար համագործակցություն հաստատենք բոլոր պետությունների հետ՝ փոխադարձության հիման վրա:

ՍՄԿՊ XX և XXI համագումարների պատմական որոշումների անշեղ կենսագործումը ապահովեց ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության նոր, հզոր վերելքը, սովետական մարդկանց նյութական բարեկեցության ու կուլտուրական մակարդակի հետագա բարձրացումը, մեր մեծ Հայրենիքի հզորության աճը: Ամբողջ պրոգրեսիվ մարդկությունը հիացած է աշխարհում առաջինը սոցիալիզմ կառուցած մեր ժողովրդի համաշխարհային-պատմական հաղթանակներով: Այդ հաղթանակները արդյունք են մեր լենինյան պարտիայի իմաստուն քաղաքականության, որը պատվով է կատարում հասարակության ռևոլյուցիոն վերափոխման ղեկավարի իր միսիան: «Մեր պարտիան,— համագումարում ասաց ընկեր Ն. Ս. Խրուշչովը,— աշխարհի վրա բարձրացնելով ազատության ջահը, սոցիալիզմի և կոմունիզմի դրոշը, փառքով պսակեց XX դարը, որպես մարդկության ճակատագրի արմատական փոփոխությունների դար: Ժողովրդական մասսաներին առաջնորդող բոլոր երկրների կոմունիստների մեծ բանակի հերոսական պայքարն արագացրեց պատմության ընթացքը, մոտեցրեց մարդկության ամենապայծառ իդեալների իրականացումը: Բայց որքա՜ն ավելի կարագանա պատմության առաջընթացը, երբ Սովետական Միությունում կառուցվի կոմունիստական հասարակարգը:

Կոմունիզմի գործն առաջ է շարժվում հսկայական քայլերով: Կոմունիզմի դրոշակակիրները՝ մարքս-լենինյան պարտիաները, ապացուցեցին, որ իրենք ռևոլյուցիոներ-նորարարների պարտիաներ են, ժողովրդական երջանկության դարբիններ: Բոլոր երկրների առաջավոր մարդիկ այժմ ամենալավագույնը, ամենալուսավորը կոմունիստների հետ են կապում: Կոմունիզմի ուժերն անսպառ են: Կոմունիզմի կողմն է կյանքի ճշմարտությունը, պատմության ճշմարտությունը»:

Սովետական Միությունում կոմունիզմը դարձել է միլիոնների կենդանի, պրակտիկ գործը: Սովետական մարդիկ բոլոր ջանքերը գործադրում են ծավալուն կոմունիստական շինարարության ժամանակաշրջանում պարտիայի առաջադրանքները պատվով կատարելու համար: Նրանք իրենց ավանգարդի՝ փառապանծ լենինյան պարտիայի ղեկավարությամբ խոշոր հաջողությունների են հասել ժողովրդական տնտեսության, կուլտուրայի զարգացման և մյուս բնագավառներում: Այդ առթիվ ՍՄԿՊ XXII համագումարին պարտիայի Կենտկոմի հաշվետվության մեջ բերված թվերն ու փաստերը ուրախություն են պատճառում սովետական բոլոր մարդկանց և արտասահմանյան մեր բարեկամներին:

Հաջողությամբ է կատարվում ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանը: Յոթնամյակի անցած տարիներին ՍՍՌՄ արդյունաբերական արտադրանքի արտադրությունն ամբողջությամբ վերցրած ավելի արագ է աճել, քան նախատեսված է կոնտրոլ թվերով: Առաջվա նման մեր երկիրը ԱՄՆ-ին զգալիորեն գերազանցում է արտադրության զարգացման տեմպերով, իսկ վերջին տարիներս սկսել է նրանից անցնել նաև արտադրանքի կարևորագույն շատ տեսակների բացարձակ աճով: Այժմ մեր երկիրը արտադրում է համաշխարհային արդյունաբերական արտադրանքի գրեթե մեկ հինգերորդը:

Արձանագրելով արդյունաբերության զարգացման գործում ձեռք բերված հսկայական հաջողությունները, համագումարը միաժամանակ նշեց այն թերությունները, որոնք առանձին տնտեսական շրջաններում ու գերատեսչություններում գոյություն ունեն պլանների կատարման, արտադրանքի որակի, մատակարարման, տեխնիկական պրոգրեսի և այլ բնագավառներում: Համագումարը խնդիր դրեց՝ ավելի լրիվ օգտագործել սոցիալիստական էկոնոմիկայի ռեզերվները, վերացնել շռայլությունն ու անտնտեսվարությունը, ամեն կերպ բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը: «Անհրաժեշտ է,— ասված է Կենտկոմի հաշվետվության մեջ,— որ մենք ավելի արագ և մինչև վերջ օգտագործենք այն ամենը, ինչ մեր երկրում ստեղծում են գիտությունն ու տեխնիկան, ավելի համարձակորեն վերցնենք բոլոր այն լավը, ինչ տալիս է արտասահմանյան փորձը, ավելի լայնորեն կարգացնենք մասնագիտացումն ու կոոպերացումը, արագացնենք արտադրության կոմպլեքսային մեքենայացման ու ավտոմատացման տեմպերը»:

Հաշվետու ժամանակաշրջանում հաջողությունները խոշոր են նաև սոցիալիստական գյուղատնտեսության զարգացման բնագավառում: Պարտիայի, նրա լենինյան Կենտկոմի գործադրած հսկայական ջանքերի շնորհիվ յուրացվել են 41,8 միլիոն հեկտար խամ և խոպան հողեր: 1956—1960 թվականներին, նախորդ տարիների համեմատությամբ, տարեկան միջին հաշվով 42 տոկոսով շատ հացահատիկ է արտադրվել: Նշանակալիորեն ավելացել է մսի, կաթի, ձվի, խաղողի, բանջարեղենի և գյուղատնտեսական մյուս մթերքների արտադրությունը: Բարձր զարգացած գյուղատնտեսությունը համարելով կոմունիզմի կառուցման անհրաժեշտ պայմանը, պարտիան խնդիր է դնում ամեն կերպ ամրապնդել ու զարգացնել կոլտնտեսային և սովխոզային արտադրությունը, հասնել այն բանին, որ գյուղատնտեսական արտադրանքի արտադրությունն առաջ անցնի եղած պահանջարկից:



Համագումարն արձանագրեց նաև այն մեծ հաջողությունները, որոնք ձեռք են բերված ժողովրդի նյութական բարեկեցության բարձրացման, կուլտուրայի, գիտության, արվեստի ու գրականության զարգացման բնագավառներում: Մեր հասարակությունն այսօր դարձել է ամենակրթված հասարակությունն աշխարհում, իսկ սովետական գիտությունը առաջավոր դիրքեր է գրավել համաշխարհային գիտության կարևորագույն բնագավառներում: Այդ հաղթանակների թագն ու պսակն են հանդիսանում սովետական մարդկանց տիեզերական խիզախ թռիչքները:

Կենտկոմի հաշվետվության մեջ ցույց է տրված, թե ինչպես, զարգացման ներկա էտապում, սոցիալիստական հասարակական հարաբերությունները վերանում են կոմունիստական հասարակական հարաբերությունների, գնալով լայն զարգացում է ստանում սովետական դեմոկրատիան, ուժեղանում են աշխատավորների ակտիվությունն ու լայն մասնակցությունը պետական և հասարակական գործերին, ամենուրեք դրսևորվում են անհատի ազատությունն ու ստեղծագործական ձիրքերը, զարգանում ու ձևավորվում է նոր մարդը՝ կոմունիզմի ակտիվ կառուցողը:

Ստեղծագործական մարքսիզմ-լենինիզմի հիման վրա, խոր ճշմարտացիությամբ ՍՄԿՊ Կենտկոմի հաշվետվության մեջ լուսաբանված են պարտիայի գաղափարական, քաղաքական և կազմակերպական աշխատանքի արմատական հարցերը, դրանց իրականացման ձևերն ու մեթոդները: Պարտիան գաղափարական-քաղաքական իր ողջ աշխատանքը սերտորեն կապում է պրակտիկայի, ժողովրդի բուն կյանքի հետ, սովետական մարդկանց դաստիարակում է մարքսիզմ-լենինիզմին հավատարմության, պրոլետարական ինտերնացիոնալիզմի, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի ոգով, բուրժուական գաղափարախոսության բոլոր և ամեն տեսակ դրսևորումների, ռևիզիոնիզմի, ինչպես նաև դոգմատիզմի և աղանդավորության նկատմամբ անհաշտության, կոմունիզմի թշնամիների մեքենայությունների դեմ քաղաքական զգոնության բարձրացման ոգով:

Բոլորի համար ակներև են ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառներում Սովետական Միության Կոմունիստական պարտիայի ձեռք բերած մեծ հաջողությունները, որոնք արդյունք են նրա լենինյան գլխավոր գծի հաստատակամ ու հետևողական կենսագործման, որն իր խոր արտահայտությունն է գտել ՍՄԿՊ XX համագումարի պատմական որոշումներում: XX համագումարի քաղաքական գիծը լիակատար հաղթանակ է տարել և դարձել ամբողջ սովետական ժողովրդի հարազատ գործը:

Կենտկոմի հաշվետվության առթիվ համագումարի բանաձևում ասված է. «...հաշվետու ժամանակաշրջանում պարտիայի գործունեության կարևորագույն կողմը եղել է պարտիական կյանքի լենինյան նորմերի և պարտիայի ու պետության բոլոր օղակներում կոլեկտիվ ղեկավարության սկզբունքների վերականգնումն ու հետագա կարգացումը:

Սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման համար, միջազգային ամբողջ կոմունիստական շարժման համար հսկայական նշանակություն ունեցավ պարտիայի, նրա Կենտրոնական Կոմիտեի կողմից Ի. Վ. Ստալինի անձի պաշտամունքի քացահայտ ու համարձակ դատապարտումը: Պարտիան ժողովրդին ասաց ամ-

բողջ ճշմարտությունը անհատի պաշտամունքի ժամանակաշրջանում իշխանության չարաշահումների մասին և վճռականապես դատապարտեց անհատի պաշտամունքի իրադրության մեջ ծնունդ առած սխալները, խեղաթյուրումները ու լենինիզմի ոգուն խորթ մեթոդները»: Սրանով պարտիան է՛լ ավելի բարձրացրեց իր մարտունակությունը, ընդլայնեց ու ամրապնդեց մասսաների հետ ունեցած անխզելի կապը, լայն ասպարեզ բացեց ժողովրդի ստեղծագործական ուժերի դրսևորման համար: Մեր պարտիան ու նրա լենինյան Կենտրոնական Կոմիտեն իրենց առաջընթաց ճանապարհին դեն շպրտեցին Մոլոտովի, Կագանովիչի, Մալենկովի, Բուլգանինի, Վորոշիլովի, Պերվուխինի, Սաբուրովի և նրանց հարած Շեպիլովի հակապարտիական ֆրակցիոն խմբին, որը նենգորեն փորձում էր պարտիային շեղել լենինյան ուղուց, կասեցնել XX համագումարի որոշումների կենսագործումը և անհատի պաշտամունքի վնասակար հետևանքների լիկվիդացումը:

Պարտիայի XXII համագումարը բարձր գնահատեց ընկեր Ն. Ս. Խրուշչովի գլխավորած ՍՄԿՊ Կենտկոմի ծառայությունները անհատի պաշտամունքի վնասակար հետևանքների վերացման և հակապարտիական խմբի մերկացման գործում: Համագումարը աննպատակահարմար համարեց մեր պարտիայի ու պետության մեծ հիմնադիր Վ. Ի. Լենինի դամբարանում Ի. Վ. Ստալինի սարկոֆագի հետագա պահպանումը, քանի որ անհատի պաշտամունքի ժամանակաշրջանում Ստալինի կողմից լենինյան պատգամների լուրջ խախտումները, իշխանության չարաշահումները, սովետական ազնիվ մարդկանց դեմ գործադրած մասսայական ռեպրեսիաները և մյուս գործողությունները անհնարին են դարձնում նրա դագաղը Վ. Ի. Լենինի դամբարանում թողնելը: Համագումարի այս որոշումը ջերմ պաշտպանության ու հավանության արժանացավ ամբողջ ժողովրդի կողմից:

***

Քննարկելով ՍՄԿՊ Ծրագրի նախագիծը, ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուցումները, համագումարի պատգամավորները մեծ ոգևորությամբ էին խոսում մեր պարտիայի համաշխարհային-պատմական հաղթանակների մասին: Նրանք նշում էին, որ պարտիան պատվով է կատարել իր առաջին և երկրորդ ծրագրերը, ապահովել է սոցիալիզմի լիակատար և վերջնական հաղթանակը և այժմ սովետական ժողովրդին վստահորեն տանում է դեպի կոմունիստական հասարակարգ: Համագումարում արտասահմանյան մարքս-լենինյան 80 պարտիաների պատվիրակությունների ղեկավարների ելույթներում ընդգծվեցին մեր պարտիայի աշխարհաշեն գործերը, նրա XXII համագումարի և նոր Ծրագրի վիթխարի նշանակությունը միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման համար: Իսպանիայի Կոմպարտիայի նախագահ ընկ. Դոլորես Իբարուրին ՍՄԿՊ Ծրագիրը բնորոշեց որպես համաշխարհային պրոլետարիատի կյանքի և հույսի երգ, որի կենսագործումը նոր էտապ կնշանավորի մարդկության դեպի կոմունիզմ տանող ճանապարհին: Ծրագիրը, ասաց նա, ոչ միայն կոմունիզմի կառուցման ձեր դրոշն է, դա նաև մեր դրոշն է, սոցիալիզմի դարաշրջանի կոմունիստական շարժման ու միջազգային բանվոր դասակարգի դրոշն ու ծրագիրը: Դա ունի նույնպիսի նշանակություն, ինչպիսին որ ուներ Մարքսի և Էնգելսի «Կոմունիստական մանիֆեստը» կապիտալիզմի կազմավորման շրջանում:



XXII համագումարի հաստատած պարտիայի Ծրագիրը իրավամբ համարվում է արդի դարաշրջանի Կոմունիստական մանիֆեստ: Սովետական ժողովուրդը, ամբողջ աշխարհի առաջադեմ մարդկությունը պատմական այդ մեծ փաստաթղթում պարզորոշ տեսնում են նոր, ամենաարդարացի հասարակարգի՝ կոմունիզմի կառուցման գիտականորեն հիմնավորված պլանը: Սովետական բոլոր մարդիկ հաստատապես վստահ են, որ պարտիայի Ծրագիրը հաջողությամբ կկենսագործվի: Նոր Ծրագրի կենսագործումով կիրականանան աշխատավոր մարդկության դարավոր երազանքները՝ կոմունիստական հասարակարգում կթագավորեն խաղաղությունը, աշխատանքը, ազատությունը, հավասարությունը, բոլոր ժողովուրդների եղբայրությունն ու երջանկությունը: ՍՄԿՊ Ծրագրի մասին տված զեկուցման մեջ խոսելով կոմունիզմի կառուցման մասին, ընկեր Ն. Ս. Խրուշչովն ասաց. «Մենք տեսնում ենք, թե ինչպես պետք է այն կառուցվի, ինչպիսի տեսք ունի նա դրսից և ներսից, ինչ մարդիկ են ապրելու այնտեղ և նրանք ինչ են անելու, որ կոմունիզմի շենքը ավելի հարմարավետ ու գեղեցիկ լինի: Ովքեր ուզում են իմանալ, թե ինչ է կոմունիզմը, մենք հպարտությամբ կարող ենք ասել՝ «Կարդացեք մեր պարտիայի Ծրագիրը»»:

ՍՄԿՊ Ծրագիրը մարմնավորում է պարտիայի կոլեկտիվ միտքը, ցույց է տալիս Մարքսի, Էնգելսի, Լենինի ռևոլյուցիոն ուսմունքի զարգացման գործում պարտիայի ու նրա Կենտկոմի մատուցած անգնահատելի ծառայությունը: Նրա նախապատրաստման համար հսկայական, հիրավի պատմական նշանակություն ունեցած պարտիայի XX և XXI համագումարները, որոնք սկզբունքորեն նոր, շատ բան մտցրին պարտիայի ու սովետական հասարակության կյանքի արմատական հարցերի լուծման մեջ, համաշխարհային զարգացման պրոցեսների վերլուծության մեջ: Մարքսիզմ-լենինիզմի հզոր լույսի տակ պարտիայի Ծրագիրը պարզ պատասխան է տալիս կոմունիզմի համար մղվող պայքարի տեսության ու պրակտիկայի բոլոր արմատական հարցերին, արդի համաշխարհային զարգացման կարևորագույն խնդիրներին:

Մեր լենինյան պարտիայի նոր Ծրագիրը ամբողջ սովետական ժողովրդի ծրագիրն է, «Ամեն ինչ հանուն մարդու, մարդու բարօրության համար» պարտիայի լոզունգի մարմնավորումը կյանքում: Ծրագրում և այդ առթիվ ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուցման մեջ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության, կուլտուրայի զարգացման, ժողովրդի նյութական բարեկեցության բարձրացման վերաբերյալ բերված ռեալ թվերը, կոնկրետ, ճշգրիտ ու համոզիչ հաշվարկումները, դրույթների ու հետևությունների խոր ու գիտական հիմնավորումները օրինական բերկրանք ու հրճվանք են առաջացնում սովետական մարդկանց, արտասահմանի մեր բոլոր բարեկամների շրջանում: Եվ ինչպես չհրճվել ու չուրախանալ, երբ երկու տասնամյակի ընթացքում կստեղծվի կոմունիզմի նյութատեխնիկական բազա, երբ նախատեսված ժամանակաշրջանում՝ 20 տարում հասարակական համախառն արդյունքը կավելանա մոտավորապես հինգ անգամ: Այդ ժամանակաշրջանում ՍՍՌՄ արդյունաբերական արտադրանքի թողարկումը կաճի առնվազն վեց անգամ, իսկ գյուղատնտեսության համախառն արտադրանքը՝ մոտավորապես երեք ու կես անգամ: Եվ այդ ամենը արվում է սովետական մարդու լիառատ կյանքի համար, մեր երկրում ամենաբարձր կենսամակարդակ ապահովելու համար:

Կոմունիզմի կառուցման իր հոյակապ Ծրագրում պարտիան առանձնահատուկ տեղ է հատկացրել աշխատավորների դաստիարակության ու գիտակցա-

կանության բարձրացման, հասարակության բոլոր անդամների գիտական աշ-
խարհայացքի ձևավորման, կոմունիստական բարոյականության նորմերի զար-
գացման, ինտերնացիոնալ դաստիարակության, անհատի ներդաշնակ ու բազ-
մակողմանի զարգացման, մարդկանց գիտակցության և վարքագծում եղած
կապիտալիզմի մնացուկների հաղթահարման հարցերին:

Մեր պարտիական կազմակերպությունների հետագա գործունեության հա-
մար բացառիկ կարևոր նշանակություն ունի համագումարի կողմից հաստատ-
ված ՍՄԿՊ Կանոնադրությունը, որը լիովին համապատասխանում է կոմունիս-
տական հասարակարգի կառուցման ժամանակաշրջանի նոր խնդիրներին: Այն
մեր պարտիայի կազմակերպական հզոր զենքն է, որն անսահման ասպարեզ է
բացում կոմունիստների ակտիվության ու նախաձեռնության անման, պարտիա-
կան կազմակերպությունների մարտունակության բարձրացման և ներպարտիա-
կան դեմոկրատիայի ծավալման համար:

Պարտիայի Կանոնադրության առթիվ ՍՄԿՊ Կենտկոմի քարտուղար ընկ.
Ֆ. Ռ. Կոզլովի զեկուցման մեջ առանձնահատուկ ուժով ընդգծված է, որ կոմու-
նիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը բնութագրվում է Կոմունիստա-
կան պարտիայի՝ որպես սովետական հասարակության ղեկավար, ուղղություն
տվող ուժի, դերի և նշանակության հետագա աճմամբ: Ծրագրային այդ կարևո-
րագույն դրույթը իր վառ մարմնացումն է գտել ՍՄԿՊ նոր Կանոնադրության
մեջ, ուրեղ ստեղծագործաբար ընդհանրացված է պարտիական շինարարու-
թյան բազմահարուստ փորձը:

ՍՄԿՊ XXII պատմական համագումարի որոշումներն ու նյութերը գտնվում
են Սովետական Միության, ժողովրդական դեմոկրատիայի երկրների, հողագըն-
դի ողջ պրոգրեսիվ մարդկության ուշադրության կենտրոնում: Աշխարհի բոլոր
ծայրերից ստացվող ջերմ արձագանքները վկայում են, որ համագումարը դար-
ձել է ժամանակակից կյանքի ամենակարևորագույն իրադարձությունը: Կոմու-
նիզմի մեծ նշմարտությունն իր վիթխարի ուժով տարածվում է ամենուր, հաս-
նում գաղութատիրության անարգ լուծը թոթափած ժողովուրդներին, պայքարի
ու ազատության ոգի ներշնչում կապիտալի երկրների և գաղութաերերի ճնշման
ու կեղեքման տակ հեծող երկրների աշխատավորներին. նրանք ավելի ու ավե-
լի պարզորոշ գիտակցում են, որ ապագան պատկանում է կոմունիզմին:

Սովետական Միության ժողովրդի հետ միասին մեր ռեսպուբլիկայի աշխա-
տավորությունն անհուն բերկրանքով ընդունեց ՍՄԿՊ XXII համագումարի որո-
շումները, կոմունիզմի կառուցման պարտիայի ծրագիրը: Ծրագրի կենսահաս-
տատ գաղափարներն ու վիթխարի նախագծումներն ընկալվեցին որպես հերո-
սական սիմֆոնիա, որը մեր բոլոր աշխատավորներին նոր կորով է ներշնչում
կոմունիզմի հոյակապ ծրագիրը կենսագործելու համար:

Երկրագնդի մի հսկայական տարածության վրա կառուցվում է նոր կյանք,
կոմունիստական կյանք: Այն կառուցվում է միլիոնների աշխատանքով, աշխա-
տանքով ու միայն աշխատանքով: Ամբողջ սովետական ժողովրդի հետ միասին
մեր ռեսպուբլիկայի բոլոր աշխատավորները կլարեն իրենց ջանքերը և ստեղծա-
գործական բեղուն աշխատանքով կապահովեն հարազատ պարտիայի XXII հա-
մագումարի որոշումների և նրա նոր Ծրագրի անշեղ կենսագործումը:

---



# ԿՈՄՈՒՆԻԶՄԸ ԿԿԱՌՈՒՑՎԻ ԺՈՂՈՎՐԴԻ ԱՇԽԱՏԱՆՔՈՎ

## Հ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

ՀԿՊ Երևանի կազմակերպության Լենինյան շրջկոմի քարտուղար



*Մեծ սիրով ու ջերմությամբ եմ վերհիշում
լենինյան պարտիայի XXII համագումարի
աշխատանքի անմոռանալի օրերը: Տպավո-
րությունները այնքան խոր ու անմիջական
են, որ կարծես թե հիմա էլ վերստին համա-
գումարում եմ, կրեմլյան այդ վեհաշուք և
խանդավառված պալատում, մյուսների հետ
կլանված ունկնդրում եմ մեր օրերի հերո-
սական սիմֆոնիան, հստակ տեսնում կոմու-
նիզմի հոյակապ, ճարտարագործ ձեռքերով
կառուցված շենքի ավարտուն ուրվագծերը:*

*Համագումարում նստած լսում եմ Նիկիտա
Սերգեևիչ Խրուշչովի զեկուցումները, պատ-
գամավորների և եղբայրական կոմպարտիա-
ների պատվիրակությունների ղեկավարների
ելույթները, և իմ աչքի առաջ իր ամբողջ վե-
հությամբ կանգնում է մեր մեծ Հայրենիքը՝
իր հաղթական երթում, սոցիալիստական աշ-
խարհի մյուս երկրների հետ ուս-ուսի տված:
Եվ ինձ ամբողջովին համակում է հպարտության զգացումը մեր պարտիայի ու
ժողովրդի սխրագործությունների համար, ամբողջ սրտով ուրախանում եմ, որ
մեր երկրի ձեռք բերած այդ մեծագույն հաջողությունների մեջ իր արժանի
ավանդն ունեն նաև մեր շրջանի աշխատավորները:*

*Համագումարում կրկին ու կրկին ես մտովին վերհիշում էի նախահամա-
գումարյան լարված ու քրտնաջան աշխատանքի ամիսները: Այդ օրերին մեր
շրջանի բանվորների, ինժեներա-տեխնիկական աշխատողների ստեղծագործ
միտքն ու ջանքերն ուղղված էին մի նպատակի՝ աշխատանքային նորանոր ձեռ-
քերով հավերժացնելու ՍՄԿՊ XXII համագումարը: Դա մի իսկական հա-
մաժողովրդական շարժում էր, որ օրավուր ծավալվում ու մեծանում էր: Ար-
դյունաբերական, շինարարական և տրանսպորտային ձեռնարկությունների կո-
լեկտիվները պայքարի էին դուրս եկել կոմունիզմ կառուցողների համագումարի
պատվին իրենց ստանձնած սոցիալիստական բարձր պարտավորությունները
ամբերի կատարելու համար: Գործնական պայքար էր մղվում լավի ու լավա-*

գույնի, աշխատանքային յուրաքանչյուր ժամը ավելի արդյունավետ օգտագործելու համար։

Սոցիալիստական մրցությունն առանձնապես մեծ թափ ստացավ պարտիայի նոր Ծրագրի նախագծի համաժողովրդական քննարկման օրերին. մեր մարդկանց ոգեշնչում էին ստեղծագործ աշխատանքի փառավոր արդյունքները, նոր հասարակարգի կառուցման հոյակապ հեռանկարները։ Այդ օրերին առիթ եմ ունեցել ժողովներում լսելու բազմաթիվ կոմունիստների ու անպարտիականների ջերմ, սրտաբուխ խոսքերը, ձեռնարկություններում զրուցելու շատ մարդկանց հետ. Նրանք միահամուռ ու վստահ մի բան էին ասում՝ կոմունիզմի կառուցման պարտիայի բոլոր նախագծումները միանգամայն ռեալ են ու իրականանալի, որ նրանք պատրաստ են գործի վերածելու մարդկային երջանկության համար պարտիայի մշակած այդ մեծ ծրագիրը։ Դա աշխատանքի մարդկանց գործնական պատասխանն էր պարտիայի կողմից հանդիսավոր կերպով հռչակված այն կոչին, թե սովետական մարդկանց ներկայիս սերունդը կապրի կոմունիզմի օրոք։ Նրանք քաջ գիտակցում էին, որ այդ ծանր ու դժվարին պայքարն արդեն սկսված է, որ նոր հասարակարգը կկառուցվի իրենցից յուրաքանչյուրի ազնիվ ու քրտնաջան աշխատանքով։

Կանգնած աշխատանքային մեծ հերթափոխի, բանվորները, ինժեներատեխնիկական աշխատողները ջանում էին ավելի շատ ու բարձրորակ արտադրանք տալ երկրին։ Նախահամագումարյան մրցության յուրաքանչյուր օրը նոր հաջողություններ էր բերում մրցողներին. ձեռնարկություններից հաղորդումներ էին ստացվում արտադրական նոր կարողությունների գործարկման, նոր տեսակի արտադրանքի և նյութերի յուրացման ու թողարկման, նորագույն տեխնիկայի ու տեխնոլոգիայի ներդրման մասին։

Աշխատանքի արդյունքները նշանակալից են։ ՍՄԿՊ XXII համագումարի բացման նախօրյակին շրջանի ավելի քան 45 արդյունաբերական, շինարարական և տրանսպորտային ձեռնարկություններ պարտիային զեկույց տվեցին՝ կատարված ու գերակատարված է համախառն արտադրանքի թողարկման տասնամսյա առաջադրանքը։ Շրջանի ձեռնարկությունները այդ ժամանակաշրջանում պլանից դուրս տվին 3 միլիոն 80 հազար ռուբլու արտադրանք։

Գոհունակությամբ պետք է նշել կիրովցիների հայրենանվեր աշխատանքը։ Կիրովի անվան գործարանի կոլեկտիվը, որը պայքարում է կոմունիստական աշխատանքի ձեռնարկության պատվավոր կոչմանն արժանանալու համար, իր խոստումից էլ հինգ օր շուտ՝ հոկտեմբերի 12-ին, կատարեց տասն ամսվա արտադրական պլանը, տնտեսելով 1300 տոննա հիմնական հումք, 1,3 միլիոն կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, 3700 տոննա պայմանական վառելանյութ։ Արտադրանքի որակը գերազանց է։ Կիրովցիներն իրենց պատգամավորն էին ուղարկել համագումար՝ Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Ս. Ամիրխանյանին, որի ղեկավարած ապարատավարների կոմունիստական աշխատանքի բրիգադան քայլում էր մրցության առաջավորների շարքում։ Ապագայի պիոներների՝ № 2—1 ցեխի Հ. Ազիզյանի ղեկավարած կոմունիստական աշխատանքի բրիգադայի անդամների սխրանքներին այժմ ծանոթ են բոլորը. ինն ամսում նրանք կատարեցին մեկ ու կես տարվա արտադրական նորմա և այժմ աշխատում են 1963 թվականի հաշվին. այսպես են սովետական մարդիկ կրճատում կոմունիստական լուսաշող կյանքի կերտման ժամկետները, մոտեցնում գալիքը։ Այստեղ գործարկվեց էլեկտրոլիզային նոր հզոր վաննան, որի հեղինակ-



ները՝ ինժեներներ Գ. Սարգսյանը, Կ. Խուդոյանը և Է. Մկրտչյանն իրենց ստեղծագործ մտքի ու համառ պրպտումների արդյունքը նվիրեցին հարազատ պարտիայի համագումարին։

Ձեռք բերած իրենց հաղթանակների մասին պարտիային ու ժողովրդին զեկուցեցին «Պոլիվինիլացետատի», Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական, սարքաշինական, ռետինա-տեխնիկական իրերի, մուլտի-ապակյա տարայի, հիդրոպոմպերի, էլեկտրասարքերի գործարանները և այլն։ Ավտոմոբիլային մինիստրության էլեկտրաշարժիչների նորոգման գործարանը ժամկետից երկու և կես ամիս շուտ կատարեց տարեկան ծրագիրը. № 2 տրեստի № 3 շինարարական վարչության կոլեկտիվը համագումարի նախօրյակին կատարեց շինարարական-մոնտաժային աշխատանքների տարեկան պլանը։

Շրջանի արդյունաբերական ձեռնարկություններն անցած տասն ամսում յուրացրին հարյուրից ավելի կատարելագործված, բարձր ճշգրտություն ունեցող մեքենաների, սարքերի, նոր նյութերի ու առարկաների արտադրությունը։

Երբ այսօր հանրագումարի ենք բերում նախահամագումարյան մրցության արդյունքները, ապա գոհունակությամբ կարելի է նշել, որ համաժողովրդական այդ արշավի առաջին շարքերում էին կոմունիստները, որոնք իրենց անձնական օրինակով ոգևորում և առաջ էին տանում աշխատավորներին։ Մրցության օրերին ավելի ստվարացան արտադրության առաջավորների շարքերը, այն համալրվեց աշխատանքային նոր հերոսներով։ Թե որքան գործարար էր այդ մրցությունը և որքան բարերար ներգործությունը մեր աշխատանքի վրա, կարելի է ցույց տալ մեկ օրինակով. եթե ընթացիկ տարվա ինն ամիսներին իրենց պլանները չկատարող ձեռնարկությունների թիվը կազմում էր 18, ապա հոկտեմբերին այն խիստ կրճատվեց, հասնելով ութի։ Ավտոպահեստամասերի գործարանը, որը երկար ժամանակ ետ էր մնում, հոկտեմբեր ամսին ոչ միայն կատարեց իր պլանը, այլև փակեց անցած ամիսներին ստեղծված ճեղքվածքը։

Երբեք չեմ մոռանա համագումարի աշխատանքի այն հանդիսավոր ու վըճռական պահը, երբ պատգամավորներս միահամուռ հաստատում էինք պարտիայի նոր Ծրագիրը։ Լիովին վստահ սովետական ժողովրդի հրաշագործ ուժին և պատասխանատվության մեծ զգացումով, ամբողջ պարտիայի ու ժողովրդի անունից մենք քվեարկեցինք կոմունիզմի կառուցման, ժողովրդի երջանկության ծրագրի օգտին։ Մենք քաջ գիտեինք, որ նոր հասարակարգի կառուցման այդ հոյակապ ծրագիրը մեր ուժերից վեր չէ և այն կկատարվի մեծագույն հաջողությամբ։

Պատմական համագումարը վերջացավ. մենք վերադարձանք մեր տեղերը, մեր առօրյա աշխատանքին։ Մենք՝ պատգամավորներս, ականատես եղանք, թե ինչպես ամբողջ ժողովուրդը լիովին հավանություն տվեց պարտիայի ուրվագծած ամենապայծառ ու հրապուրիչ հեռանկարներին, պարտիայի Ծրագիրը դիտելով որպես իր սեփական ծրագիրը, իր անմիջական գործը։ Աշխատավորները պատրաստակամություն հայտնեցին իրենց բոլոր ուժերը, գիտելիքները նվիրաբերելու կոմունիզմի հաղթանակի գործին։

Դեպի կոմունիզմ մեր առաջընթացի նպատակները պարզ են, ուղիները նշված։ ՍՄԿՊ XXII համագումարի որոշումները, պարտիայի կրքոտ խոսքը կոմունիստներին, բոլոր աշխատավորներին կոչում է դեպի գործ, դեպի նոր սխրանքներ։ Զինված կոմունիզմի կառուցման ծրագրով, մեր շրջանի գործարանների, կառույցների և տրանսպորտային ձեռնարկությունների բանվորները, ին-

ժեներներն ու տեխնիկները ձեռնամուխ են եղել ծրագրի իրականացմանը: Նմ-
նրբ դիտում եք մարդկանց աշխատանքը, ապա ձեզ թվում է, թե բազմապատկ-
վել են նրանց ուժերը:

Պարտիական կազմակերպություններից այժմ պահանջվում է ավելի շատ
ջանքեր գործադրել առաջադրված խնդիրները կատարելու համար: Այժմ գլխա-
վորը կազմակերպական աշխատանքն է, համագումարի որոշումների մասսա-
յականացումը, աշխատավորների ստեղծագործական ակտիվության ու ջանքերի
լավ կազմակերպումն ու նպատակամղումը:

Մեր հնարավորությունները դեռևս վատ ենք օգտագործում: Չնայած ըն-
թացիկ տարում կատարված զգալի աշխատանքին, այնուամենայնիվ մեր շրջա-
նում կան մի շարք ձեռնարկություններ, որոնք չեն կատարում իրենց պլանը՝
դրանով իսկ ետ են պահում մյուսներին ու հարվածում ժողովրդական տնտե-
սությանը: Մեր խնդիրն է՝ այժմվանից ձեռնարկել բոլոր միջոցները, որպեսզի
1962 թվականի հենց առաջին իսկ ամիսներից ապահովվի յուրաքանչյուր ձեռ-
նարկության կողմից արտադրական պլանների կատարումը: Հարկավոր է եռան-
դուն կերպով արմատավորել լավագույն փորձը, ետ մնացող և, այսպես կոչ-
ված, միջին ձեռնարկությունները հասցնել առաջավորների մակարդակին: Մեր
լոզունգը պետք է լինի՝ մեծ Լենինի անունը կրող շրջանում 1962 թվականին ոչ
մի ետ մնացող գործարան, կառույց և ձեռնարկություն:

Մեծ աշխատանք պետք է տարվի արտադրության կուլտուրան բարձրաց-
նելու, գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումներն արտադրության մեջ
արմատավորելու ուղղությամբ: Համագումարը խնդիր դրեց խնայողություն
անել մեծ ու փոքր գործերում, անխնա պայքարել հումքի, նյութերի, էլեկտրա-
էներգիայի օգտագործման ասպարեզում եղած շռայլումների դեմ:

Երբ համագումարում ընկեր Խրուշչովը հաշվետու զեկուցման մեջ խոսում
էր, թե ինչպես տեղերում միաժամանակ կառուցում են բազմաթիվ արդյունա-
բերական օբյեկտներ, ցրելով ու փոշիացնելով նյութական ու դրամական ռե-
սուրսները, ձգձգելով նրանց կառուցման ժամկետները, ապա այդ ամենը վե-
րաբերում էր նաև մեր շրջանին: Կարծես թե նա եղել էր մեզ մոտ և տեսել, թե
ինչպես հինգ տարի շարունակ ձգձգվում է դաշնամուրի ֆաբրիկայի կառու-
ցումը, թե ինչպես երկար ձգձգումներից հետո վերջապես շահագործման հանձ-
նըվեց Ժողտնտխորհի երկաթ-բետոնե կոնստրուկցիաների գործարանը և շի-
նարարական առարկաների կոմբինատը, որոնք այժմ էլ աշխատում են ոչ լրիվ
բեռնվածությամբ: Իհարկե, ընկեր Խրուշչովի քննադատությունն ուղղված էր
մեր այն առանձին տնտեսավարների հասցեին, որոնք պահպանողականություն
են հանդես բերում նոր տեխնիկայի արմատավորման գործում:

Կոմունիստական շինարարության ոգեշունչ պլանները իրականություն
կդառնան: Արդեն պարզորոշ տեսնում ենք մեր հոյակապ ապագան, նոր հա-
սարակության փարթամ ծիլերը և՛ աշխատանքում, և՛ կենցաղում:

Արդի էտապում պարտիան խնդիր է դնում ավելի ուժեղացնել մասսաների
մարքս-լենինյան դաստիարակությունը, նրանց մեջ զարգացնել աշխատանքի
նկատմամբ կոմունիստական վերաբերմունքը: Դա նշանակում է, որ մենք
պետք է վճռականորեն բարելավենք պարտիական քաղաքական ու կազմակեր-
պական աշխատանքը և բոլորին մոբիլիզացնենք մեր հարազատ պարտիայի
XXII համագումարի որոշումները, նրա նոր Ծրագիրը լրիվ կատարելու համար:

# ԿԻՐԱԳՈՐԾԵՆՔ ՊԱՐՏԻԱՅԻ ՊԱՀԱՆՋԸ

Մ. ԲԱԽՉԻՆՅԱՆ

ՀԿՊ Կիրովականի քաղկոմի քարտուղար



Երկու շաբաթ շարունակ Կրեմլի համա-
գումարների շքեղ պալատում Սովետական
Միության կոմունիստների 4799 պատվի-
րակներ մշակում էին սովետական ժողովրդի
մեծ խոյանքների հոյակապ Ծրագիրը, վրձ-
ռում աշխարհի և ապագա սերունդների
բախտը: Անցել են օրեր, բայց մարդու սիր-
տը դեռևս գտնվում է համագումարի էլեկ-
տրականացնող ազդեցության տակ, դեռևս
ականջներում հնչում են փոթորկալից ծա-
փահարությունները, չի մոռացվում այն ո-
գևորությունը, որ համակել էր բոլոր պատ-
գամավորներին ու հյուրերին...

Սովետական ամբողջ ժողովուրդը միա-
համուռ հավանություն տվեց և պաշտպա-
նում է մեր պարտիայի նոր Ծրագիրը, նրա
իրականացումը համարում իր կյանքի նպա-
տակը: Այդ հոյակապ Ծրագրի մեջ ժողովուր-
դը տեսնում է իր երազանքների մարմնացումը, և նա իր բոլոր ուժերն ու եռան-
դը կնվիրի այն բանին, որպեսզի լիովին կենսագործվեն լենինյան պարտիայի
կոլեկտիվ մտքի այդ հիանալի ստեղծագործության բոլոր կանխագծումները:

Պարտիայի Ծրագիրը նոր, վիթխարի խնդիրներ է դնում մեր երկրի աշ-
խատավորների առջև: Երկու տասնամյակի ընթացքում ՍՍՌՄ-ում կստեղծվի
կոմունիզմի նյութատեխնիկական բազան, որը պարտիայի և ժողովրդի գլխա-
վոր տնտեսական խնդիրն է: Պարտիայի առաջադրած այդ խնդրի մեծությունը
պատկերացնելու համար բավական են հետևյալ համեմատությունները: Առա-
ջիկա քսան տարում հինգ անգամ կավելանա համախառն հասարակական ար-
դյունքը: Արդյունաբերական արտադրանքի թողարկումը կաճի մոտ 6 անգամ,
իսկ գյուղատնտեսության համախառն արտադրանքը՝ մոտ 3,5 անգամ: Ինչպես
համագումարում ասաց Ն. Ս. Խրուշչովը, դա հավասարազոր է այն բանին, ինչ-
պես որ մեր բարեբեր հողում լրացուցիչ կերպով ստեղծվեին ևս հինգ այնպի-
սի արդյունաբերական և ավելի քան երկու գյուղատնտեսական երկրներ, որ-
պիսին այսօր Սովետական Միությունն է: Քսան տարի հետո ՍՍՌՄ-ը կտա

գրեթե երկու անգամ շատ արդյունաբերական արտադրանք, քան այժմ արտադրվում է կապիտալիստական աշխարհում։

Ելնելով երկրի համատարած էլեկտրիֆիկացման լենինյան ծրագրից, պարտիան նախատեսում է 1980 թվականին էլեկտրաէներգիայի տարեկան արտադրությունը հասցնել 2 տրիլիոն 700 միլիարդից մինչև 3 տրիլիոն կիլովատ-ժամի, այսինքն՝ ինը կամ տասն անգամ գերազանցել 1960 թվականի մակարդակը։ Սա այնպիսի թռիչք է, որը նշանակում է արտադրել այնքան էլեկտրաէներգիա, որքան ներկայումս արտադրվում է աշխարհի բոլոր երկրներում միասին վերցրած։ Քսան տարվա ընթացքում մեր երկրում կառուցվելու են 180 հզոր հիդրոէլեկտրակայաններ, մոտավորապես 200 շրջանային ջերմային էլեկտրակայաններ, 260 խոշոր ջերմաէլեկտրակենտրոններ և այլն։

Քսանամյակի ընթացքում մեր երկրում կկառուցվեն մեքենաշինական և մետաղամշակման 2800 նոր ձեռնարկություններ, կվերակառուցվեն 1900 հին գործարաններ ու ֆաբրիկաներ։ Այս ամենի շնորհիվ մեքենաշինական և մետաղամշակման արդյունաբերության արտադրանքի ընդհանուր ծավալը կմեծանա 10—11 անգամ, այդ թվում ավտոմատ և կիսաավտոմատ գծերի թողարկումը՝ ավելի քան 60 անգամ։ Նավթի հանույթը 1980 թվականին կհասնի տարեկան 690—710 միլիոն տոննայի, կձուլվի 250 միլիոն տոննա պողպատ։

Լսում էի այս ամենը ու իմ առջև պատկերվում էր սովետական ժողովրդի մեծ ապագան, սիրտս լցվում անհուն բերկրանքով ու անխորտակ հավատով, որ մեր պարտիան, ինչպես միշտ, այս անգամ ևս հաջողությամբ ու պատվով կկատարի իր միսիան։ Հավատո՛ւմ ենք քեզ, պարտիա, հավատո՛ւմ ենք քո մեծագործ ուժին, որովհետև այդ հավատը մեզ ներշնչել ես տասնամյակների քո հերոսական աշխատանքով, դարակազմիկ նվաճումներով։

Մեր երկիրն այժմ թևակոխել է կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը։ Պարտիայի Ծրագրով նախատեսված կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում, Սովետական Միության եղբայրական բոլոր ռեսպուբլիկաների աշխատավորների հետ միասին, իրենց ավանդն են մուծում նաև Սովետական Հայաստանի, այդ թվում նաև Կիրովականի աշխատավորները։ Այսօր իսկ առանց չափազանցության կարելի է ասել, որ կիրովականցիները հասել են լուրջ հաջողությունների։ Բավական է նշել, որ վերջին տասը տարիների ընթացքում քաղաքի արդյունաբերության համախառն արտադրանքն աճել է 4,2 անգամ, այդ թվում քիմիական արդյունաբերության արտադրանքը՝ մոտ 4 անգամ, մեքենաշինությանը, հաստոցաշինությանն ու սարքաշինությանը՝ 34 անգամ։ Միայն յոթնամյակի անցած ժամանակաշրջանում քաղաքի արդյունաբերության համախառն արտադրանքի արտապլանային աճը կազմում է 1950 թվականի ամբողջ համախառն արտադրանքի կեսը։

Այժմ պարտիան բացառիկ նշանակություն է տալիս քիմիական արդյունաբերության զարգացմանը։ Ուստի պատահական չէ, որ ՍՄԿՊ XXII համագումարն իր ընդունած նոր Ծրագրում նշեց. «Խոշորագույն խնդիրներից մեկն է քիմիական արդյունաբերության ըստ ամենայնի զարգացումը, ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում ժամանակակից քիմիայի նվաճումների լրիվ օգտագործումը...»։ Քսան տարում մեր երկրի քիմիական ինդուստրիան կաճի մոտավորապես 17 անգամ։ Սինթետիկ ձյութերի և պլաստմասսայի արտադրությունը կավելանա մոտ 60 անգամ։ Արհեստական և սինթետիկ թելի թողար-



կումը, որը հատուկ նշանակություն ունի լայն սպառման ապրանքների արտադրության համար, կաճի մոտավորապես 15 անգամ։

Պարտիայի այս առաջադրանքները կատարելու գործում զգալի դեր ունի նաև քիմիագործների քաղաքը՝ Կիրովականը։ Յոթնամյակի վերջին տարում քաղաքի քիմիական արդյունաբերության համախառն արտադրանքը, 1951 թվականի համեմատությամբ, կաճի մոտավորապես 30 անգամ։ Մեր քիմիագործներին ոգևորություն և հպարտություն է պատճառում այն հանգամանքը, որ մեծ քիմիայի նորակառույցներից երկուսը կառուցվում են Կիրովականում։ Դրանցից մեկը՝ քիմկոմբինատի դիցիանդիամիդի ցեխը, նոյեմբերի սկզբներին տվեց իր առաջին արտադրանքը։ Շուտով կավարտվի մելամինի ցեխի կառուցումը, որը հումք կտա պլաստմասսայի արտադրության համար։ Քիմկոմբինատից ոչ հեռու կառուցվում է արհեստական մետաքսաթելի գործարանը, որը եկող տարի կտա մասսայական արտադրանք։

Կիրովականի աշխատավորները պարտավորվել են մինչև ընթացիկ տարվա վերջը շահագործման հանձնել քիմկոմբինատի մելամինի ցեխը, արհեստական մետաքսաթելի գործարանը, ինչպես նաև ավտոմատիկա գործարանի նոր կորպուսը, ջերմաէլեկտրակայանի առաջին հերթը և այլ օբյեկտներ։

Միայն քիմիան չէ, որ բնորոշում է մեր քաղաքի դեմքը։ Կիրովականում մեծ թափով զարգանում են նաև արդյունաբերության այնպիսի հիմնական ճյուղեր, ինչպիսիք են՝ սարքաշինությունը, մեքենաշինությունն ու հաստոցաշինությունը։ «Հարկավոր է,— համագումարում ասաց Ն. Ս. Խրուշչովը,— կազմակերպել բարձր արտադրողական ու խնայողական շատ տիպի մեքենաների, սարքերի և ապարատների, ավտոմատիկայի և ռադիոէլեկտրոնիկայի բազմազան միջոցների մասսայական արտադրությունը, ստեղծել մեքենաների կատարելագործված սիստեմ արդյունաբերության, գյուղատնտեսության, շինարարության համար»։ Այս ուղղությամբ մեր քաղաքի արդյունաբերական ձեռնարկությունների աշխատողները զգալի գործ են կատարել։ Յոթնամյակի անցած տարիների ընթացքում քաղաքում կառուցվել և գործարկվել են ավտոմատիկա և ճշգրիտ հաստոցաշինական գործարանները, իսկ մինչև յոթնամյակի վերջը շարք կմտնեն ևս 10 գործարաններ ու ցեխեր։ 1965 թվականին Կիրովականի մեքենաշինության, հաստոցաշինության ու սարքաշինության ձեռնարկությունների համախառն արտադրանքը (1951 թվականի համեմատությամբ) կավելանա ավելի քան 140 անգամ։ Այդ ձեռնարկությունների երիտասարդ բանվորներն ու տեխնիկները, որոնք իրենց ձեռքերով կառուցեցին այդ գործարանները, տիրապետելով տեխնոլոգիական բարդ պրոցեսներին, այժմ պատրաստում են այնպիսի ճշգրիտ սարքեր ու հաստոցներ, որոնք արտադրվում են միայն Կիրովականում և մեծ համբավ են ձեռք բերել ո՛չ միայն մեր ռեսպուբլիկայում, այլև նրա սահմաններից դուրս։ Վերոհիշյալ գործարանների արտադրած ճշգրիտ հաստոցները և էլեկտրոնային ավտոմատ սարքերը առաքվում են ինչպես Սովետական Միության տարբեր քաղաքներ, այնպես էլ արտասահմանյան մոտ 7 երկրներ, այդ թվում՝ Հնդկաստան, Լեհաստան, Գերմանիա և այլն։

Այժմ ՍՄԿՊ Ծրագրի առաջադրած նոր խնդիրներին համապատասխան մշակվում է Կիրովականի արդյունաբերության զարգացման քսանամյա պլան, որի կենսագործումը տասնապատիկ անգամ կմեծացնի արդյունաբերության ներկա մակարդակը։

*Առաջիկայում մեծ չափով կզարգանա քաղաքի թեթև արդյունաբերությունը։ Զգալիորեն կընդլայնվեն տրիկոտաժի, կոշկի, կարի, մուշտակի, կահույքի և ժողովրդական լայն սպառման այլ առարկաների արդյունաբերական ձեռնարկությունները, կկառուցվեն արտադրական նոր կորպուսներ։ Մինչև 1965 թվականի վերջը Կիրովականի թեթև արդյունաբերության համախառն արտադրանքը կաճի ավելի քան 10 անգամ։*

*Լուրջ աշխատանքներ են կատարվում նաև քաղաքի գազիֆիկացման ուղղությամբ։ Շուտով արդյունաբերական մի շարք ձեռնարկություններ և ավելի քան 1500 բնակարաններ կստանան բնական գազ։*

*Օրեցօր աճող արդյունաբերության և բնակարանային շինարարության համար անհրաժեշտ է զարգացած շինարարական ինդուստրիա։ Ելնելով այդ պահանջից, այժմ քաղաքում գործող շինանյութերի կոմբինատի և մյուս ձեռնարկությունների կողքին կկառուցվեն տնաշինական կոմբինատ, երկաթ-բետոնե կառուցվածքների կոմբինատ, ասֆալտի գործարան և մի քանի այլ արտադրական օբյեկտներ։*

*Համագումարում սրվեցին տեխնիկական առաջադիմության, արդյունաբերության ավտոմատացման և մեքենայացման հարցերը։ Այդ գործում մեր քաղաքի արդյունաբերական ձեռնարկություններին մեծ օգնություն են ցույց տալիս Ավտոմատիկա գիտահետազոտական ինստիտուտը, Քիմիայի գիտահետազոտական նախագծային ինստիտուտը և ինքնուրույն կոնստրուկտորական բյուրոն, որտեղ աշխատում են 1500 ինժեներներ ու տեխնիկներ։ Արդյունաբերության տեխնիկական առաջադիմությանը մեծապես օգնում են նաև քաղաքի նորարարներն ու ռացիոնալիզատորները, ինչպես, օրինակ, ռեսպուբլիկայի վաստակավոր նորարարներ, քիմիագործներ՝ Աստուր Օհանյանը, Աղասի Առաքելյանը և ուրիշներ։ Ընթացիկ տարվա յոթ ամիսների ընթացքում արտադրական ձեռնարկություններում տեղադրվել են 124 նոր սարքավորումներ ու մեքենաներ, միաժամանակ արտադրությունից հանվել են 14 հնացած սարքավորումներ։ Յուրացվել է արտադրանքի 29 նոր տեսակների արտադրությունը, այդ թվում ջերմային պրոցեսները կարգավորող, չափող և գրանցող էլեկտրոնային ավտոմատ երկու սարքեր, գալլիկոնող փոքր տրամաչափի մեկ ճշգրիտ հաստոց, գունավոր կորունդ-ամետիստ և այլն։*

*Քաղաքում լայն ծավալ է ստացել կոմունիստական աշխատանքի բրիգադների ու հարվածայինների շարժումը։ Այժմ այդ բարձր կոչման համար պայքարում են հարյուրից ավելի բրիգադա, ցեխ, տեղամաս, կոլեկտիվ, որոնցում ընդգրկված են մոտ վեց հազար աշխատողներ։ Արդեն այսօր 30 բրիգադա ու ցեխ արժանացել են այդ պատվավոր կոչմանը։*

*Այն ամենը, ինչով այժմ ապրում է մարդկությունը, ինչ նրան խորապես հուզում է, վառ արտացոլում գտան համագումարի աշխատանքներում, ընկեր Խրուշչովի զեկուցումներում, որոնցում ամբողջ խորությամբ հանրագումարի բերվեցին սովետական ժողովրդի պատմական հաջողություններն ու նվաճումները, բացահայտվեցին մեր առաջընթաց շարժման հոյակապ հեռանկարները, գիտականորեն հիմնավորվեցին կոմունիզմի կառուցման ուղիները։ Պարտիայի XXII համագումարի աշխարհահռչակ որոշումները ոգևորում, մեծագործ սխրանքների են մղում նոր կյանքի միլիոնավոր կառուցողների, ամրապնդում են նրանց հավատը կոմունիզմի հաղթանակի նկատմամբ։*

---

# ԿՍՏԵՂԾԵՆՔ ՄԹԵՐՔՆԵՐԻ ԱՌԱՏՈՒԹՅՈՒՆ


*Կ. ՔՈՉԱՐՅԱՆ*

ՀԿՊ Հոկտեմբերյանի շրջկոմի քարտուղար




*Անչափ երջանիկ եմ, որ Հայաստանի Կոմունիստական պարտիան մեծ վստահություն ցուցաբերեց և ինձ ընտրեց պատգամավոր Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXII համագումարի, որն ամենայն իրավամբ կոչվում է կոմունիզմ կառուցողների համագումար։ 1961 թվականի հոկտեմբերի երկրորդ կեսը հավերժ կմնա իմ հիշողության մեջ, որովհետև այն կյանքիս ամենաերջանիկ և հուզիչ օրերն էին։*

*Վաղ առավոտյան, երբ աշնանային արևի ճառագայթները նոր էին դիպել հինավուրց Կրեմլի աշտարակների գագաթներին, հազարավոր պատգամավորների թվում ես ևս ձգտում էի ժամ առաջ մտնել Համագումարների պալատը, որի կառուցումը վերջերս էր ավարտվել։*

*Կրեմլի Համագումարների պալատը մի սքանչելիք է, որը կառուցված է ճարտարապետական և շինարարական արվեստի վերջին խոսքով։ Այն սովետական ճարտարապետության հիանալի կոթողներից է։ Համագումարների պալատի ընդհանուր ծավալն ավելի քան 400 հազար խորանարդ մետր է, 800 դահլիճներով ու սենյակներով։ Գլխավոր սրահում տեղավորվում է 6000 մարդ։ Ստեղծված են այնպիսի հարմարանքներ, որ համագումարի, կոնգրեսի, խորհրդակցության մասնակիցների ելույթները միաժամանակ թարգմանվում են 29 լեզուներով։*

*Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXII համագումարը մեր պարտիայի պատմության մեջ ամենաներկայացուցչական համագումարն է, որի աշխատանքներին մասնակցում էին 4394 պատգամավոր վճռական ձայնի և 405 պատգամավոր խորհրդակցական ձայնի իրավունքով։ Լենինի ստեղծած բոլշևիկյան պարտիայում համախմբված 66 ազգությունների կոմունիստական կազմակերպությունների ներկայացուցիչներ էին նրանք։ Պատգամավորների թվում կային շարքային շատ աշխատողներ. դրանք բանվորներ էին, հանքափորներ, կոլտնտեսականներ, որոնք իրենց աշխատանքային սխրանքներով մեծ ժողովրդականություն են վայելում ամբողջ երկրում։*

Համագումարին մասնակցում էին մարքսիստական-լենինյան ավելի քան 80 պարտիաների ներկայացուցիչներ, այդ թվում միջազգային բանվորական շարժման ականավոր շատ գործիչներ՝ Մ. Թորեզը, Պ. Տոլյատտին, Վ. Գոմուլկան և ուրիշներ։

Դահլիճում նստած, նայելով եղբայրական կոմունիստական ու բանվորական պարտիաների ներկայացուցիչների (որոնք ներկայացնում են տասնյակ միլիոնավոր կոմունիստների հզոր բանակը) ուրախ դեմքերին, ես զգում էի սոցիալիստական լագերի հզորությունը, միջազգային կոմունիստական շարժման անխախտ միասնությունը։ Ավելի էր խորանում իմ համոզմունքը, որ մարքսիզմ-լենինիզմի գաղափարներն անպարտելի են, վերջնական հաղթանակը կոմունիզմինն է։

Ինչպես համագումարի բոլոր մասնակիցները, այնպես էլ ես մեծ ուշադրությամբ ունկնդրեցի Ն. Ս. Խրուշչովի զեկուցումներն ու եզրափակիչ խոսքը, ընկ. Ֆ. Ռ. Կոզլովի զեկուցումը, համագումարի պատգամավորների ելույթները, եղբայրական կոմպարտիաների ներկայացուցիչների ողջույնները։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXII համագումարը երկու շաբաթ քննարկեց սովետական ժողովրդի կյանքի ու աշխատանքի հետ կապված կարևորագույն հարցեր, միջազգային բանվորական շարժման արդի խնդիրները։ Համագումարի ամբողջ ընթացքը հիանալի կերպով վկայում էր, որ մեր պարտիան միաձույլ շարքերով անշեղորեն ընթանում է մարքսիզմ-լենինիզմի ուղիով։ Համագումարի գործունեությունը առաջին օրվանից մինչև վերջին օրը լենինյան աշխատանքային ոճի հիանալի օրինակ էր։

Պարտիայի համագումարը մի անգամ ևս դատապարտեց Ստալինի անձի պաշտամունքը և նրա վնասակար հետևանքները, վեր հանեց ու մերկացրեց Մոլոտովի, Կագանովիչի, Մալենկովի կողմից իշխանության չարաշահման, սովետական օրինականության ոտնահարման աղաղակող փաստեր, որոնց հետևանքով պարտիան ու ժողովուրդը ծանր վնասներ կրեցին։

Հանրագումարի բերելով պարտիայի ու ժողովրդի ձեռք բերած համաշխարհային պատմական նշանակություն ունեցող հաջողությունները, համագումարը կանխատեսեց կոմունիզմի կառուցման վիթխարի պլան։

ՍՄԿՊ Կենտկոմի հաշվետվությունում արտացոլված էին այն խոշոր նվաճումները, որ սովետական ժողովուրդը ձեռք է բերել կոմունիստական շինարարության բոլոր բնագավառներում։

Պարտիայի գործադրած ջանքերի շնորհիվ վերջին տարիներս նշանակալիորեն աճել է գյուղատնտեսական մթերքների արտադրությունը։ Բայց ավելի վիթխարի խնդիրներ են դրված գյուղատնտեսության առջև ՍՄԿՊ նոր Ծրագրում և համագումարի որոշումներում։ Պարտիան իր առջև նպատակ է դրել առաջիկա տասը տարում գյուղատնտեսական արտադրանքի ընդհանուր ծավալը մեծացնել մոտավորապես երկու և կես անգամ, իսկ քսան տարում՝ երեք և կես անգամ, որը հնարավորություն կտա լրիվին բավարարելու գյուղատնտեսական մթերքների ասպարեզում ամբողջ բնակչության ու ժողովրդական տնտեսության պահանջները։

Համագումարի դահլիճում նստած, մի պահ մտքով հասնում էի մեր շրջանը, պատկերացնում այն մեծ գործերը, որ կատարելու են Հոկտեմբերյանի շրջանի կոմունիստները, բոլոր հոկտեմբերյանցիները՝ կոմունիզմի կառուցման ծրագիրն իրականացնելու համար։



Հոկտեմբերյանում հիմնականում զարգանալու են այգեգործությունը, պտղաբուծությունը և բոստանա-բանջարանոցային կուլտուրաները. միաժամանակ զարգանալու են խորդենու մշակությունը և անասնաբուծությունը՝ կաթնամսային արտադրանքի ուղղությամբ։

Խաղողի և պտղատու այգիներն ընդարձակելու, նրանց բերքատվությունը զգալիորեն բարձրացնելու միջոցով առաջիկա տարիների ընթացքում խաղողի և մրգի արտադրությունը շրջանում կավելանա երկուս ու կես անգամ։

Անասնաբուծական մթերքների արտադրությունն ընդլայնելու նպատակով գործնական աշխատանք է տարվում անասունների և թռչունների գլխաքանակն ավելացնելու, նրանց ցեղայնությունը բարելավելու, մթերատվությունը բարձրացնելու ուղղությամբ։ Ամեն ինչ արվում է կերի կայուն բազա ստեղծելու համար։ Մեր շրջանի առաջավոր տնտեսությունների փորձը վկայում է, որ մենք բոլոր հնարավորություններն ունենք զգալիորեն բարձրացնելու առվույտի ցանքատարածությունների բերքատվությունը և եգիպտացորենի ցանքի յուրաքանչյուր հեկտարից ստանալու առնվազն 500 ցենտներ կանաչ մասսա։

Ընկեր Ն. Ս. Խրուշչովը նշեց, որ եթե ամեն մի տնտեսություն յուրաքանչյուր 100 հեկտար վարելահողի (բացի առվույտից) հաշվով կատարի 9,7—10 հեկտար եգիպտացորենի և 7 հեկտար շաքարի ճակնդեղի ցանք, յուրաքանչյուր հեկտարից ստանա 500 ցենտներ կանաչ մասսա ու 300—350 ցենտներ շաքարի ճակնդեղ, այն հնարավորություն կունենա կատարելու անասնաբուծական մթերքների արտադրության առաջադրանքները։

Մենք բոլոր պայմաններն ունենք այդ միջոցառումը կենսագործելու և վարելահողի յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածության հաշվով արտադրելու 75 ցենտներ միս, իսկ այլ հողատարածությունների 100 հեկտարի հաշվով՝ 16 ցենտներ միս։ Այդ են ցույց տալիս նաև մեր կատարած հաշվարկումները։

Պարտիայի նոր Ծրագրում ասված է. բոլոր կոլտնտեսություններում ու սովխոզներում տեղական պայմաններին և յուրաքանչյուր տնտեսության մասնագիտացմանը համապատասխան, արմատավորել հողագործության և անասնապահության գիտականորեն հիմնավորված այնպիսի սիստեմ, որն ապահովի հողի առավել արդյունավետ օգտագործումը և տնտեսության տարբեր ճյուղերի շահավետ զուգորդումը։

ՍՄԿՊ նոր Ծրագրի այս պահանջը հաջողությամբ կենսագործելու համար արդեն ճշգրտում ենք յուրաքանչյուր տնտեսության հետագա զարգացման ուղիները և առաջավոր կոլտնտեսությունների, սովխոզների ու կոլտնտեսականների օրինակով առաջ կմղենք գյուղատնտեսական արտադրության բոլոր ճյուղերը։

ՍՄԿՊ XXII համագումարում մեծ ուշադրություն հատկացվեց գյուղատնտեսության արտադրության կոմպլեքսային մեքենայացմանը և արտադրական ճյուղերի էլեկտրիֆիկացմանը։ Պարտիայի համագումարի այդ առաջադրանքը կենսագործելու նպատակով շրջանի պարտիական կազմակերպությունները մեծ աշխատանք են ծավալել գյուղատնտեսության բոլոր ճյուղերի աշխատատար պրոցեսները կոմպլեքսային մեքենայացման ենթարկելու ուղղությամբ, որը հզոր խթան կհանդիսանա բերքատվության բարձրացման, արտադրանքի ինքնարժեքի իջեցման, աշխատավորների, հատկապես կոլտնտեսուհիների և բանվորուհիների աշխատանքը թեթևացնելու գործում։

Գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելուն զուգ-

ընթաց զգալի աշխատանք կկատարվի այդ մթերքների վերամշակման արտադրությունն ավելացնելու բնագավառում։ Կընդարձակվեն ու ժամանակակից տեխնիկայով կսարքավորվեն պահածոների և գինեգործության արտադրական ձեռնարկությունները։

Առաջիկա տասնամյակում զգալիորեն բարեկարգվելու են գյուղերն ու բանվորական ավանները, ավելի բարեկեցիկ է դառնալու բնակչության կյանքը։ Մինչև 1970 թվականը բոլոր գյուղերում և ավաններում լայն մասշտաբներով բարելավվելու է բնակչության կուլտկենցաղային սպասարկումը, ստեղծվելու են բոլոր պայմանները, որոնք հնարավորություն կտան վերացնելու քաղաքի և գյուղի միջև եղած տարբերությունը։

Մեր շրջանի գյուղատնտեսության հետագա զարգացման համար կարևոր նշանակություն ունի իռիգացիոն շինարարությունը, որին հատուկ տեղ է տըրված պարտիայի Ծրագրում։ Հույս ունենք, որ ռեսպուբլիկական օրգանները կօժանդակեն Հոկտեմբերյանի պարտիական ու սովետական կազմակերպություններին՝ այդ կարևոր գործը հաջողությամբ պսակելու։

Հոկտեմբերյանցիները մտնելով ՍՄԿՊ XXII համագումարի պատվին ծավալված սոցիալիստական մրցության մեջ, համագումարի բացման նախօրյակին կատարեցին խաղողի, մրգի, բանջարեղենի արտադրությունն ավելացնելու նպատակով ստանձնած պարտավորությունները, իսկ համագումարից հետո՝ մսի, կաթի, բրդի պետական վաճառքի պարտավորությունները։ Այժմ, ոգևորված պարտիայի XXII համագումարի որոշումներով, նրանք գործադրում են բոլոր ջանքերը՝ անթերի կատարելու իրենց առաջադրանքները։

Մոտ հինգ հազար ընտրյալների հետ ես ևս քվեարկեցի Սովետական Միության Կոմունիստական պարտիայի նոր Ծրագրի, կոմունիզմի կառուցման ծրագրի օգտին։ Այդ ինձ համար մեծ երջանկություն էր։

Մեր նպատակը պարզ է, խնդիրները որոշակի են։ Շրջանի պարտիական կազմակերպություններն այժմ բանվորների, կոլտնտեսականների, մեր բոլոր աշխատավորների շրջանում լայնորեն մասսայականացնում են Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXII պատմական համագումարի որոշումները, համագումարին տված ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուցումներն ու եզրափակման խոսքը, պարտիայի նոր Ծրագիրը և համագումարի մյուս նյութերը, որոնք աշխատանքային նոր խանդավառություն են առաջացրել բոլորի մեջ։ Մեր ամեն մի աշխատավոր իր սրբազան պարտականությունն է համարում կոնկրետ գործով, ամենօրյա ստեղծագործական աշխատանքով կենսագործելու հարազատ պարտիայի համագումարի որոշումները, կոմունիզմի կառուցման նոր Ծրագիրը։ Մենք ջանք չենք խնայի անձնվեր աշխատանքով հասնելու մեր վեհ նպատակին՝ կոմունիզմի լիակատար հաղթանակին։

---

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԱՐԱԳ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՀԱՄԱՐ

Մ. ՄԵԼՔՈՆՅԱՆ

ՀԿՊ Կենտկոմի քարտուղար

Մենք ապրում ենք պատմական այնպիսի ժամանակաշրջանում, երբ կոմունիզմը դառնում է ռեալ իրականություն։

Բոլոր կոմունիստների և սովետական ամբողջ ժողովրդի հավանությանն արժանացած և ՍՄԿՊ XXII համագումարում ընդունված պարտիայի Ծրագրում գիտականորեն հիմնավորված են այն ուղիները, որոնցով մեր ժողովուրդն իր հարազատ Կոմունիստական պարտիայի գլխավորությամբ ընթանում է դեպի կոմունիստական հասարակարգ, որին դարեր շարունակ երազել են բազմաթիվ սերունդներ։

ՍՄԿՊ նոր Ծրագիրը պարտիայի և սովետական ժողովրդի տնտեսական գլխավոր խնդիրն է համարում երկու տասնամյակների ընթացքում ստեղծելու կոմունիզմի նյութա-տեխնիկական բազան։ Ծրագրում սահմանված է, որ հզոր արդյունաբերության հետ մեկտեղ ծաղկուն, բազմակողմանիորեն զարգացած և բարձր մթերատու գյուղատնտեսության ստեղծումը կոմունիզմի կառուցման պարտադիր պայմանն է։ Գյուղատնտեսական մթերքների արտադրության աճը պետք է գերազանցի բնակչության ու ժողովրդական տնտեսության պահանջարկին։

Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության բնագավառի աշխատողների խընդիրն է՝ ՍՄԿՊ Ծրագրի լույսի տակ ճիշտ գնահատել գյուղատնտեսության ներկա վիճակը և կոնկրետ միջոցներ ձեռնարկել մոտ ապագայում մթերքների արտադրությունը սահմանված չափերով բարձրացնելու համար։

Հայաստանի Կոմունիստական պարտիայի XXII համագումարը հանրագումարի բերեց գյուղատնտեսության զարգացման գործում ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների և սովխոզների ձեռք բերած հաջողությունները վերջին տարիների ընթացքում և միաժամանակ բացահայտեց այն լուրջ թերություններն ու սխալները, որոնք տեղ են գտել գյուղատնտեսական արտադրության կազմակերպման, եղած հնարավորությունների և ռեզերվների օգտագործման ասպարեզում։

Ռեսպուբլիկայի կոլտնտեսությունները և սովխոզները, կենսագործելով ՍՄԿՊ XXI համագումարի որոշումները, յոթնամյակի անցած ժամանակաշըրջանում որոշակի հաջողությունների են հասել գյուղատնտեսական մթերքների արտադրության և վաճառքի գործում։ 1960 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, կոլտնտեսությունները և սովխոզները մսի արտադրությունն

ավելացրին 109 հազար ցենտներով կամ 32,2 տոկոսով, կաթինը համապա-
տասխանաբար՝ 250 հազար ցենտներով կամ 15 տոկոսով, ձվինը՝ մոտ 20 մի-
լիոն հատով կամ 2,4 անգամ. Նույն ժամանակամիջոցում պետությանը մսի
վաճառքը ավելացել է 41 տոկոսով, կաթինը՝ 28,1 տոկոսով, ձվինը՝ 2,6 ան-
գամ։ Մթերքների արտադրության և վաճառքի գործում առանձնապես աչքի
ընկնող հաջողությունների հասան Շամշադինի, Նոյեմբերյանի, Ախուրյանի,
Արթիկի, Վեդու և մյուս շրջանների շատ կոլտնտեսություններ ու սովխոզներ։

Ռեսպուբլիկայի բամբակագործ և ճակնդեղագործ կոլտնտեսությունները և
սովխոզները գերազանցեցին բամբակի հումքի և շաքարի ճակնդեղի արտա-
դրության ու վաճառքի 1965 թվականի մակարդակը։ Ծխախոտի արտադրությու-
նը և վաճառքը ավելացել է 24 տոկոսով։ Յոթնամյակի անցած ժամանակամի-
ջոցում ռեսպուբլիկայի ոռոգվող հողատարածությունները ավելացել են 25
հազար հեկտարով, 18200 հեկտար արոտները ջրարբի են դարձել, խաղողի
և պտղատու այգիների տարածությունն ընդարձակվել է 12600 հեկտարով։

Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողները ընթացիկ տարում
համառ պայքար կազմակերպեցին երաշտի հետևանքով ստեղծված դժվարու-
թյունները հաղթահարելու համար և շատ կոլտնտեսություններ ու սովխոզներ
հասան մթերքների արտադրության ավելացման լավագույն արդյունքների։
Ընթացիկ տարվա անցած 10 ամիսների ընթացքում կոլտնտեսությունները և
սովխոզները նախորդ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ
պետությանը վաճառել են միս՝ 12,4, կաթ՝ 7,5, ձու՝ 12,2, բուրդ՝ 3,7, խա-
ղող՝ 52,4, պտուղ՝ 65,9 և բանջարեղեն՝ 8 տոկոսով ավելի։

Գյուղատնտեսության արտադրությունը ճիշտ կազմակերպելու, եղած
հնարավորությունները և ռեզերվները ռացիոնալ օգտագործելու շնորհիվ ռես-
պուբլիկայի շատ կոլտնտեսություններ և սովխոզներ յոթնամյակի անցած ժա-
մանակաշրջանում հասել են մթերքների արտադրության բարձր ցուցանիշնե-
րի։ Կալինինոյի շրջանի Ն. Ս. Խրուշչովի անվան, Շամշադինի շրջանի Նորաշե-
նի, Սպիտակի շրջանի Սարահարթի կոլտնտեսությունների, Նոյեմբերյանի
շրջանի կաթնաանասնապահական սովխոզի աշխատավորության ձեռք բերած
հաջողությունները հայտնի են ամենքին։ Սակայն առաջավոր տնտեսություն-
ների թիվը դրանցով չի սահմանափակվում։ Վեդու շրջանի «Նոր կյանք» կոլ-
տնտեսությունը անցած երկու տարվա ընթացքում մսի և կաթի արտադրու-
թյունը ավելացրել է 1,5 անգամ, բրդինը՝ 1,6, ձվինը՝ 3,5 անգամ։ Ընթացիկ
տարվա անցած ժամանակամիջոցում, նախորդ տարվա նույն ժամանակամի-
ջոցի համեմատությամբ, կոլտնտեսությունը կաթի արտադրությունն ավելաց-
րել է 44 տոկոսով, ձվինը՝ 2,2 անգամ։

Նոյեմբերյանի շրջանի շրջկենտրոնի կոլտնտեսությունը ընթացիկ տարվա
երաշտի պայմաններում կաթի արտադրությունը նախորդ տարվա նույն ժամա-
նակամիջոցի համեմատությամբ ավելացրեց 23 տոկոսով, իսկ մսի, ձվի և
բրդի արտադրությունը՝ համարյա մեկ և կես անգամ։

Ռեսպուբլիկայում աճել են գյուղատնտեսական մթերքների արտադրու-
թյան բազմաթիվ առաջավորներ, փարոսներ։ Շամշադինի շրջանի Պառավա-
քար գյուղի կոլտնտեսության ծխախոտագործուհի Աշխեն Մելքումյանը յուրա-
քանչյուր հեկտարից, անցյալ տարվա 30 ցենտների դիմաց, այս տարի ստա-
ցավ մոտ 40 ցենտներ ծխախոտ։ Արտաշատի շրջանի Քաղցրաշեն գյուղի կոլ-



տնտեսության խաղողագործ, Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Նոյեմզար
Եղիազարյանը յուրաքանչյուր հեկտարից, անցյալ տարվա 180 ցենտների դի-
մաց, այս տարի ստացավ 230 ցենտներ խաղողի բերք։ Էջմիածնի շրջանի Շա-
հումյանի կոլտնտեսության բամբակագործ, Սոցիալիստական Աշխատանքի
Հերոս Արծվիկ Հարությունյանը բամբակի պլանտացիաների յուրաքանչյուր
հեկտարից հավաքում է 50 ցենտներ բամբակ։ Ախուրյանի շրջանի Ախուրիկի
ճակնդեղագործուհի Սեդա Սարգսյանը 1960 թվականին յուրաքանչյուր հեկ-
տարից մթերակայան հանձնեց 760 ցենտներ շաքարի ճակնդեղ։ Այս տարվա
կլիմայական դժվարին պայմաններում նա աճեցրել է համարյա նույնքան
բերք։ Կալինինոյի շրջանի Ն. Ս. Խրուշչովի անվան կոլտնտեսության կթվորու-
հի Քսենիա Յակիմովան յուրաքանչյուր կովից 1961 թվականի 9 ամսում ստա-
ցել է 2545 կիլոգրամ կաթ։ Այսպիսով, առաջավոր տնտեսությունների և փա-
րոսների աշխատանքի արդյունքները ցույց են տալիս, որ մենք հսկայական
հնարավորություններ ունենք գյուղատնտեսական մթերքների արտադրությունը
նշանակալի չափով ավելացնելու համար։

Բոլոր կոլտնտեսությունները և սովխոզները միայն առաջավոր տնտեսու-
թյունների մակարդակին հասցնելու միջոցով մթերքների արտադրությունը կա-
րելի է համարյա կրկնապատկել։ Սակայն ռեսպուբլիկայում դեռևս կան բազ-
մաթիվ կոլտնտեսություններ և սովխոզներ, որտեղ վատ են օգտագործվում
եղած հնարավորությունները և ռեզերվները, մթերքների արտադրությունը չի
ավելանում կամ շատ դանդաղ է աճում։ Այդ է պատճառը, որ ռեսպուբլիկան
ամբողջությամբ վերցրած ետ է մնում գյուղատնտեսական մթերքների արտա-
դրության ավելացման այն մակարդակից, որը նախատեսված է յոթնամյա
պլանով։ 1959—1960 թվականների ընթացքում յոթնամյա պլանով նախատես-
վածից պակաս է արտադրվել հացահատիկ՝ 55 հազար տոննա, կաթ՝ 52 հա-
զար տոննա, բուրդ՝ մոտ 1100 տոննա։ Նախնական հաշվումները ցույց են տա-
լիս, որ 1961 թվականին նույնպես պակաս մթերքներ կարտադրվի, քան այդ
նախատեսված է յոթնամյա պլանով։ Ազիզբեկովի, Ղափանի, Կրասնոսելսկի,
Հրազդանի, Սևանի, Ստեփանավանի և մյուս շրջանների շատ կոլտնտեսու-
թյուններ 1959—1961 թվականների ընթացքում կաթի արտադրությամբ ոչ
միայն ետ են մնացել յոթնամյա պլանով նախատեսված մակարդակից, այլ
նույնիսկ պակասեցրել են դրա արտադրությունը։

Պետք է նշել, որ գյուղատնտեսական մթերքների արտադրության դանդաղ
աճը հետևանք է այն բանի, որ մենք դեռևս գյուղատնտեսության արտադրու-
թյան կազմակերպման և ղեկավարման գործը չենք վերակառուցել ներկա պա-
հանջներին համապատասխան և տնտեսությունը շարունակում ենք վարել
նախկին, հնացած, շաբլոն եղանակներով։

Գյուղատնտեսության բնագավառի աշխատողների ուշադրությունը բազ-
միցս հրավիրվել է այն բանի վրա, որ մթերքների արտադրության ավելացման
գործում վճռական նշանակություն ունի գյուղատնտեսական արտադրության
մասնագիտացումն ու նրա ճիշտ տեղաբաշխումը։

ՍՄԿԿ XX համագումարը պահանջեց՝ ապահովել գյուղատնտեսության
առանձին ճյուղերի նպատակահարմար տեղադրումը և հողագործության ու
անասնաբուծության մասնագիտացումը՝ հաշվի առնել յուրաքանչյուր շրջանի,
իսկ շրջանում յուրաքանչյուր կոլտնտեսության ու սովխոզի բնական ու տըն-
տեսական պայմանները։

Գյուղատնտեսական արտադրության կազմակերպման վերաբերյալ այդ պարզ ու հստակ դիրեկտիվից հետո, անհրաժեշտ էր անմիջապես ձեռնամուխ լինել յուրաքանչյուր կոլտնտեսության և սովխոզի արտադրության մասնագիտացմանը, որպես գյուղատնտեսության հուժկու վերելքի կարևոր պայմանի։ Միայն դրա միջոցով կարելի է հասնել հողի, աշխատանքային ռեսուրսների և գյուղատնտեսական տեխնիկայի առավել արդյունավետ օգտագործմանը, որի շնորհիվ կբարձրանա աշխատանքի արտադրողականությունը և կիջնի արտադրանքի ինքնարժեքը։

Արտադրության մասնագիտացման և կենտրոնացման միջոցով է, որ մեր կոլտնտեսությունները և սովխոզները պետք է դառնան բարձր ապրանքային և բարձր շահութաբեր տնտեսություններ։ Սակայն այդ ուղղությամբ մենք անհրաժեշտ աշխատանք չենք ծավալել։ Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի Պետպլանը, Գյուղատնտեսության մինիստրությունը և առաջին հերթին Գյուղատնտեսության էկոնոմիկայի ու կազմակերպման գիտահետազոտական ինստիտուտը պետք է հանդես գային որպես գյուղատնտեսության մասնագիտացման կազմակերպիչներ և տեղական կազմակերպություններին ու տնտեսություններին ցույց տային պատշաճ օգնություն։ Սակայն այդ բանը տեղի չի ունեցել. նրանք այդ ուղղությամբ անհրաժեշտ աշխատանք դեռևս չեն ծավալել։ Միաժամանակ պետք է նշել, որ պարտիայի շրջանային կոմիտեները, շրջանային Սովետների գործադիր կոմիտեները, կոլտնտեսությունների և սովխոզների ղեկավարները այդ խնդրի իրականացման գործում ցուցաբերել և ցուցաբերում են դանդաղկոտություն։ Նրանք շարունակում են վարել բազմաճյուղ, ունիվերսալ տնտեսություն, անկախ այն բանից, թե արտադրության այս կամ այն ճյուղի համար պայմաններ կան, թե ոչ։

Հայտնի է, որ Անիի, Ազիզբեկովի, Կրասնոսելսկի, Մեղրիի շրջանների կոլտնտեսությունները և սովխոզները ոչխարաբուծության զարգացման համար ունեն միանգամայն նպաստավոր պայմաններ։ Այս շրջաններում ոչխարաբուծությունից ստացված մթերքներն ունեն ցածր ինքնարժեք։ 1959—1960 թվականներին ոչխարի մսի մեկ ցենտների ինքնարժեքը այդ շրջանների կոլտնտեսություններում կազմել է 430—600 ռուբլի (այս և հետագա մյուս հաշվարկումները տրվում է գների հին մասշտաբով), որը 4—5 անգամ ցածր է, քան խոզի մսի ինքնարժեքը։ Նշված շրջանների պարտիական, սովետական ղեկավար աշխատողները և կոլտնտեսականները այն կարծիքին են, որ ոչխարաբուծությունն իրենց պայմաններում ունի զարգացման լայն հեռանկարներ, այն բարձր ապրանքային, բարձր եկամտաբեր է ու պետք է դառնա արտադրության առաջատար ճյուղը։ Մինչդեռ իրականում նշված շրջաններում ոչխարաբուծության հետագա զարգացման անհրաժեշտ պայմաններ չստեղծելու հետևանքով շատ դանդաղ է աճում ոչխարների գլխաքանակը և մթերատվությունը, իսկ առանձին կոլտնտեսություններում անցյալ տարի պակասել է ոչխարների գլխաքանակը։ Նման օրինակներ կան նաև ռեսպուբլիկայի ուրիշ շրջաններում։

Այս ձևով տնտեսությունը վարել, իհարկե, չի կարելի։ Անհրաժեշտ է կարճ ժամանակամիջոցում որոշել յուրաքանչյուր տնտեսության արտադրության ուղղությունը, անհրաժեշտ է ավելի շատ միջոցներ ներդնել և բազա ստեղծել արտադրության այնպիսի ճյուղերի համար, որոնք զարգացման նպաստավոր պայմաններ ունեն։

Գյուղատնտեսական արտադրության մասնագիտացման և նրա ճիշտ տե-



ղաբաշխման գործում մեծ դեր պետք է խաղա մթերքների վաճառքի և հանձնման ճիշտ պլանավորումը։ Ռեսպուբլիկայում մթերումները պլանավորող կազմակերպությունները և առաջին հերթին Մինիստրների Սովետի Պետպլանն ու շրջանային Սովետների գործկոմները դեռևս չեն հրաժարվել գյուղատնտեսական մթերքների պետական գնումների և հանձնումների պլաններ սահմանելու նախկինում գոյություն ունեցող շաբլոնից, նրանք շարունակում են թվաբանական հաշվումներից ելնելով սահմանել մթերումների և գնումների պլանները, առաջնորդվելով յուրաքանչյուր տնտեսության՝ ամեն բանից մի քիչ սկզբունքով։ Այդ մեթոդներով սահմանված մթերքների վաճառքի և հանձնման պլանները կատարելու համար փաստորեն շատ կոլտնտեսություններ և սովխոզներ ստիպված են լինում զբաղվել արտադրության թույլ և զարգացման հեռանկարներ չունեցող ճյուղերով։ 1959 թվականին ռեսպուբլիկայի 156 կոլտնտեսություններ խոզաբուծական ֆերմաներում ունեցել են մինչև 50-ական գլուխ խոզ։ Այդ կոլտնտեսություններում մեկ ցենտներ խոզի մսի ինքնարժեքը միջին հաշվով կազմել է 2140 ռուբլի, մեկ ցենտներ մսի արտադրության վրա ծախսվել է 46 աշխատանքային մարդ-օր։ Այնինչ 300-ից ավելի խոզերի գլխաքանակ ունեցող 57 կոլտնտեսություններում մեկ ցենտներ մսի ինքնարժեքը կազմել է 1280 ռուբլի (որը, իհարկե, նույնպես բարձր է) և ծախսվել է 27 աշխատանքային մարդ-օր։ 1960 թվականին Բասարգեչարի, Ամասիայի, Արտաշատի, Ստեփանավանի, Մեղրիի և մյուս շրջանների շատ կոլտնտեսություններում մեկ ցենտներ խոզի մսի ինքնարժեքը (կենդանի քաշով) կազմել է 2500—7000 ռուբլի, իսկ Կրասնոսելսկի շրջանի Ջայքենդի կոլտնտեսությունը, որն արտադրել է ընդամենը 3,5 ցենտներ միս, մեկ ցենտների ինքնարժեքը կազմել է 8155 ռուբլի։

Նույն տարում ռեսպուբլիկայի մոտ 300 կոլտնտեսություններ թռչնաբուծական ֆերմաներում ունեցել են մինչև 300-ական հավ, ուր մեկ ձվի ինքնարժեքը կազմել է 2 ռուբլի, մինչդեռ 1500-ից ավելի հավ ունեցող 37 կոլտնտեսություններում ձվի ինքնարժեքը կազմել է 65 կոպեկ։

Թռչնաբուծության բնագավառում վիճակը նույնն է Սևանի, Ապարանի, Բասարգեչարի, Արթիկի, Թալինի շրջանների մի շարք կոլտնտեսություններում, որտեղ պահվում են թռչնաբուծական մանր ֆերմաներ։ Անցյալ տարի այդ ֆերմաներում մեկ ձվի ինքնարժեքը կազմել է 4—6 ռուբլի, իսկ Բասարգեչարի շրջանի Վերին Շորժայի կոլտնտեսությունում՝ 8 ռուբլի։

Արտադրության նման ճյուղերի առկայությունը ուղղակի վնաս է պատճառում տնտեսությանը և կասեցնում նրա զարգացումը։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Նոր Ծրագրում խնդիր է դրվում՝ «Իրագործել գյուղատնտեսության գիտականորեն հիմնավորված տեղաբաշխում, ըստ բնա-տնտեսական գոտիների և շրջանների, նրա ավելի խոր և հաստատուն մասնագիտացում, առավելապես աճեցնելով գյուղատնտեսական արտադրանքի այն տեսակի արտադրությունը, որի համար լավագույն պայմաններ կան և որն առավել քիչ ծախսեր է պահանջում»։

Պարտիայի շրջանային կոմիտեները և շրջսովետի գործկոմները, յուրաքանչյուր կոլտնտեսության և սովխոզի ղեկավարություն պետք է անհապաղ որոշեն իրենց արտադրության հիմնական ուղղությունը, ստեղծեն արտադրության մասնագիտացված խոշոր ճյուղեր (ուր նպատակահարմար է՝ նաև միջկոլտնտեսային ֆերմաներ) այն հաշվով, որպեսզի ավելի էֆեկտիվ օգտագործ-

վեն յուրաքանչյուր տնտեսության և յուրաքանչյուր շրջանի հնարավորությունները՝ ավելի շատ մթերքներ արտադրելու համար։

Շահումյանի, Կրասնոսելսկի, Նոյեմբերյանի, Իջևանի շրջաններում կազմակերպված միջկոլտնտեսային թռչնաբուծական և խոզաբուծական մասնագիտացված ֆերմաները լավագույն արդյունքներ են տալիս։ Էջմիածնի շրջանի Աղավնատան և Լենինի անվան, Սիսիանի շրջանի Շաքիի, Գորիսի շրջանի Խնձորեսկի, Աշտարակի շրջանի Ոսկեվազի կոլտնտեսություններում ստեղծված թռչնաբուծական մասնագիտացված ֆերմաները տարեկան արտադրում են կես միլիոնից ավելի ձու։ Այդտեղ մեկ թռչնապահն իր խնամած հավերից տարեկան ստանում է 100—200 հազար ձու։

Այս օրինակները խոսում են այն մասին, որ մենք ունենք ռեալ հնարավորություններ գյուղատնտեսական արտադրության մանր ճյուղերի խոշորացման և մասնագիտացման միջոցով ոչ միայն լիկվիդացնելու մանր, թույլ և ոչ եկամտաբեր, տնտեսություններին վնաս պատճառող արտադրության ճյուղերը, այլ միաժամանակ արագ թափով ավելացնելու մթերքների արտադրությունը։

Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի Պետպլանը, Գյուղատնտեսության մինիստրությունը, Սովխոզների գլխավոր վարչությունը, Մթերումների մինիստրությունը և Գյուղատնտեսության էկոնոմիկայի և կազմակերպման գիտահետազոտական ինստիտուտը պետք է համակողմանի օգնություն ցույց տան կոլտնտեսություններին և սովխոզներին այդ կարևորագույն նշանակություն ունեցող խնդրի լուծման գործում։

Գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման գործում էական նշանակություն ունի կոլտնտեսականների և սովխոզների բանվորների անձնական շահագրգռվածության բարձրացումը։ Վ. Ի. Լենինը նշել է, որ կոմունիզմի կառուցումը պետք է իրագործել «...ոչ թե անմիջական խանդավառության վրա հենվելով, այլ մեծ ռևոլյուցիայի ստեղծած խանդավառության օգնությամբ, հենվելով անձնական շահի, անձնական շահագրգռվածության, տնտեսական հաշվարկի վրա...» (Երկեր, հ. 33, էջ 46)։ Ռեսպուբլիկայի շատ կոլտնտեսություններ, հետևողականորեն կիրառելով լենինյան այդ ցուցումները, կոլտնտեսականների նյութական շահագրգռվածությունը բարձրացնելու շնորհիվ հասել են լավագույն ցուցանիշների։

Կոլտնտեսականների անձնական շահագրգռվածությունը բարձրացնելու էֆեկտիվ միջոցը մթերքների արտադրության առաջադրանքները կատարող և գերակատարող կոլտնտեսականների համար դրամական և մթերային լրացուցիչ վարձատրության կիրառումն է։ Կոլտնտեսականների լրացուցիչ վարձատրությունը լայն կիրառում է ստացել Շամշադինի շրջանի կոլտնտեսություններում, որտեղ 1960 թվականին աշխօրերի դիմաց բաշխված դրամի 12 տոկոսը վճարվել է որպես լրացուցիչ վարձատրություն։ Ախուրյանի շրջանի կոլտնտեսություններում այն կազմել է ավելի քան 16, իսկ Սպիտակի շրջանի կոլտնտեսություններում՝ մոտ 25 տոկոս։ Մթերքների արտադրության ավելացման գործում վերջին տարիների ընթացքում այդ շրջանների կոլտնտեսությունների ձեռք բերած հաջողությունները հիմնականում կոլտնտեսականների անձնական շահագրգռվածության բարձրացման արդյունք են։ Սակայն ռեսպուբլիկայի բազմաթիվ կոլտնտեսություններում այդ կարևոր միջոցառումը բոլորովին չի իրագործվում կամ վատ է իրագործվում։



1960 թվականին ռեսպուբլիկայում կոլտնտեսականների աշխօրերի դիմաց բաշխված դրամի միայն 4,2 տոկոսն է վճարվել որպես լրացուցիչ վարձատրություն։ Կոլտնտեսականների անձնական շահագրգռվածության բարձրացման վրա անբավարար ուշադրություն են դարձնում Կիրովականի, Ապարանի, Ղափանի, Սևանի շրջանների կոլտնտեսությունները, որտեղ անցյալ տարի կոլտնտեսականների աշխօրերի դիմաց բաշխված դրամի մեկ տոկոսից էլ պակասն է վճարվել որպես լրացուցիչ վարձատրություն։ Այստեղ կոլտնտեսականների շահագրգռվածությունը ավելի շատ մթերքներ արտադրելու գործում համարյա չի խթանվում. նրանք պասսիվ են մասնակցում հանրային արտադրությանը, թույլ է պայքարը եղած հնարավորությունները լրիվ օգտագործելու և ավելի շատ մթերքներ արտադրելու գործում։ Պատահական երևույթ չէ, որ նշված շրջանների կոլտնտեսություններում մթերքների արտադրությունը վերջին տարիների ընթացքում համարյա չի ավելացել։ Յուրաքանչյուր կոլտնտեսություն, ելնելով իր տնտեսական պայմաններից, առանձնահատկություններից, պետք է սահմանի և կիրառի կոլտնտեսականներին լրացուցիչ վարձատրություն վճարելու կարգ և նրանց շահագրգռվածությունը բարձրացնող այլ միջոցառումներ։ Այդ հնարավորություն կտա ապահովելու բոլոր կոլտնտեսականների ակտիվ մասնակցությունը հանրային աշխատանքներին, ռացիոնալ օգտագործելու եղած հնարավորությունները։

Ռեսպուբլիկայի կոլտնտեսություններն ու սովխոզները թևակոխում են գյուղատնտեսական մթերքների, մասնավորապես անասնաբուծական մթերքների արտադրության ավելացման վճռական նշանակություն ունեցող ժամանակաշրջանը։ Սկսվում է անասունների ձմեռային մսուրային խնամքը։ Անասնաբուծության մեջ կարևոր մի շարք կամպանիաներ համընկնում են անասունների մսուրային խնամքի ժամանակաշրջանին։ Հետևաբար, անասունների մսուրային շրջանի հաջող անցկացումով է պայմանավորված մսի, կաթի, բրդի, ձվի և անասունների գլխաքանակի հետագա ավելացման հաջողությունը։

Ընթացիկ տարում ռեսպուբլիկայի մի շարք շրջաններում տեղի ունեցած երաշտի հետևանքով շատ կոլտնտեսությունների և սովխոզների չհաջողվեց անհրաժեշտ կեր կուտակել, որի հետևանքով անասունների մսուրային պահպանության համար ստեղծվել են որոշակի դժվարություններ։

Ռեսպուբլիկայի շատ կոլտնտեսություններ և սովխոզներ հապաղում են անասնապահական շենքերի շինարարության և հների նորոգման գործում։ Դեռևս ձեռք չեն բերված անհրաժեշտ ինվենտար և շենքերը կահավորված չեն համապատասխան պարագաներով և հարմարություններով։ Հայկոոպը և Սովխոզների գլխավոր վարչությունը վատ են կազմակերպում կոլտնտեսությունների և սովխոզների մատակարարումը շինանյութերով, ինվենտարով, արտահագուստով, աղով և կարևոր այլ ապրանքներով։ Շատ կոլտնտեսություններում և սովխոզներում պատշաճ կարգ ու կանոն չի սահմանված կերի պահպանության և օգտագործման գործում։

Մսուրային շրջանում անասունների անկորուստ պահպանության և նրանց մթերատվության բարձրացման շահերը պարտիական և սովետական կազմակերպություններից պահանջում են մաքսիմալ ուշադրություն դարձնել անասունների ձմեռումը բազմակողմանիորեն նախապատրաստելու և կազմակերպված անցկացնելու վրա։ Հարկավոր է ամենակարճ ժամանակամիջոցում ավար-

տել բոլոր անասնաշենքերի նորոգման և ջեռուցման աշխատանքները։ Ամենախիստ հսկողության տակ պետք է գտնվեն կերի պահպանությունն ու ռացիոնալ օգտագործումը։ Անասունների խնամքի և պահպանության բարելավումը (առանձնապես կերի պակասության պայմաններում) ունի խիստ կարևոր նշանակություն։ Ֆերմաները պետք է կոմպլեկտավորել համապատասխան կոլտնտեսականներով, ծավալել գործարար սոցիալիստական մրցություն՝ նշանաբան ունենալով՝ առանց կորստի պահպանելու անասունների և, մասնավորապես, մատղաշների գլխաքանակը։

Կոլտնտեսականների և սովխոզների սկզբնական պարտկազմակերպությունները իրենց ուշադրությունը գերազանցապես պետք է կենտրոնացնեն անասունների ձմեռային շրջանը կազմակերպված և առանց կորուստների անցկացնելու վրա։ Կոմունիստների մի մասին ժամանակավորապես անհրաժեշտ է աշխատանքի փոխադրել անասնապահական ֆերմաները։ Անասունների ձմեռային շրջանը կազմակերպված անցկացնելու գործին պետք է ծառայեցնել կոմերիտականների և գյուղական երիտասարդության ամբողջ ուժերը։

ՍՄԿՊ XXII համագումարի պատվին ծավալելով սոցիալիստական մրցություն, կոլտնտեսությունների և սովխոզների աշխատավորությունը ժամկետից շուտ կատարեց մսի, խաղողի, պտուղների արտադրության և վաճառքի սոցիալիստական պարտավորությունները։ Եղեգնաձորի, Վեդիի, Ամասիայի, Ղուկասյանի, Կալինինոյի շրջանների բազմաթիվ կոլտնտեսություններ և սովխոզներ ժամկետից երկու և կես ամիս շուտ կատարեցին պետությանը գյուղատնտեսական մթերքներ վաճառելու պարտավորությունները։

ՍՄԿՊ XXII համագումարը նոր դարագլուխ բացեց կոմունիստական շինարարության պատմության մեջ։ Համագումարի կողմից ընդունված նոր Ծրագիրն ամբողջ աշխարհին ազդարարում է, որ սոցիալիստական մեր Հայրենիքը թևակոխում է կոմունիզմի կառուցման նոր ժամանակաշրջան, որ առաջիկա 20 տարվա ընթացքում «...կստեղծվի կոմունիզմի նյութատեխնիկական բազան, ամբողջ բնակչության համար կապահովվի նյութական և կուլտուրական բարիքների առատություն, սովետական հասարակությունն ընդհուպ կմոտենա ըստ պահանջմունքների բաշխման սկզբունքի իրականացմանը»։ Այդ նվիրական նպատակին հասնելու համար մեծ դեր է պատկանում մեր սոցիալիստական գյուղատնտեսությանը։ Պարտիայի Ծրագրում նշված է, որ հզոր արդյունաբերության հետ մեկտեղ ծաղկուն, բազմակողմանիորեն զարգացած և բարձր մթերատու գյուղատնտեսության ստեղծումը կոմունիզմի կառուցման պարտադիր պայմանն է։ Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության բնագավառի աշխատողները պետք է ամենայն լրջությամբ գիտակցեն այս ասպարեզում իրենց առջև ծառացած մեծ խնդիրները։

Սովետական Միության բոլոր աշխատավորների հետ միասին մեր ռեսպուբլիկայի կոմունիստները, բանվորներն ու ծառայողները, կոլտնտեսականները միահամուռ հավանություն տվեցին ՍՄԿՊ XXII համագումարի որոշումներին, որը բխում է սովետական մարդկանց, ամբողջ աշխարհի խաղաղասեր մարդկանց սրտից։ Սովետական Հայաստանի կոմունիստներն ու բոլոր աշխատավորները էլ ավելի սերտորեն համախմբված ՍՄԿՊ-ի, Ն. Ս. Խրուշչովի գլխավորած Կենտկոմի շուրջը, ոգեշնչված պարտիայի նոր Ծրագրով, մեծ եռանդով կպայքարեն կոմունիզմի կառուցման հոյակապ ծրագիրն իրականացնելու համար։

---

# ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ՆՅՈՒԹԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԲԱԶԱՅԻ ՍՏԵՂԾՈՒՄԸ ՍՍՌՄ-ՈՒՄ

Հ. ԹՈՒՄԱՆՅԱՆ

Մեր դարաշրջանի մեծագույն փաստաթուղթը՝ պարտիայի XXII համագումարի կողմից հաստատված Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Ծրագիրը, իրենից ներկայացնում է մարքսիզմ-լենինիզմի ստեղծագործական զարգացումը։ Համաշխարհային նշանակություն ունեցող այդ փաստաթղթում գիտական խորաթափանցությամբ բացահայտվում են սոցիալիզմից կոմունիզմին անցնելու օբյեկտիվ օրինաչափությունները։ Ինչպես մատնանշեց ընկեր Ն. Ս. Խրուշչովը, Ծրագրում տնտեսապես հիմնավորված է կոմունիզմը։ Վերջինս իր բազմակողմանի արտացոլումն է գտել Ծրագրի այն մասում, որտեղ խոսվում է կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման մասին։ Մեր պարտիայի Ծրագիրն այդ առթիվ ազդարարում է. «Պարտիայի և սովետական ժողովրդի գլխավոր տնտեսական խնդիրն է՝ երկու տասնամյակների ընթացքում ստեղծել կոմունիզմի նյութատեխնիկական բազա»։

Ամեն մի հասարակության նյութատեխնիկական բազան՝ տվյալ հասարակության արտադրողական ուժերի նյութական կազմն է, հասարակության արտադրամիջոցների ամբողջությունը։ Որպես կանոն միշտ էլ ամեն մի հասարակության նյութատեխնիկական բազան թե՛ քանակապես և թե իր որակով ու կազմով իրենից ներկայացնում է մի նոր աստիճան նախորդ հասարակության նյութատեխնիկական բազայի նկատմամբ։ Այդ բանն իր արտահայտությունն է գտնում նաև նրանում, թե յուրաքանչյուր աշխատողին աշխատամիջոցների ինչպիսի գումար (աշխատանքի տեխնիկական զինվածություն) և էներգիայի քանի միավոր է հասնում (էներգազինվածություն)։ Հասարակության նյութատեխնիկական բազան թույլ է տալիս իրացնել տվյալ հասարակության բոլոր հնարավորությունները և դրսևորել նրա կարևոր հատկանիշները։ Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը ամենից առաջ նշանակում է արտադրողական ուժերի զարգացման որակական նոր աստիճան։ Այն ո՛չ միայն տեխնիկական-տնտեսական խնդիր է, այլև առաջնահերթ սոցիալ-տնտեսական պրոբլեմ, այն է՝ ստեղծել իրենց հզորությամբ չտեսնված, աշխարհում ամենաբարձր աշխատանքի արտադրողականություն, բոլորի համար նյութական ու հոգևոր բարիքների առատություն, աստիճանաբար վերափոխել սոցիալիստական հասարակական հարաբերությունները կոմունիստական հարաբերությունների։ Սովետական ժողովուրդը հնարավորություն կստանա հասնելու արտադրության զարգացման և տեխնիկական առաջադիմության այնպիսի մակար-

դակի, որը կապահովի աշխատանքի ամենաբարձր արտադրողականություն, նախադրյալներ կստեղծի անցում կատարելու կոմունիզմի բարձր փուլին, իրականացնելու «յուրաքանչյուրից՝ ըստ ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ պահանջմունքների» մեծ սկզբունքը։

Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման իրական մասշտաբները նախագծված են ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 20-ամյա պլանում (գլխավոր հեռանկար), որոնք բերված են պարտիայի XXII համագումարին տված ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուցման մեջ։

Ինչպես նշված է ՍՄԿՊ Ծրագրում, առաջին քսան տարում արդյունաբերական արտադրանքի աճը մեր երկրում կավելանա վեց անգամ (1960 թվականի համեմատությամբ), որով և մենք շատ առաջ կանցնենք ԱՄՆ-ից։ Այդ նույն ժամանակամիջոցում չորս ու կես անգամ արդյունաբերության մեջ բարձրացնելով աշխատանքի արտադրողականությունը, ՍՍՌՄ-ը երկու անգամ կգերազանցի ԱՄՆ-ի աշխատանքի արտադրողականության ներկա մակարդակը։ Սա նշանակում է, որ երկու սիստեմների խաղաղ մրցության մեջ հաղթանակում է սոցիալիզմը։

Պարտիայի Ծրագրի կենսագործմամբ մեր երկիրը 1980 թվականին կարտադրի 250 միլիոն տոննա պողպատ և 3000 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա։ Մինչև 1980 թ. ՍՍՌՄ-ում հիմնականում կկառուցվի կոմունիստական հասարակարգ, որի հիման վրա «ամբողջ բնակչության համար կապահովվի նյութական և կուլտուրական բարիքների առատություն, սովետական հասարակությունն ընդհուպ կմոտենա ըստ պահանջմունքների բաշխման սկզբունքի իրականացմանը»։ Առաջիկա քսան տարում արդյունաբերության մեջ արտադրության միջոցների արտադրությունը («Ա» խումբ) կավելանա մոտ յոթ անգամ։

Այդ նույն ժամանակամիջոցում գյուղատնտեսության համախառն արտադրանքը կավելանա 3,5 անգամ։ Նյութական բոլոր ճյուղերի համախառն արտադրանքը կամ հասարակական ամբողջական արտադրանքը կավելանա մոտավորապես 5 անգամ։ Սոցիալիստական հարստության գլխավոր մասը կազմող հիմնական արտադրական ֆոնդերը կավելանան 5 անգամ՝ փաստորեն տեղի կունենա արտադրության լիակատար նորացում միանգամայն նոր տեխնիկական հիմքի վրա։

Սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման այդ մասշտաբները այլևս չեն տեղավորվի ներկայումս գոյություն ունեցող սեփականության հարաբերությունների շրջանակներում։ Էկոնոմիկայի այդ մակարդակը նյութական հիմք կծառայի, որպեսզի սոցիալիստական սեփականության ներկայիս երկու ձևերը վերաճեն միասնական կոմունիստական սեփականության, որպեսզի հաղթահարվեն քաղաքի և գյուղի, իսկ հետագայում՝ մտավոր և ֆիզիկական աշխատանքի միջև եղած էական տարբերությունները, լրիվ կերպով վերացվեն դասակարգերը և սոցիալական խավերը։

***

Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը ամենից առաջ նշանակում է երկրի լրիվ էլեկտրիֆիկացում։ Տեխնիկական առաջադիմության տեմպերը որոշվում են երկրի էներգազինվածությամբ։ Այդ է պատճառը, որ



պարտիայի Ծրագրում առաջին պլանի վրա են քաշված երկրի համատարած ու լրիվ էլեկտրիֆիկացումը և դրա հիման վրա արդյունաբերության ու գյուղատնտեսության մեջ տեխնիկայի ու տեխնոլոգիայի կատարելագործումը և աշխատանքի կազմակերպման արմատական բարելավումը։

Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում երկրի էլեկտրիֆիկացումը համարելով կոմունիզմի կառուցման ծրագրի առանցքը, պարտիան ղեկավարվում է լենինյան հայտնի բանաձևով՝ կոմունիզմը դա Սովետական իշխանությունն է պլյուս ամբողջ երկրի էլեկտրիֆիկացիան։ Դրան համապատասխան պարտիայի նոր Ծրագիրը էլեկտրիֆիկացումը համարում է տեխնիկական առաջադիմության առաջատար ուղղությունը։ ՍՍՌՄ-ում 1960 թվականին բոլոր էլեկտրակայանների կարողությունը կազմեց 66 միլիոն 700 հազար կիլովատ. թողարկվեց 292 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա։ Մեր պարտիայի Ծրագիրը մարմնավորող ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման գլխավոր հեռանկարը նախատեսում է 1980 թվականին էլեկտրաէներգիայի տարեկան արտադրությունը ներկայիս մակարդակի համեմատությամբ ավելացնել մոտ 10 անգամ։ 1980 թվականին ՍՍՌՄ-ում արտադրված էլեկտրաէներգիայի քանակությունը 1,5 անգամ ավելի շատ կլինի, քան էլեկտրաէներգիայի այն քանակը, որ արտադրվում է ներկայումս ամբողջ աշխարհում, առանց ՍՍՌՄ-ի։ Քսան տարվա ընթացքում ՍՍՌՄ-ում կկառուցվեն 180 հզոր հիդրոէլեկտրակայաններ, մոտավորապես 200 շրջանային ջերմաէլեկտրակայաններ՝ յուրաքանչյուրը մինչև 3 միլիոն կիլովատ կարողությամբ, ինչպես նաև 260 խոշոր ջերմաէլեկտրակենտրոններ։ Գլխավոր հեռանկարով նախատեսվում է բոլոր էլեկտրակայանները միավորել միասնական բարձրավոլտ էներգետիկ սիստեմի մեջ։

Ավարտելով ՍՍՌՄ-ի միասնական էներգետիկ սիստեմի ստեղծումը, հնարավոր կլինի հետագայում ստեղծել սոցիալիզմի լագերի երկրների միասնական էներգետիկ սիստեմ, որը հնարավոր է միայն սոցիալիստական սեփականատիրության պայմաններում և ունի մի շարք աչքի ընկնող տեխնիկա-տնտեսական առավելություններ։ Էլեկտրակայանների փնջավորումը հուսալի է դարձնում էլեկտրամատակարարումը, ուզած ժամանակ հնարավոր է դարձնում էլեկտրաէներգիայի ցանկացած քանակությունը հաղորդել այն շրջաններին, որոնք տվյալ պահին կունենան էլեկտրաէներգիայի մեծ պահանջ և այլն։

Ստեղծելով միասնական էներգետիկ սիստեմներ, կոմունիստական հասարակությունը նոր, խոշոր քայլ կկատարի բնության վիթխարի ուժերը մարդուն ենթարկելու ուղղությամբ։ Էներգետիկ շինարարության այն հսկայական ծրագիրը, որը նախատեսվում է ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության գլխավոր հեռանկարով, հնարավորություն կտա էլեկտրիֆիկացման վրա կատարվող կապիտալ ներդրումներն օգտագործել առավել արդյունավետ, որը կհասցնի յուրաքանչյուր կվտ կարողության վրա ծախսվող միջոցների կրճատման, հետևապես և էլեկտրաէներգիայի ինքնարժեքի իջեցման։

Առատ էլեկտրաէներգիայի արտադրությունը հնարավորություն կտա բարձրացնելու աշխատանքի էներգազինվածությունը, այսինքն՝ մեկ բանվորին հասնող էլեկտրաէներգիայի քանակը։ Քսան տարվա ընթացքում աշխատանքի էներգազինվածությունը ՍՍՌՄ-ում կբարձրանա 8—9 անգամ, որը հզոր լծակ կհանդիսանա աշխատանքի արտադրողականության բարձրացման համար։

Քսանամյակի ընթացքում լուրջ փոփոխության կենթարկվի երկրի էլեկ-

տրաէներգիայի սպառման բալանսը։ Արդյունաբերության մեջ էլեկտրաէներ-
գիայի սպառման չափերի աճը ետ կմնա էլեկտրաէներգիայի արտադրության
աճի չափերից։ 1980 թվականին գյուղատնտեսության համար էլեկտրաէներ-
գիան կդառնա էներգիայի հիմնական տեսակը. կէլեկտրիֆիկացվեն գյուղա-
տնտեսության աշխատատար պրոցեսները։ Գյուղատնտեսության լրիվ էլեկ-
տրիֆիկացումը հզոր գործոն կծառայի աշխատանքի արտադրողականության
բարձրացման, կոլտնտեսային արտադրության աննախընթաց վերելքի համար։
Գյուղատնտեսական աշխատանքների լիակատար էլեկտրիֆիկացմամբ գյուղա-
տնտեսական աշխատանքը կվերածվի ինդուստրիալ աշխատանքի մի այլաձև-
վության։ Աշխատանքի բնույթի այդպիսի փոփոխումը վճռական խթան կհան-
դիսանա քաղաքի և գյուղի միջև եղած էական տարբերությունների վերացման
համար։

Էլեկտրաէներգիայի արտադրության ընդլայնումը հնարավորություն կտա
զգալի չափով ավելացնելու նրա սպառումը երկաթուղային տրանսպորտում։
Յոթնամյակում երկրի գլխավոր երկաթուղային մագիստրալներում արդեն կի-
րականացվի շոգեքարշների փոխարինումը էլեկտրաքարշով և ջերմաքարշով։
Քսանամյակի վերջում շոգեքարշները կդառնան թանգարանային նմուշներ.
լիովին կավարտվի երկաթուղային տրանսպորտի էլեկտրիֆիկացումը։ Այդպի-
սով հնարավոր կլինի աշխատանքային և նյութական նվազագույն ծախսերով
ավելացնել բեռնաշրջանառությունը և ուղևորների փոխադրումները, տնտեսել
ժամանակը և բարձրացնել տրանսպորտի կուլտուրան։ Կէլեկտրիֆիկացվեն
բեռնման ու բեռնաթափման աշխատանքները։ Երկաթուղիների էլեկտրիֆիկաց-
ման շնորհիվ գոյություն ունեցող ճանապարհների թողարկման կարողությունը
կավելանա մինչև 2 անգամ, իսկ վառելիքի ծախսումները կկրկնապատկվեն
3—4 անգամ։

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման գլխավոր հեռանկարով
կէլեկտրիֆիկացվեն կոմունալ տնտեսության և հասարակական սննդի բոլոր
ձեռնարկությունները։ Էլեկտրաէներգիան մուտք կգործի կենցաղի բոլոր աս-
պարեզները։

Համատարած էլեկտրիֆիկացումը սոցիալիստական արտադրահարաբե-
րությունների պայմաններում կնշանակի կոմունիզմի հիմքի վերջնական հաղ-
թանակը, ինչպես այդ գիտականորեն կանխատեսում էր մեր մեծ ուսուցիչ
Վ. Ի. Լենինը։

***

Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը նշանակում է ար-
տադրության պրոցեսների կոմպլեքսային մեքենայացում, այդ պրոցեսների
ավելի ու ավելի ավտոմատացում։ Երկրի էլեկտրիֆիկացիան, որպես տեխնի-
կական առաջադիմության ուղղություններից մեկը, հանդիսանում է արտա-
դրության այս կամ այն տեխնոլոգիայի, մեքենաների այս կամ այն տիպի
ստեղծման նախադրյալ։ Այս կապակցությամբ էլ էլեկտրիֆիկացիան պետք է
նախադրյալ ծառայի արտադրության այնպիսի գործիքների ստեղծման հա-
մար, որոնք հանդիսանան կոմունիստական արտադրության ոսկրամկանային
սիստեմը։ Մարքսը նշել է, որ յուրաքանչյուր հասարակական արտադրության
գլխավոր հատկանիշներից է այն, թե տվյալ հասարակությունն աշխատանքի



ինչպիսի մեխանիկական միջոցներ ունի և այդ միջոցների ամբողջությունը
համարում էր այդ հասարակության արտադրության ոսկրամկանային սիստե-
մը։ «Աշխատանքի միջոցների թվում աչքի են ընկնում աշխատանքի մեխա-
նիկական միջոցները, որոնց ամբողջությունը կարելի է անվանել արտադրու-
թյան ոսկրային ու մկանային սիստեմ, և որոնք կազմում են հասարակական
արտադրության մի որոշ դարաշրջանի անհամեմատ ավելի շատ բնորոշ տար-
բերիչ հատկանիշները...» (Կ. Մարքս, Կապիտալ, հ. 1, էջ 191)։ Կոմունիստա-
կան արտադրության ոսկրամկանային սիստեմը կազմելու է կոմպլեքսային
մեքենայացման և ավտոմատացման մեքենաների սիստեմը։ Պարտիայի նոր
Ծրագրում նշվում է, թե քսանամյակի ընթացքում մասսայական մասշտաբով
կիրագործվի արտադրության կոմպլեքսային ավտոմատացումը՝ ավելի մեծ
չափով անցնելով ավտոմատ ցեխերի և ձեռնարկությունների։ Նախատեսվում
է կիբեռնետիկայի, էլեկտրոնային հաշվող-լուծող և կառավարող սարքերի
լայն կիրառում արտադրության մեջ և գիտահետազոտական աշխատանքնե-
րում, պլանավորման ու վիճակագրական հաշվարկներում։ Դրա հետ միասին
կավտոմատացվեն արտադրության պրոցեսների բոլոր օղակները, այդ թվում
նաև՝ օժանդակ աշխատանքները։

Արտադրության պրոցեսների ավտոմատացումն առաջին հերթին կիրակա-
նացվի մեքենաշինության մեջ։ Երբ մեքենաշինությունը արտադրի մասսայա-
կան մասշտաբով ավտոմատ սարքեր ու հարմարանքներ, այդ դեպքում միայն
հնարավոր կլինի ավտոմատացնել նաև ժողովրդական տնտեսության մյուս
ճյուղերը։

Արտադրության պրոցեսների կոմպլեքսային մեքենայացումն ու ավտո-
մատացումը, որն ըստ էության նշանակում է տեխնիկական հեղաշրջում, ան-
ցում արտադրության միջոցների տվյալ սիստեմից դեպի նոր սիստեմ, իրենով
կպայմանավորի աշխատանքի արտադրողականության հսկայական աճը։ Ար-
տադրության պրոցեսների կոմպլեքսային մեքենայացման ու ավտոմատացման
հիման վրա հնարավորություն կստեղծվի նոր աստիճանի վրա բարձրացնել
արտադրության տեխնոլոգիան և կուլտուրան, արմատապես բարելավել ար-
տադրության կազմակերպումը։ Արտադրության մեջ ավտոմատ սարքերի ու
հարմարանքների մասսայական ներդրմանը կուղեկցեն արտադրության կենտ-
րոնացումը, մասնագիտացումը, կոոպերացումն ու կոմբինացումը։ Վերջին-
ներս հնարավորություն կտան աշխատանքի առարկաներն առավել լիակատար
և ռացիոնալ օգտագործելու, որը կհասցնի արտադրության արդյունավետու-
թյան աստիճանի բարձրացման, հասարակական ամբողջական արդյունքի և
ազգային եկամտի աննախընթաց աճման։ Ահա թե ինչու, հաշվի առնելով կո-
մունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման բացառիկ նշանակությունը
կոմունիստական առատություն ապահովելու գործում, պարտիայի նոր Ծրա-
գիրը նախատեսում է հասարակական ամբողջական արդյունքը քսան տարում
ավելացնել 5 անգամ։

Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը նշանակում է ո՛չ
միայն հեղաշրջում արտադրության գործիքների ասպարեզում, այլև աշխա-
տանքի առարկաների ասպարեզում, կապված քիմիայի, որպես տեխնիկական
առաջադիմության ուղղություններից մեկի, հետագա զարգացման հետ։ Քի-
միայի զարգացման շնորհիվ շատ լայն հեռանկարներ են բացվում արհեստա-
կան նյութեր ստանալու բնագավառում։ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության

գլխավոր հեռանկարով նախատեսվում է նավթի արտադրությունն ավելացնել մինչև 4,8 անգամ, գազինը՝ 15,2 անգամ։ Նավթի և գազի արտադրության զարգացման գերազանց տեմպերի շնորհիվ էապես կբարելավվի երկրի վառելիքի բալանսը ի հաշիվ վառելիքի առավել արդյունավետ տեսակների և կկանխորոշվի քիմիական արդյունաբերության զարգացման հիմնական ուղղությունը։ Քիմիական արդյունաբերության մեջ գազը և նավթը որպես ելանյութ լայն չափերով օգտագործելը հնարավորություն կստեղծի ամեն կերպ զարգացնելու պլաստիկ մասսայի, արհեստական ու սինթետիկ մանրաթելի, կաշվի, մորթու և այլ նոր նյութերի արտադրությունը։ Պլաստմասսայի արտադրությունը, որը սինթետիկ ձյութերի հետ միասին 20 տարվա ընթացքում կհասնի 21000 հազար տոննայի կամ 1960 թվականի համեմատությամբ կավելանա մինչև 63 անգամ, հնարավորություն կտա լուծելու տեխնիկական բարդ խնդիրներ, ստեղծելու ծանր արդյունաբերության և, առաջին հերթին, մեքենաշինության մեջ տեխնոլոգիական նոր սխեմաներ։ Արհեստական և սինթետիկ թելանյութերի արտադրությունը, որն ավելանալու է ավելի քան 15 անգամ, մեծ չափերով կընդարձակի թեթև արդյունաբերության հումքային բազան և աճող գյուղատնտեսական հումքի հետ միասին կապահովի ժողովրդական սպառման առարկաների արտադրությունը։ Դրա հետ միասին, այդ նոր նյութերի արտադրությունը շատ ավելի էժան կլինի, քան նախորդներինը։ Այսպես, բամբակյա թելանյութի մեկ տոննայի արտադրության վրա ծախսվում է 200 մարդ-օր, բրդի արտադրության վրա՝ մինչև 200 մարդ-օր, մինչդեռ մեկ տոննա արհեստական թելանյութերի վրա ծախսվում է 7—8 անգամ պակաս աշխատանքային օր։

Առաջիկա քսանամյակում քիմիական արդյունաբերության մի շարք նոր ճյուղերի զարգացման շնորհիվ մեծապես կնվազի սննդանյութերի այն քանակը, որն այժմ ծախսվում է տեխնիկական նպատակներով (օճառ, կաուչուկ, լաքեր, ներկեր և այլն)։ Հայտնի է, որ այնպիսի կարևոր սննդամթերքներ, ինչպիսիք են՝ ցորենը, կարտոֆիլը, բուսական յուղը ծառայում են որպես տեխնոլոգիական հումք։ Պարզ է, որ արհեստական սպիրտի, ճարպերի և այլ նյութերի քիմիական ձևով արտադրության ծավալումը հնարավորություն կտա վերոհիշյալ սննդանյութերը վերամշակելու և օգտագործելու անմիջականորեն սպառման նպատակով։

Քիմիական արդյունաբերության զարգացումը և, մասնավորապես, պարարտանյութերի արտադրության ընդարձակումը վիթխարի նշանակություն կունենան գյուղատնտեսական արտադրության զարգացման համար։ Քիմիական արդյունաբերության նոր ճյուղերի գերազանց զարգացումը, որպես կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման կարևոր պայմաններից մեկը, կունենա նաև այն նշանակությունը, որ էական փոփոխություններ կմտցնի արդյունաբերության միջճյուղային, ինչպես նաև արդյունաբերության ու գյուղատնտեսության բալանսային կապերի մեջ։ Այժմ արդեն ստեղծված են բոլոր անհրաժեշտ պայմանները, որպեսզի ծանր արդյունաբերությունը առավել բարձր տեմպերով զարգացնելու հետ միասին, բարձր տեմպերով զարգացվի նաև ժողովրդական սպառման առարկաների արտադրությունը։ Դեռ ավելին, ծանր արդյունաբերության ճյուղային այն կառուցվածքը, որը նախագծվում է գլխավոր հեռանկարային պլանով, ավելի քան երբևիցե կօժանդակի ընդլայնելու սպառման առարկաների արտադրությունը։

Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը մեր պարտիայի նոր



Ծրագրի անկյունաքարն է, մեր ժողովրդի սրբազան նպատակը։ Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը, ինչպես այդ նշեց ընկեր Ն. Ս. Խրուշչովը պարտիայի XXII համագումարում Ծրագրի նախագծի մասին տված իր զեկուցման մեջ, հնարավորություն կտա լուծելու հետևյալ կարևորագույն խնդիրները՝

— ստեղծել իրենց հզորությամբ չտեսնված արտադրողական ուժեր և աշխարհում գրավել առաջին տեղը բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի արտադրությամբ.

— ապահովել աշխարհում ամենաբարձր աշխատանքի արտադրողականության մակարդակ և այդ հիման վրա զարգացնել նյութական բարիքների արտադրությունը, ապահովել բնակչության ամենաբարձր կենսամակարդակ։ Բոլոր պայմանները ստեղծել հետագայում բաշխման սոցիալիստական սկզբունքից անցնելու բաշխման կոմունիստական սկզբունքին։ Այդ ամենի հիման վրա՝ սոցիալիստական արտադրահարաբերությունները աստիճանաբար վերափոխել կոմունիստականի և, վերջապես, շահել մրցությունը կապիտալիզմի հետ։

Այսպիսով, անցումը սոցիալիզմից կոմունիզմին կարող է իրականացվել միայն կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծմամբ։

Չի կարելի չնշել, որ կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման հարցի տեսական մշակումը, որ առաջ քաշեց մեր պարտիայի Կենտրոնական Կոմիտեն, պարտիայի XX համագումարի ժամանակաշրջանից սկսած, սերտորեն կապված է Ստալինի անձի պաշտամունքի վնասակար հետևանքները վերացնելու, մարքսիստական-լենինյան քաղաքատնտեսությունը նոր աստիճանի վրա բարձրացնելու հարցի հետ։

Հայտնի է, որ մինչև պարտիայի XX համագումարը սոցիալիզմից կոմունիզմին անցնելու հարցերը չէին կապվում կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման հետ, և վերջինս որպես այդպիսին քննության չէր էլ առնըվում Ի. Ստալինի «Սոցիալիզմի տնտեսական պրոբլեմները ՍՍՌՄ-ում» աշխատության մեջ։

Հակառակ մարքսիստական-լենինյան այն հարցադրման, որ անցումը կոմունիզմին, դա նախ և առաջ նշանակում է կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծում, Ի. Ստալինի «Սոցիալիզմի տնտեսական պրոբլեմները ՍՍՌՄ-ում» գրքում այն փոխարինված էր կոլտնտեսային սեփականությունը համաժողովրդական սեփականության վերածելու հարցով։ Սոցիալիզմից կոմունիզմին անցնելու համար գլխավոր տնտեսական խնդիրը համարելով կոլտնտեսային սեփականությունը համաժողովրդական սեփականության վերածելը և անտեսելով այդպիսի անցման համար հզոր արտադրողական ուժեր ստեղծելու հարցը, սխալ կերպով էին լուսաբանվում նաև բաշխման հարցերը։ Մասնավորապես նշվում էր, թե կոմունիզմին անցնելու համար բանվոր ծառայողների ռեալ աշխատավարձը պետք է բարձրացնել մինիմում կրկնակի չափով, եթե ոչ ավելի։ Բանվոր ծառայողների ռեալ աշխատավարձի մակարդակը «Սոցիալիզմի տնտեսական պրոբլեմները ՍՍՌՄ-ում» գրքի լույս տեսնելուց հետո գրեթե կրկնապատկվել է։ Սակայն աշխատավարձի այդ մակարդակը չի կարող բաշխման սոցիալիստական սկզբունքից բաշխման կոմունիստական սկզբունքին անցնելու հիմք ծառայել։ Դժվար չէ նկատել, որ այժմ իսկ սովետական բանվոր-ծառայողների և գյուղացիների եկամուտները, համեմատած 1950 թվա-

կանի հետ, արդեն ավելացել են 1,6 անգամ, 1965 թվականին կավելանան 2,3 անգամ. սակայն առանց կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման հնարավոր չի լինի անցնել բաշխման կոմունիստական սկզբունքին։ Կարևորն այստեղ միայն այն չէ, որ ռեալ աշխատավարձի կրկնակի ավելացմամբ կոմունիստական բաշխման անցնելը սխալ է, այլև այն, որ այդպիսի հարցադրումն ինքնըստինքյան անտեսում է սոցիալիզմից կոմունիզմին անցնելու ռեալ ուղիները ինչպես արտադրության, այնպես էլ բաշխման բնագավառում։ Եթե արտադրության բնագավառում սոցիալիզմից կոմունիզմին անցնելու խնդիրը «Սոցիալիզմի տնտեսական պրոբլեմները ՍՍՌՄ-ում» աշխատությունը չէր կապում կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման հետ, ապա բաշխման բնագավառում էլ անտեսվում էին հասարակական ֆոնդերի դերն ու նշանակությունը։ Ստացվում էր այնպես, որ ՍՍՌՄ-ը կոմունիզմին պետք է անցներ բացառապես անհատական սպառման ֆոնդի ավելացման ճանապարհով, առանց հասարակական սպառման ֆոնդերի։ Այդպիսի «կոմունիզմը» նման չէ այն կոմունիզմին, որի անցմանը ձեռնամուխ է եղել մեր ժողովուրդը, և որը տնտեսապես հիմնավորված է պարտիայի նոր Ծրագրում։

Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ապահովումն է, որ հնարավորություն կտա ստեղծել կոմունիստական առատություն և դրա հիման վրա՝ աշխատավարձի և հասարակական ֆոնդերի աճման միջոցով հասնել աշխարհում ամենաբարձր կենսամակարդակին։

Կոմունիզմի կառուցման Ծրագիրն անսահմանորեն ոգևորում և ստեղծագործ աշխատանքի է մղում միլիոնավոր սովետական մարդկանց։ Այն ուղիներ է նշում թռիչք կատարելու անհրաժեշտության թագավորությունից դեպի ազատության թագավորությունը։

***

Սոցիալիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը ՍՍՌՄ-ում ուղեկցվում է ազգային ռեսպուբլիկաների, այդ թվում նաև Հայկական ՍՍՌ-ի էկոնոմիկայի և կուլտուրայի աննախընթաց վերելքին։ Սոցիալիստական շինարարության անցած տարիներին արտադրողական ուժերի սոցիալիստական տեղաբաշխման, լենինյան ազգային քաղաքականության հետևողական կիրառման շնորհիվ Հայկական ՍՍՌ-ն իր ինդուստրիալ զարգացման մակարդակով դարձավ ՍՍՌՄ-ի վարչական տնտեսական կարևոր շրջաններից մեկը, օժտված ինդուստրիայի ժամանակակից ճյուղերով։

Սովետական իշխանության տարիներին այստեղ ստեղծվեցին ու զարգացան արդյունաբերության ժամանակակից հիմնական ճյուղերը։ Հայկական ՍՍՌ-ի էկոնոմիկայի (որպես ՍՍՌՄ սոցիալիստական էկոնոմիկայի բաղկացուցիչ մասի) զարգացումն ընթանում է աշխատանքի միութենական բաժանման հիման վրա։ Սոցիալիստական շինարարության անցած տարիներին արդյունաբերության և գյուղատնտեսության արտադրանքի շատ տեսակների արտադրության գծով մեկ շնչի հաշվով մեծագույն թռիչք կատարվեց հետամնացությունից դեպի պրոգրես։ Բավական է նշել, որ նախասովետական շրջանում արդյունաբերական արտադրանքի թողարկմամբ Հայաստանը Կենտրոնական Ռուսաստանից ետ էր մնում 3,2 անգամ, իսկ հարյուր բնակչին հասնող բանվորների քանակով ետ էր մնում 4,5 անգամ։ Սոցիալիզմի նյութատեխնիկական



բազայի ստեղծման ընթացքում փոխվեց այդ դրությունը։ 1958 թվականին Հայաստանում բանվորների տեսակարար կշիռը բնակչության ընդհանուր թվի մեջ, 1913 թվականի համեմատությամբ, ավելացավ 8 անգամ։ Ներկայումս արդյունաբերական արտադրանքի մի շարք կարևոր տեսակների գծով, ինչպես օրինակ, գունավոր մետալուրգիայի, մեքենաշինության, քիմիական, թեթև և սննդի արդյունաբերության որոշ արդյունքների՝ շնչին ընկնող չափերի տեսակետից Հայկական ՍՍՌ-ն գերազանցում է միութենական միջին ցուցանիշները։ Այդպես է վիճակը նաև գյուղատնտեսության այնպիսի ճյուղերի բնագավառում, ինչպիսիք են խաղողագործությունը և պտղաբուծությունը։

Ինչպես նշված է պարտիայի Ծրագրում, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման պրոցեսում հետզհետե աճելու է յուրաքանչյուր ռեսպուբլիկայի ավանդը կոմունիստական շինարարության ընդհանուր գործում։

Ռեսպուբլիկայի արդյունաբերության բոլոր ճյուղերի մեջ ամենից բարձր տեմպերով կաճեն մեքենաշինությունը և մետաղամշակումը և, համեմատած 1960 թվականի հետ, 1980 թվականին վերջիններիս արտադրանքը կավելանա 32 անգամ։ Այդ նշանակում է, որ արդյունաբերության այս ճյուղի աճման տեմպերը ռեսպուբլիկայի ամբողջ արդյունաբերության աճի միջին տեմպերից բարձր են 2,5 անգամ, իսկ ՍՍՌՄ-ի ամբողջ մեքենաշինական ու մետաղամշակման արդյունաբերության աճման տեմպերը գերազանցում են 3 անգամ։ Դրան համապատասխան արդյունաբերության այդ ճյուղերի արտադրանքի տեսակարար կշիռը 1980 թվականին կկազմի ռեսպուբլիկայի արդյունաբերության համախառն արտադրանքի 35 տոկոսը։ Մեքենաշինության մեջ է՛լ ավելի բարձր տեմպերով կզարգանան այն ճյուղերը, որոնք առավել աշխատատար են։ Այսպես, օրինակ, այն դեպքում, երբ մեքենաշինության և մետաղամշակման ճյուղերի արտադրանքը 20 տարում ավելանում է 32, սարքերի և ավտոմատացման միջոցների արտադրությունը՝ 85, մետաղ կտրող հաստոցներինը՝ 23,5 անգամ, էլեկտրատեխնիկական արդյունաբերության արտադրանքը կավելանա 20 անգամ։

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման առաջիկա քսան տարվա ընթացքում մեծապես կընդլայնվի Հայաստանի քիմիական արդյունաբերությունը։ Նրա արտադրանքը, այժմյան մակարդակի համեմատությամբ, կավելանա 25 անգամ։

Արդյունաբերության և ժողովրդական տնտեսության մնացած ճյուղերի փակատար էլեկտրիֆիկացման նպատակով էլեկտրաէներգիայի արտադրությունը Հայաստանում, 1960 թվականի համեմատությամբ, կավելանա 13 անգամ։ Քսանամյա պլանի կատարման ընթացքում ռեսպուբլիկայում կկառուցվեն չորս խոշոր ջերմաէլեկտրակայաններ, որոնք կթողարկեն արտադրվող էլեկտրաէներգիայի ամբողջ քանակության 90 տոկոսը, հետևապես հիդրոէլեկտրակայանները կթողարկեն արտադրվող էլեկտրաէներգիայի ընդամենը 10 տոկոսը։

Հետևողականորեն շարունակելով արտադրության միջոցների արտադրության առավել աճի փորձված կուրսը, քսանամյակի ընթացքում լայնորեն կզարգանա սպառման առարկաների արտադրությունը։ Այսպես, 1980 թվականին Հայաստանի թեթև արդյունաբերության ձեռնարկությունները կթողարկեն բամբակյա գործվածքներ 168,5 միլիոն մետր, մետաքսյա գործվածքներ՝ 120 միլիոն մետր, կոշիկ՝ 11,4 միլիոն զույգ և այլն։

Քննարկվող ժամանակամիջոցում Հայաստանի գյուղատնտեսական արտադրանքի ծավալը կավելանա 3,5 անգամ։ Արդյունաբերության գերազանց տեմպերով աճը գյուղատնտեսության համեմատությամբ էական փոփոխություններ կմտցնի արդյունաբերության և գյուղատնտեսության միջև ներկայումս գոյություն ունեցող համամասնություններում՝ հօգուտ արդյունաբերության։ Մեր ռեսպուբլիկան իր տնտեսական կառուցվածքով կդառնա ժամանակակից տեխնիկայով հագեցած ինդուստրիալ ռեսպուբլիկա։ Արդյունաբերությունը և, մասնավորապես, տեխնիկական առաջադիմության գլխավոր ուղղությունները որոշող ճյուղերի էլեկտրիֆիկացիան, մեքենաշինությունը և քիմիան կորոշեն ՍՍՌՄ-ում կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում մեր ռեսպուբլիկայի ակտիվ մասնակցությունը։

Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման երկու տասնամյակների ընթացքում խոշոր փոփոխության կենթարկվի Հայաստանի բնակչությունը, որի թիվը 1980 թվականի վերջին կհասնի 3500 հազարի, կամ, 1959 թվականի համեմատությամբ, կավելանա մոտ կրկնակի չափով։ Ժողովրդական տնտեսության մեջ զբաղված աշխատողների թիվը կհասնի 1,5 միլիոն մարդու, որից $^1/_3$-ը՝ արդյունաբերության և շինարարության մեջ։

Նյութական արտադրության ճյուղերում զբաղվածների թվի աճման և աշխատանքի արտադրողականության բարձրացման հիման վրա Հայկական ՍՍՌ-ի ազգային եկամուտը կավելանա 12 անգամ։ Եթե նկատի ունենանք, որ նույն ժամանակամիջոցում ռեսպուբլիկայի բնակչությունը մոտավորապես կրկնապատկվում է, ապա պարզ կդառնա, որ ազգային եկամտի արտադրությունը մեկ շնչի հաշվով կավելանա 6 անգամ։ Դա հնարավորություն կտա սոցիալիստական կուտակման հետ միասին մեծ չափերով ավելացնել աշխատավորների եկամուտները։ 1980 թվականին մեկ աշխատողի միջին աշխատավարձը, 1960 թվականի համեմատությամբ, կավելանա 3 անգամ, իսկ աշխատավարձի ֆոնդը՝ 13 անգամ։ Համապատասխանորեն կավելանան կոլտնտեսականների եկամուտները։ Բնակչության եկամուտների աճման և նրանց գնողունակ ֆոնդերի աճման շնորհիվ մանրածախ ապրանքաշրջանառությունը կավելանա 12,7 անգամ։ Բնակարանային շինարարության լայն ծավալման շնորհիվ 1980 թվականին բնակչության մեկ շնչին հասնող բնակելի տարածությունը կհասցվի 16,5 մետրի։ Ժողովրդի նյութական բարեկեցության աճը կուղեկցի նրա կուլտուրական մակարդակի հետագա վերելքին։

Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծմամբ սոցիալիստական արտադրահարաբերությունները կվերաճեն կոմունիստական արտադրահարաբերությունների։

---

# ՆՈՐ ՄԱՐԴՈՒ ՁԵՎԱՎՈՐՈՒՄՆ ԱՌԱՋՆԱՀԵՐԹ ԽՆԴԻՐ Է

Հ. ՂԱԶԱՐՅԱՆ

«...Սկզբունքային ծրագրեր կազմելիս... ամբողջ աշխարհի առջև բարձրացվում են նշանաձողեր, որոնցով մարդիկ դատում են պարտիական շարժման մակարդակի մասին»: Այս տողերը Կ. Մարքսը գրել է 1875 թվականին։

Այն ժամանակ կոմունիստական շարժումը դեռևս հեռու էր հասարակական զարգացման վճռական գործոն լինելուց. կոմունիստական ծրագրերի շուրջը համախմբվող մարդկանց թիվը չնչին էր։ Ավելին, երկինք գրոհող կոմունարների արյունով արբած բուրժուաները տոնում էին իրենց հաղթանակը, իսկ երկաթե կանցլեր Բիսմարկը սպառնում էր բուրժուական օրենքի ուժով վերացնել սոցիալիզմը։

Պատմությունը բիսմարկների կամքին չենթարկվեց. «Կոմունիզմը, որը մի ժամանակ սոսկ երազանք էր, դարձավ արդիականության մեծագույն ուժը» (ՍՄԿՊ Ծրագիր)։

Կոմունիզմի կառուցումը, որին ձեռնամուխ է եղել սովետական ժողովուրդը, տնտեսական, քաղաքական և կուլտուրական վիթխարի խնդիրների կենսագործման հետ միաժամանակ ամենակազմակերպված հասարակարգի, ամենամարդկային հարաբերությունների համար սովետական մարդկանց նախապատրաստելու, դաստիարակելու պրոցես է։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXII համագումարի ընդունած պարտիայի նոր Ծրագրում, որում բարձրացվել են նշանաձողեր, որոնցով ամբողջ աշխարհի մարդիկ դատում են ոչ միայն մեր պարտիայի կատարած տնտեսական, քաղաքական ու կուլտուրական աշխատանքի մակարդակի մասին, այլև նոր մարդու դաստիարակության գործում ձեռք բերված նվաճումների մակարդակի մասին, միանգամայն բնական է, որ մեծ տեղ է հատկացված աշխատավորների կոմունիստական գիտակցականության դաստիարակման հարցերին։ Կոմունիզմի ծավալուն կառուցումը աշխատավորների գիտակցականության բարձրացման ասպարեզում նոր խնդիրներ է հարուցել։ Ներկայումս առաջնակարգ նշանակություն են ստացել հասարակության բոլոր աշխատավորների գիտական աշխարհայացքի ձևավորումը, կոմունիստական բարոյականության լիակատար հաստատումը, պրոլետարական ինտերնացիոնալիզմի և սոցիալիստական հայրենասիրության զարգացումը, անհատի բազմակողմանի ու ներդաշնակ զարգացումը, մարդկանց գիտակցության մեջ և վարքագծում կապիտալիզմի մնացուկների հաղթահարումը։ Առանց այս խնդիրների լուծման, հնարավոր չէ ապահովել կոմունիզմի կառուցումը մեր երկրում։

***

Հասարակության պատմության զարգացման մեջ շատ պարտիաներ ու անհատներ են հանդես եկել մարդկանց գիտակցականությունը բարձրացնելու ծրագրերով: Որպես գիսաստղեր հորիզոնի վրա փայլել ու անցել են ուտոպիստ-կոմունիստները: Նրանց ծրագրերը երազներ էին, երազ էլ մնացին: Մի ժամանակ բուրժուազիայի իդեոլոգներն էին հանդես գալիս գիտությունը ժողովրդի սեփականություն դարձնելու պահանջով: Դիդրոն թագավորից պահանջում էր, որ նա լռեցնի հոգևորականներին, որպեսզի փիլիսոփաները լուսավորեն ժողովրդին: Ժամանակները փոխվել են: Փիլիսոփաների համար ասպարեզ պահանջող բուրժուազիան դարձել է պատմության արգելակ: Հիմա բուրժուական դատարանը լռեցնում է բանականության դիրքերից ատոմային պատերազմի դեմ հանդես եկող փիլիսոփա Ռասելին, որպեսզի գործեն գեներալներն ու խավարամոլները:

Ինչպես մյուս բնագավառներում, այնպես էլ գիտության ու լուսավորության ասպարեզում կապիտալիստական կարգերը վաղուց են սպառել իրենց: Ժողովրդին լուսավորելու, գիտությունը նրա սեփականությունը դարձնելու նախկինում եղած բոլոր ծրագրերը ձախողվել են, որովհետև դրանք հասարակական զարգացման ներքին անհրաժեշտությունից չէին բխում, որովհետև իշխող բուրժուազիայի տիրապետությունը հենվում է մասսաների տգիտության և մոլորության վրա:

Շահագործողական կարգերն ավելի շատ շահագրգռված են մասսաներին տգիտության մեջ պահելու, քան նրանց կրթելու գործում: Իսկ եթե կապիտալիզմն այդ ասպարեզում մասսաներին որոշ բան տվեց, ապա դա, ինչպես Մարքսն է նկատել, թելադրվում էր բուրժուական արտադրության շահերով: Աշխատավոր մասսաների կուլտուրական ու գիտական մակարդակի բարձրացման հարցում սնանկ դուրս եկան նաև պրոլետարական ռևոլյուցիայի թշնամի սոցիալ-ռեֆորմիստները: Կապիտալիզմի պայմաններում աշխատավոր մասսաների կուլտուրական, գիտական մակարդակը բարձրացնելու նրանց տեսակետը պատմության զարգացման ընթացքով մերժվեց: Հայտնի է, թե Վ. Ի. Լենինը իր ժամանակ ինչպիսի՜ սրությամբ է քննադատել բանվոր դասակարգի այդ կեղծ առաջնորդներին, որոնք օբյեկտիվորեն հավերժացնում են մասսաների տգիտությունը:

Միակ հասարակարգը, որ հետևողականորեն շահագրգռված է իր բոլոր անդամների բարձր գիտակցականությամբ, դա կոմունիստական հասարակարգն է, միակ պարտիան, որ իսկապես ձգտում է աշխատավորներին վերջնականապես ազատել տգիտության շղթաներից և նրանց զինել գիտական աշխարհայացքով, դա կոմունիստների պարտիան է: Միակ հասարակարգը, որ անհրաժեշտ նյութական բազա է ստեղծում մարդկանց գիտական աշխարհայացքով զինելու համար, դա կոմունիստական հասարակարգն է:

Վրա է հասել այն դարաշրջանը, երբ մարդկանց հասարակական կեցությունը դարձել է նրանց «սեփական ազատ գործը» (Էնգելս), երբ պատմության վրա տիրապետող օբյեկտիվ, խորթ ուժերը աստիճանաբար մտնում են մարդու վերահսկողության տակ: Տարերայնությունն իսպառ դուրս է մղվում կոմունիզմ կառուցող սովետական ժողովրդի պրակտիկայից: Կոմունիստական շինարարության ծրագրի կենսագործումը, կոմունիզմի նյութա-տեխնիկական



բազայի ստեղծումը, ՍՍՌՄ տնտեսական հզորության հետագա ամրապնդումը, նյութական բարիքների առատության հասնելը մեծապես կախված է աշխատավորների գիտակցականության բարձրացումից:

Ելնելով կոմունիստական շինարարության ներկա էտապում մասսաների գիտակցականության դերի աճից, պարտիան իր նոր Ծրագրում խնդիր է դնում ամբողջ բնակչությանը դաստիարակել գիտական կոմունիզմի ոգով, ձգտելով, որ աշխատավորները տիրապետեն մարքս-լենինյան ուսմունքի գաղափարներին, խորապես ըմբռնեն համաշխարհային զարգացման ընթացքն ու հեռանկարները, ճիշտ հասկանան երկրի ներքին ու միջազգային ասպարեզի իրադարձությունները, կյանքը գիտակցաբար կառուցեն կոմունիստորեն:

Հասարակական զարգացման օրենքները ճանաչելու և դրա հիման վրա հասարակական կյանքի բոլոր բնագավառների խելացի պլանավորման պահանջը անհրաժեշտորեն առաջադրել է աշխատավոր մասսաների գիտական աշխարհայացքի ձևավորման խնդիրը:

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի նոր Ծրագրում առաջ քաշված՝ բնակչության գիտական աշխարհայացքի ձևավորման խնդիրը առաջին անգամ է դրվում: Հարց է ծագում՝ ինչո՞ւ: Մի՞թե մեր պարտիային միայն նոր է հետաքրքրում բնակչության գիտական աշխարհայացքի ձևավորման հարցը: Իհարկե, ոչ: Ամբողջ բանն այն է, որ մեր պարտիան հետևողական ռեալիստների պարտիա է, որ «մեր պարտիան, որպես գիտական կոմունիզմի պարտիա, կոմունիստական շինարարության խնդիրները առաջ է քաշում և լուծում դրանց նախապատրաստման և անհրաժեշտ պայմանների հասունացման համեմատ» (Ն. Ս. Խրուշչով): Բնակչության գիտական աշխարհայացքի խնդիրն այս տեսակետից բացառություն չի կազմում: Այնքան ժամանակ, որքան այդ խնդիրը չէր հասունացել և դրա լուծման համար անհրաժեշտ պայմաններ չկային, մեր պարտիան չէր կարող այն առաջ քաշել և ծրագրային խնդիր դարձնել: Պարտիան առաջնորդվում է մարքսիստական այն ըմբռնումով, որ խնդիրը ծագում է այն ժամանակ, երբ նրա լուծման պայմանները քիչ թե շատ հասունանում են:

Աշխատավոր մասսաներին գիտական կոմունիզմի ոգով դաստիարակելու գործում վճռական նշանակություն ունեցան շահագործողական կարգերի տապալումը, մեր երկրի ինդուստրացումն ու գյուղատնտեսության կոոպերացումը: Կոմունիստական պարտիայի ու սովետական պետության սիստեմատիկ դաստիարակչական աշխատանքը տվեց իր արդյունքները. համատարած անգրագիտության երկիրը դարձավ համատարած գրագիտության երկիր: Սովետական ժողովրդի ճնշող մեծամասնությունը հրաժեշտ տվեց կրոնին և իր գաղափարական ու գիտական ընդհանուր մակարդակով աշխարհում դուրս եկավ առաջին տեղը:

Գիտական աշխարհայացքի ձևավորման լավագույն դպրոցը ստեղծագործական աշխատանքն է: Միայն ստեղծագործական աշխատանքի մեջ, միայն ժամանակակից գիտության և տեխնիկայի հիմունքների հետ աշխատավոր մասսաների հաղորդակից լինելու միջոցով է հնարավոր աշխատավոր մասսաների գիտական աշխարհայացքի ձևավորումը, որի համար վճռական նշանակություն ունի մարքսիստական փիլիսոփայության, քաղաքատնտեսության և գիտական կոմունիզմի սկզբունքների պրոպագանդումը:

Բնակչության գիտական աշխարհայացքի ձևավորումը սկսվում է դպրո-

ցում։ Դպրոցը այն կարևոր օղակն է, որով պարտադիր կերպով անցնում են սովետական հասարակության բոլոր անդամները։ Դպրոցի ու կրթության բնագավառում Սովետական կառավարության և Կոմունիստական պարտիայի վերջին տարիների ձեռնարկումներն է՛լ ավելի մեծացրին դպրոցի դերը մարդկանց գիտական աշխարհայացքի ձևավորման գործում, կյանքի հետ նրա սերտ ընթացքի ռեալ պայմաններ ստեղծեցին։ ՍՄԿՊ նոր Ծրագրի համաձայն «Միջնակարգ կրթությունը պետք է ապահովի գիտությունների հիմունքների կայուն գիտելիքներ, կոմունիստական աշխարհայացքի սկզբունքների յուրացում», իսկ ինչ վերաբերում է բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական կրթությանը, ապա այն «կոչված է պատրաստելու տեսական ու քաղաքական լայն մտահորիզոն ունեցող բարձրորակ մասնագետներ»:

Աշխատավոր մասսաների գիտական աշխարհայացքի ձևավորման հարցում լուրջ խնդիրներ է դրված աթեիստական դաստիարակության առաջ։ Կրոնը որպես սոցիալական չարիք մեր երկրում հիմնականում հաղթահարված է։ Բայց դեռ քիչ չեն այնպիսի մարդիկ, որոնք գերի են կրոնական պատկերացումներին։ Իսկ մի՞թե հարկ կա բացատրելու, որ կրոնը գիտության ու գիտական աշխարհայացքի մեծագույն թշնամին է։ Բնակչության գիտական աշխարհայացքի ձևավորումը և նրա առանձին անդամների գլխից կրոնական պատկերացումները արմատախիլ անելը միասնական պրոցես է։

Մի ժամանակ բուրժուազիան էլ էր հանդես գալիս կրոնի դեմ և գտնում, որ մասսաների աթեիստական դաստիարակությունը կարևոր գործ է։ Բայց այս հարցում էլ բուրժուազիան հետևողական չգտնվեց և չէր էլ կարող գտնվել հասարակության մեջ իր բռնած դիրքով։ Չէ՞ որ կրոնից հրաժարվել, դա նշանակում էր հասարակական զարգացման վերաբերյալ զարգացնել հետևողական գիտական տեսակետ։ Քանի դեռ բուրժուազիան պայքարում էր ֆեոդալական պետականության դեմ, նա շահագրգռված էր մասսաների աթեիստական դաստիարակությամբ։ Բայց, երբ ինքը, բուրժուազիան դարձավ իշխող դասակարգ, նրան կրոնը պետք է իր տիրապետությունը հավերժացնելու համար։ Ուստի պատահական չէ, որ ժամանակակից կապիտալիստական երկրներում կապիտալիստների ու եկեղեցու դաշինքն ավելի է ամրապնդվում։

Միակ հասարակարգը, որ ի վիճակի է ապահովել իր բոլոր անդամների հետևողական աթեիստական դաստիարակությունը, դա կոմունիստական հասարակարգն է, որը երկրային կյանքում մարդկանց համար ապահովելով երջանկություն, մարդկանց գիտակցության միջից արմատախիլ է անում երկնային կյանքի վերաբերյալ կրոնական առասպելները։

Գիտական աշխարհայացքը նոր, կոմունիստական մարդու միայն մի հատկանիշն է. այն դեռևս բավական չէ լիովին կոմունիստական լինելու համար։ Կոմունիզմի մարդու հատկանիշներից մեկն էլ աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունք ունենալն է։ Այդ վերաբերմունքի սաղմերն առաջացել են դեռևս ռևոլյուցիայի առաջին տարիներին։ Քայքայված տնտեսությունը վերականգնելու նպատակով կազմակերպվող կոմունիստական շաբաթօրյակներն ապագա կոմունիստական աշխատանքի ծիլերն էին։ Այդ ծիլերն աճեցնելու համար Կոմունիստական պարտիան և Սովետական պետությունը ստեղծեցին բոլոր պայմանները։ Շահագործման վերացումը, կապիտալիզմի ծնած մեծագույն սոցիալական չարիքներից մեկի՝ գործազրկության լիկվիդացումը, ըստ աշխատանքի բաշխման սոցիալիստական սկզբունքի հետևողական կիրառումը,



հանրային օգտագործման ֆոնդերի զարգացումը, հասարակության բոլոր աշխատունակ անդամներին հանրօգուտ աշխատանքի մեջ ներգրավելը, աշխատավոր մասսաների կենսամակարդակի անընդհատ աճը, Կոմունիստական պարտիայի դաստիարակչական աշխատանքը՝ մասսաներին աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի ոգով դաստիարակելու գրավականն են։

Մեզ մոտ բոլոր մարդիկ չեն, որ բարեխիղճ կերպով հանրօգուտ աշխատանքով են զբաղվում։ Դեռ քիչ չեն այնպիսի մարդիկ, որոնք անձնական բարօրության համար կատարվող «աշխատանքը» գերադասում են հանրօգուտ աշխատանքից։ Հանրօգուտ աշխատանքն է մասսաների մեջ աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի պատվաստման ուղին։ Ապագա հասարակության մեջ հանրօգուտ աշխատանքն արդեն կդառնա կենսական պահանջմունք և ներդաշնակություն կստեղծի հասարակության և անձնական շահերի միջև, վերջնականապես կանհետանան անցյալից մեզ ժառանգություն մնացած էգոիզմի հետքերը։ Մարդու էությունն իր բոլոր կողմերով կդրսևորվի հանրօգուտ, կոլեկտիվ աշխատանքի մեջ։ «Կոմունիզմը և աշխատանքը անբաժանելի են: «Ով չի աշխատում, նա չի ուտում» մեծ սկզբունքը,— ասել է Ն. Ս. Խրուշչովը,— կգործի նաև կոմունիզմի օրոք, իրոք կդառնա սրբազան սկզբունք բոլորի համար: Մարդը գեղեցիկ է և փառավոր իր աշխատանքով, իր գործերով, այն բանով, ինչ նա ստեղծել է, ինչ կատարել: Աշխատանքի մեջ են որոշվում մարդկանց ընդունակությունները և տաղանդները, մարդու հանճարը, աշխատանքի մեջ է մարդկության անմահությունը»:

Նրանք, ովքեր խուսափում են հանրօգուտ աշխատանքից, պետք է արժանանան կոմունիզմ կառուցողների հակահարվածին։ «Ծույլերը և անբարեխիղճ մարդիկ մեր հաղթանակի թշնամիներն են»— գրել է մեր պարտիայի հնագույն գործիչ Մ. Ս. Օլմինսկին։ «Յուրաքանչյուր աշխատունակ մարդ պետք է մասնակցի այն միջոցների ստեղծմանը, որոնք անհրաժեշտ են նրա կյանքի ու գործունեության համար, հասարակության բարօրության համար։ Այն մարդը, որը հասարակությունից որևէ բարիք ստանալով չի մասնակցում աշխատանքի, կլինի ձրիակեր և ուրիշի հաշվին ապրող»,— ասված է ՍՄԿՊ Ծրագրում։

Վերջին տարիների ընթացքում աշխատանքային դաստիարակության ասպարեզում պարտիան հասել է մեծ հաջողությունների։ Այդ մասին է վկայում կոմունիստական աշխատանքի բազմահազար կոլեկտիվների առկայությունը։ Մասսաների ընդերքում ծնունդ առած կոմունիստական աշխատանքի համար ծավալված շարժումը կարճ ժամանակամիջոցում լայն տարածում ստացավ։ Եթե սկզբում կոմունիստական աշխատանքի համար պայքարը համակել էր առանձին բրիգադաներ ու ցեխեր, ապա այժմ ամբողջ գործարաններ ու ֆաբրիկաներ են կոմունիստական աշխատանքի կոլեկտիվներ դարձել։ Կոմունիստական աշխատանքի համար ծավալված շարժումը նորանոր արտահայտություններ է ստանում։ Պարտիայի XXII համագումարում Վալենտինա Գագանովան պատմեց բանվորուհի Պուշկովայի մասին, որը գործարանային ադմինիստրացիային է դիմել իր աշխատանքային նորման բարձրացնելու պահանջով։ Ի՞նչն է դրդում այդ շարքային բանվորուհուն նման քայլի, եթե ոչ Հայրենիքին ավելի շատ օգտակար լինելու ձգտումը։ Նման արարքի ընդունակ է միայն այն հասարակարգի մարդը, որտեղ առկա է անձնական և հասարակական շահերի իսկական միասնությունը։ Միայն նա կարող է Պուշկովայի պես վարվել։

ով խորապես համոզված է, որ հասարակության համար կատարածը միաժամանակ անձնականի համար է։

Շահագործողական հասարակարգերում աշխատանքը մարդու ուսերին ծանր բեռ է, որովհետև աշխատավորը ստանում է իր աշխատանքի արդյունքի չնչին մասը, իսկ առյուծի բաժինը ստանում է շահագործողը։ Սոցիալիզմի հաղթանակը՝ արտադրության միջոցների նկատմամբ մասնավոր կապիտալիստական սեփականության վերացումը, շահագործողական դասակարգերի ոչնչացումը հիմնովին փոխեցին աշխատանքի բնույթը։ Այն դադարեց ծանր բեռ լինելուց, աշխատանքը դարձավ պատվի ու փառքի գործ։ Սոցիալիստական հասարակության մեջ ամենահարգված մարդիկ հանրօգուտ աշխատանքի մարդիկ են։ Սոցիալիստական արտադրության հերոսների անունները փառաբանվում են ամբողջ երկրում։ Շարքային աշխատողներ Նիկոլայ Մամայի, Վալենտինա Գագանովայի և հազարավոր ուրիշ անուններ հայտնի են մեր անծայրածիր երկրի բոլոր անկյուններում։

Մեր երկրի փորձը ցույց տվեց, որ հանրօգուտ աշխատանքը ոչ միայն բարիքների աղբյուր է, այլև մարդկանց դաստիարակության լավագույն դպրոց։ Հանրօգուտ աշխատանքը հիմնովին փոխեց մեր երկրի բանվոր դասակարգի և աշխատավոր գյուղացիության կերպարը, նրանց դարձրեց ամենամարդկային հատկություններով օժտված մարդիկ։

Սոցիալիզմից կոմունիզմին անցնելու շրջանում մեր հասարակության կյանքում առանձնահատուկ նշանակություն է ստացել կոմունիստական բարոյականության հաստատման խնդիրը։ Դրանով է բացատրվում այն հանգամանքը, որ պարտիայի նոր Ծրագրում մեծ տեղ է հատկացված սովետական մարդու բարոյական կերպարի հետագա կատարելագործմանը։

Գիտական կոմունիզմի հիմնադիրներն ամբողջ աշխարհի պրոլետարիատի առաջին ծրագրային փաստաթղթում՝ «Կոմունիստական պարտիայի մանիֆեստում» ջախջախիչ քննադատության ենթարկեցին բուրժուազիայի իդեոլոգներին, որոնք կապիտալիզմի գայլային բարոյականությունը մատուցում էին որպես համամարդկային բարոյականություն, իսկական բարոյականության ձգտող կոմունիստներին համարելով բարոյականությունից զուրկ մարդիկ։

Պատմության հետագա ընթացքը՝ ռեակցիայի մարտիկների նկատմամբ կատարված հաշվեհարդարները, մոնոպոլիստական բուրժուազիայի սանձազերծած երկու համաշխարհային պատերազմները, հիտլերյան մահվան ճամբարները, Հիրոսիմայի ու Նագասակիի ողբերգությունը, գաղութային ժողովուրդների անհամար տառապանքները աշխարհի ժողովուրդների առաջ մերկացրին բուրժուական բարոյականության իսկական էությունը։ Իսկ այժմ, բուրժուական բարոյագետները իմպերիալիզմի անբարոյական, հակամարդկային արարքները ուզում են արդարացնել «ավելի լավ է ատոմային մահ, քան կոմունիզմ» նշանաբանով։

Հակառակ դրան, շահագործման ու ճնշման դեմ մղվող ավելի քան հարյուրամյա պայքարում կոմունիստները ապացուցել են, որ իրենք են իսկական մարդկային բարոյականության կրողները։ Ինչպես նշված է ՍՄԿՊ Ծրագրում, «Մերժելով շահագործողների դասակարգային բարոյականությունը, կոմունիստները հին աշխարհի էգոիստական այլասերված հայացքներին ու բարքերին հակադրում են կոմունիստական բարոյականությունը՝ ամենաարդար և ազնիվ



բարոյականությունը, որն արտահայտում է ամբողջ աշխատավոր մարդկության շահերն ու իդեալները»։

Պարտիայի Ծրագրում շարադրված կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսը դրա լավագույն արտահայտությունն է։ Առաջին անգամ մարդկային հասարակության մեջ ռեալ հող է ստեղծվել իսկական մարդկային բարոյականության տիրապետության համար, այնպիսի բարոյականության համար, որը «ներառնում է համամարդկային այն հիմնական բարոյական նորմերը, որ ժողովրդական մասսաները մշակել են հազարամյակների ընթացքում սոցիալական ճնշման ու բարոյական արատների դեմ մղած պայքարում»։

Դասակարգային բարոյականության հասարակությանը փոխարինելու է գալիս կոմունիստական բարոյականության հասարակությունը, երբ մարդը մարդուն բարեկամ է, ընկեր և եղբայր։

Բուրժուազիան իր ժամանակին նույնպես հանդես էր գալիս եղբայրության լոզունգով, բայց կապիտալիստական պրակտիկան ցույց տվեց, որ վերջին շահագործողական կարգին շատ ավելի սազական է «մարդը մարդուն գայլ է» նշանաբանը, քան եղբայրությունը։ Կապիտալիզմը մարդկանց ոչ թե եղբայրացրեց, այլ թշնամացրեց։

Սոցիալիզմի ավելի քան քառասնամյա փորձը ցույց տվեց, որ միակ հասարակարգը, որ ի վիճակի է ստեղծելու իսկական եղբայրություն, բարեկամություն և ընկերություն, դա արտադրության միջոցների նկատմամբ հանրային սեփականության վրա խարսխված կոմունիստական հասարակական-տնտեսական ֆորմացիան է։

Այժմ որպես մարդկայնության մարմնացում բարձրացել է բարոյական բարձր հատկություններով օժտված սովետական մարդը, որը խոսքի ու գործի, համոզմունքի ու արարքի ներդաշնակություն է։ Եթե բուրժուական բարոյականության նորմերով ղեկավարվողի համար բնորոշը՝ անասունի նման կռնակով դեպի մարդու տառապանքը շրջվելը և իր կաշվի մասին հոգալն է, ապա կոմունիստական բարոյականությամբ ղեկավարվողի՝ սովետական մարդու համար բնորոշը՝ մարդկանց մասին հոգալն է, դժվարության առաջ չընկրկելը, դժբախտության մեջ ընկածին օգնելը։ Սովետական նոր մարդը Կոմունիստական պարտիայի անխոնջ պայքարի ու խիզախումների մեծագույն նվաճումն է։

Միայն ցավով կարելի է նշել, որ կոմունիզմ կառուցող մարդկանց մեծ ընտանիքում դեռևս կան մարդիկ, որոնք իրենց բարոյական կերպարով, իրենց արարքներով ու համոզմունքներով չեն քայլում ժամանակին համընթաց, չեն ուզում հրաժեշտ տալ բուրժուական գայլային բարոյականությանը, կեղծում են, խաբում, գողում, անուշադիր են մարդու նկատմամբ, ապրում ու աշխատում են իրենց գրպանի համար։ Այդպիսիների թիվն ավելի ու ավելի նվազում է, բայց դրա հետ միասին դրանք էլ ավելի անհանդուրժելի են դառնում մեր իրականության համար։

Ներկա էտապում Կոմունիստական պարտիայի և աշխարհում առաջին իսկապես համաժողովրդական պետության դաստիարակչական աշխատանքը, հասարակական կարծիքը, սովետական ամբողջ հասարակության ազդեցությունն այն գլխավոր ուժերն են, որ ի վիճակի են սանձահարելու կոմունիստական բարոյականության նորմերը ոտնահարողներին, պորտաբույծներին, խուլիգաններին, հարբեցողներին։

Մարդկանց մեջ բարոյական բարձր հատկությունների դաստիարակումն ու զարգացումը, նրանց գիտակցությունից ու վարքից կապիտալիզմի մնացուկները հաղթահարելու գործում նշանակալի դեր ունեն սովետական գրականությունն ու արվեստը։ Արվեստը մեծ ուժ է և այն ամբողջությամբ պետք է ի սպաս դրվի նոր մարդու ձևավորման գործին։

***

Պարտիան միշտ մեծ նշանակություն է տվել մասսաներին ինտերնացիոնալիզմի և սոցիալիստական հայրենասիրության ոգով դաստիարակելուն։ Ինտերնացիոնալիզմը և հայրենասիրությունը սովետական մարդու կոմունիստական գիտակցության բաղկացուցիչ տարրերն են։ Կար ժամանակ, որ պրոլետարիատը զուրկ էր հայրենիքից, հայրենիքը խորթ մայր էր աշխատավոր մարդու համար. այն հարուստների պերճ արոտավայրն էր։ Պրոլետարիատը, զինված մարքսիզմ-լենինիզմի հզոր զենքով, աշխարհի մեկ վեցերորդ մասում տապալեց շահագործողների լուծը։ Համայն աշխարհի պրոլետարիատը հանձին Սովետական Ռեսպուբլիկաների Միության ձեռք բերեց իր առաջին ու մեծ Հայրենիքը։ Այդ ժամանակից ի վեր պրոլետարիատը դադարեց անհայրենիք լինելուց։ Եվ նա խսկապես գիտակցելով իր նոր հայրենիքի նշանակությունը՝ բոլոր ուժերով պաշտպանեց այն։ Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի ստեղծումը պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքի հաղթանակն էր համաշխարհային մասշտաբով։

Սոցիալիզմից կոմունիզմին անցնելու շրջանում մասսաներին ինտերնացիոնալիզմի ու հայրենասիրության ոգով դաստիարակելը նոր, առավել բարձր նշանակություն է ստացել՝ կապված սոցիալիզմի համաշխարհային սիստեմի զարգացման հետ։ Այս տեսակետից առավել անհանդուրժելի է, երբ որոշ մարդկանց մոտ նկատվում են ազգային սնապարծության, սահմանափակվածության, նացիոնալիզմի և կոսմոպոլիտիզմի ռեցիդիվները։ Սկզբունքային նշանակություն ունի ՍՄԿՊ Ծրագրում այն դրույթը, որ «Պարտիան առաջիկայում ևս հաստատակամորեն կպայքարի բուրժուական նացիոնալիզմի, ռասիզմի և կոսմոպոլիտիզմի ռեակցիոն գաղափարախոսության դեմ»։

Կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում սկզբունքային նշանակություն է ստացել մարդկանց գիտակցության մեջ և վարքում կապիտալիզմի մնացուկների հաղթահարումը։ «Մարդկանց գիտակցության մեջ կապիտալիզմի մնացուկների դեմ մղվող պայքարը,— ասաց Ն. Ս. Խրուշչովը ՍՄԿՊ XXII համագումարին տված հաշվետու զեկուցման մեջ,— միլիոնավոր մարդկանց դարերով մշակված սովորույթների ու բարքերի փոխելը, որը սկսել է մեր ռևոլյուցիան, երկար ժամանակի գործ է, և հասարակ գործ չէ։ Անցյալի մնացուկները սարսափելի ուժ է, որը որպես մղձավանջ ծանրացել է ապրողների մտքի վրա։ Միլիոնավոր մարդկանց գիտակցության մեջ և վարքում դրանք ծնած տնտեսական պայմանները չքանալուց հետո դեռ երկար ժամանակ մնում են»։

Սոցիալիզմի ժամանակ մարդկանց գիտակցության մեջ և վարքում կապիտալիզմի մնացուկների առկայությունը չի կարելի դիտել որպես պատահական երևույթ։ Պատահական չլինելը դեռևս չի ենթադրում անհրաժեշտ լինելն ընդունել և սպասել, թե երբ պատմական զարգացումը ավտոմատիկորեն մարդկանց գիտակցությունից դուրս կմղի կապիտալիզմի մնացուկները, և մարդիկ կազնվանան։ Կոմունիստական պարտիան միշտ էլ ընդգծել է նման մտայնության վտանգավորությունը։



Կոմունիստական գիտակցականության պատվաստման խնդիրը հնարավոր չէ կենսագործել առանց անողոք պայքար մղելու նրանց դեմ, որոնց գիտակցության մեջ դեռևս առկա են անիծյալ անցյալի մնացուկները և որոնք իրենց վարքով հեռու են կառուցվող կոմունիստական հասարակության անդամներ կոչվելուց։ Կապիտալիզմի մնացուկների դեմ մղվող պայքարը սերտորեն կապված է բուրժուական գաղափարախոսության հետքերի մերկացման հետ։

ՍՄԿՊ նոր Ծրագրում պարզ ու հստակ նշված են բուրժուական գաղափարախոսության ու բարոյականության դրսևորումների, մանավանդ սեփականատիրական հոգեբանության մնացուկների, սնոտիապաշտության և նախապաշարմունքների դեմ մղվող պայքարի հիմնական միջոցները։ Պարտիայի Ծրագրում ասվում է. «Անցյալի մնացուկների, անհատապաշտության ու էգոիզմի դրսևորումների դեմ մղվող պայքարում մեծ դեր է պատկանում հասարակայնությանը, հասարակական կարծիքի ներգործությանը, քննադատության ու ինքնաքննադատության զարգացմանը»։ Այս միջոցները մեր պարտիայի փորձված զենքերն են և կասկած չկա, որ դրանց հաջող կիրառմամբ կհաղթահարվեն անցյալի մնացուկները մարդկանց հոգեբանության մեջ և կոմունիզմի կառուցման պրոցեսում կկատարելագործվի սովետական մարդը։

Բուրժուական գաղափարախոսության մերկացումը մի այլ կողմ էլ ունի։ Հայտնի է, որ որոշ վայ-տեսաբաններ աշխատում են պետությունների խաղաղ գոյակցության սկզբունքը տարածել հակամարտ գաղափարախոսությունների վրա։ Պարտիան միշտ դատապարտել է նման մտայնությունը և հետևողականորեն անցկացրել սկզբունքային իդեոլոգիական պայքարի գիծ, ռեակցիոն բուրժուական գաղափարախոսությանը հակադրելով գիտական, մարքս-լենինյան գաղափարախոսությունը։

ՍՄԿՊ Ծրագրում կոմունիստական գիտակցականության բնագավառում առաջ քաշված խնդիրների լուծման գործում ղեկավար դերը պատկանում է Սովետական Միության Կոմունիստական պարտիային՝ մեր ժողովրդի ամենափորձված դաստիարակին։ Մեր պարտիան իր որոշումներով ու դրանք կենսագործելու իր վճռականությամբ ու հետևողականությամբ օրինակ է հանդիսանում ամբողջ հասարակության համար։ Պարտիան մասսաների դաստիարակության գործն ապահովելու համար հմուտ կերպով օգտվում է իր ամենասուր զենքից՝ սովետական ու պարտիական մամուլից։ Մեր մամուլն աշխարհում ամենապրոգրեսիվն է, ամենաօբյեկտիվը։ Մեր մամուլի համար կոմունիստական ճշմարտությունը վեր է ամեն բանից և հենց այդ ճշմարտացիության մեջ է նրա մեծագույն դաստիարակչական ուժը։

Մեր օրերում սովետական մամուլի ամենահիմնական խնդիրը, ինչպես նշված է պարտիայի Ծրագրում, նոր մարդու ձևավորման հարցն է, այնպիսի մարդու, որն ամենուրեք և ամեն տեղ, ամեն մի պոստում, ամեն մի գործում լինի մարտիկ ու ռևոլյուցիոներ, պարզորեն գիտակցի, որ ծնվել է սոցիալիստական հասարակության մեջ և ապրում է ոչ միայն իր համար, այլ, ամենից առաջ, հասարակության համար, որը գնում է դեպի մեծ նպատակ և պետք է իր բոլոր գործերը, մտքերն ու արարքները ենթարկի այդ մեծ նպատակին։ Իր նշանակությամբ սովետական մամուլից հետ չի մնում սովետական գիրքը, աշ-

խարհում ամենագաղափարական գիրքը։ Կոմունիստական պարտիայի քաղաքականության շնորհիվ գիրքը մեզ մոտ ծառայում է իր հիմնական նպատակին՝ մարդու դաստիարակության գործին։ Աշխարհի ոչ մի երկրում գիրքն այնքան թանկ չի գնահատվում և էժան վաճառվում, որքան սովետական երկրում։ Աշխատավոր մասսաների կոմունիստական գիտակցականության գործում մեծ է կինոյի, ռադիոյի և հեռուստատեսության դերը։

Աշխատավոր բնակչության կոմունիստական գիտակցականության ձևավորման գործում պարտիայի մերձավոր օգնականները սովետական արհմիություններն են, Լենինի արտահայտությամբ կոմունիզմի դպրոցը, իսկ երիտասարդության դաստիարակության գործում՝ կոմերիտմիությունը։ ՍՄԿՊ Ծրագրում նախատեսվում է այդ կազմակերպությունների գործունեության հետագա լայն ծավալում։ Մասսաների կոմունիստական գիտակցականության գործում իրենց զգալի լուման են մտցնում նաև մյուս հասարակական կազմակերպությունները, ինչպես և ընկերական դատարանները, որոնց գործունեությանը պարտիան այժմ մեծ նշանակություն է տալիս։

Աշխատավորության կոմունիստական դաստիարակության գործում քանի գնում, այնքան ավելի մեծանում է աշխատավորների դեպուտատների Սովետների դերը, որոնք ոչ միայն ղեկավարման օրգաններ են, այլև նրանց մեջ ընտրվող տասնյակ հազարավոր մարդկանց համար կոմունիստական գիտակցություն մշակելու դպրոց։

Երիտասարդությանը կոմունիստական գիտակցականության ոգով դաստիարակելու լավ դպրոց է Սովետական Բանակը, որն իր նպատակներով ու խնդիրներով արմատապես հակադիր է կապիտալիստական բանակին։ Կապիտալիստական բանակը կոչված է պատերազմելու ժողովրդի դեմ, իսկ մեր բանակը ժողովրդի հետ է, ընդդեմ ժողովրդի թշնամիների։ Սովետական Բանակը ծնվել է սոցիալիստական ռևոլյուցիայի նվաճումները պաշտպանելու մեծագույն անհրաժեշտությունից և դա ապահովել է Սովետական Բանակի կարևոր առանձնահատկությունը՝ նրա ռազմիկների բարձր գիտակցությունը, բարոյական վեհ հատկությունները, ժողովրդի շահերին նվիրված լինելը։

Նոր մարդու, կոմունիստական մարդու ձևավորումը հեշտ գործ չէ։ Այն պահանջում է երկարատև, քրտնաջան և սիստեմատիկ աշխատանք։ Դա այն բնագավառն է, որտեղ շատ բան է արված, բայց դեռ շատ բան էլ մնում է անելու։ Նոր մարդու ձևավորումը տառացիորեն սովետական յուրաքանչյուր մարդուց՝ թե՛ դաստիարակից, թե՛ դաստիարակվողից, պահանջում է մեծ ջանքեր։

Սովետական ժողովուրդը Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ շատ դժվարին բնագծեր է հաղթահարել։ Կասկած չի կարող լինել, որ մեր հասարակության ամենահմուտ դաստիարակի՝ Սովետական Միության Կոմունիստական պարտիայի և կոմունիստական գիտակցականության դաստիարակության մյուս օղակների համատեղ աշխատանքից ծնվում է նոր մարդը։

---

# ՄՏԱՎՈՐ ԵՎ ՖԻԶԻԿԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՏԱՐԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՎԵՐԱՑՄԱՆ ՄԱՍԻՆ

Վ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

Սովետական Միությունը թևակոխել է սոցիալիզմից աստիճանաբար կոմունիզմին անցնելու էտապը։ Կոմունիստական հասարակարգի կառուցումը դարձել է սովետական ժողովրդի անմիջական գործնական խնդիրը։

ՍՄԿՊ Նոր Ծրագրում առաջադրված պլանների իրականացումը համաշխարհային պատմական նշանակություն կունենա։ ՍՍՌՄ-ում հիմնականում կկառուցվի կոմունիստական հասարակարգ, որը վճռական էտապ կհանդիսանա նաև մտավոր և ֆիզիկական աշխատանքի միջև եղած էական տարբերությունները հաղթահարելու գործում։

Աշխատանքը մարդկային հասարակության գոյության հիմնական պայմանն է, մարդու և բնության միջև կատարվող պրոցես, որի ընթացքում մարդն իր բնական ուժերը շարժման մեջ է դնում ուղեղի վերահսկողության ներքո, որպեսզի բնական նյութը յուրացնի իր սեփական կարիքների համար։ Ամեն մի աշխատանք անհնարին է պատկերացնել առանց մարդկային մտավոր և ֆիզիկական գործունեության։

«Ինչպես բնության մեջ գլուխն ու ձեռքը միևնույն օրգանիզմին են պատկանում, այնպես էլ աշխատանքի պրոցեսում միանում են մտավոր և ֆիզիկական աշխատանքը» (Կ. Մարքս, Կապիտալ, հատոր 1, 1954 թ., էջ 531)։

Մտավոր և ֆիզիկական աշխատանքի զուգակցումն առողջ օրգանիզմի կենսական անհրաժեշտությունն է, նրա ամրապնդման կարևոր պայմանը։ Գիտությունն ապացուցել է, որ միակողմանի աշխատանքով տարվելը բացասաբար է անդրադառնում մարդու առողջության և աշխատանքի արդյունավետության վրա։

Ինչպես աշխատանքի ամեն մի բաժանում, այնպես էլ մտավոր և ֆիզիկական աշխատանքի բաժանումը ո՛չ թե անփոփոխ կատեգորիա է, այլ պատմական։ Մտավոր և ֆիզիկական աշխատանքի հակադրության ծագումը և զարգացումը կապված են մասնավոր սեփականության երևան գալու, հասարակությունը թշնամական հակամարտ դասակարգերի բաժանվելու հետ։ Մտավոր և ֆիզիկական աշխատանքի հակադրությունը՝ արտահայտելով հակամարտ դասակարգերի շահերը, դասակարգային հասարակության զարգացման ընթացքում ո՛չ միայն չի անհետանում, այլև ավելի սուր բնույթ է կրում։ Այդ հակադրությունը առավել սրվածության է հասնում իմպերիալիզմի շրջանում։

Մարդկային հասարակության պատմության մեջ առաջինը մեր սոցիալիս-

տական երկրում վերացվեց հասարակության անհավասարության կարևորագույն աղբյուրներից մեկը՝ մտավոր և ֆիզիկական աշխատանքի հակադրությունը։ Անցյալի այդ ծանր ժառանգությունը հաղթահարելու համար պահանջվեց մի ժամանակաշրջան, որի ընթացքում արմատական վերափոխումներ կատարվեցին մեր երկրի էկոնոմիկայում և հասարակական-քաղաքական կյանքում։ Իրականություն դարձավ մարքսիստական այն կանխատեսումը, որ կապիտալիստական կարգերի վերացումով կոչնչանա նաև մտավոր և ֆիզիկական աշխատանքի հակադրությունը։

Սակայն Մարքսն ու Էնգելսն իրենց ժամանակին չէին կարող մանրամասնորեն և կոնկրետ կերպով ցույց տալ այդ հակադրության լուծման ուղիները հասարակության զարգացման տարբեր շրջաններում։ Հետագայում այդ արվեց Լենինի կողմից, որը զարգացրեց մտավոր և ֆիզիկական աշխատանքի հակադրության լուծման գիտական ըմբռնումը, հանգելով այն եզրակացության, որ սոցիալիստական հասարակության զարգացման ընթացքում՝ կոմունիզմի օրոք, ո՛չ միայն կվերանան մտավոր և ֆիզիկական աշխատանքի հակադրությունը, այլև մտավոր և ֆիզիկական աշխատանքով զբաղվող մարդկանց միջև եղած տարբերությունները։ «Պարզ է, որ դասակարգերի լիակատար ոչնչացման համար պետք է ո՛չ միայն տապալել շահագործողներին, կալվածատերերին ու կապիտալիստներին, ո՛չ միայն վերացնել նրանց սեփականությունը, պետք է վերացնել նաև արտադրության միջոցների ամեն մի մասնավոր սեփականություն, պետք է ոչնչացնել ինչպես քաղաքի և գյուղի միջև եղած տարբերությունը, այնպես էլ ֆիզիկական աշխատանքի մարդկանց և մտավոր աշխատանքի մարդկանց միջև եղած տարբերությունը։ Այդ շատ երկարատև գործ է» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 29, էջ 515)։

Մտավոր և ֆիզիկական աշխատանքի էական տարբերությունները սոցիալիզմի օրոք ո՛չ միայն կապիտալիզմից ժառանգած մտավոր և ֆիզիկական աշխատանքի երբեմնի հակադրության մնացուկներ են, այլև սոցիալիստական հասարակության զարգացման ընթացքով պայմանավորված տարբերություն, որն արտահայտում է սոցիալիզմի էությունը, նրա տնտեսական օրենքները։ Դա նշանակում է, որ սոցիալիզմի օրոք բանվոր դասակարգի կուլտուր-տեխնիկական մակարդակը դեռևս չի հասել ինժեներա-տեխնիկական աշխատողների մակարդակին, մտավոր և ֆիզիկական աշխատանքով զբաղվող մարդկանց միջև գոյություն ունեն կուլտուր-տեխնիկական մակարդակի տարբերություններ։ Սոցիալիզմի արտադրահարաբերությունները և նրա տնտեսական զարգացումն այնպիսին են, որոնց պայմաններում հասարակության բոլոր անդամները չեն կարող զինվել այնպիսի գիտելիքներով, ինչպես ինտելիգենցիան։ Սոցիալիզմի օրոք բաշխումը հիմնականում իրականացվում է յուրաքանչյուրին՝ ըստ իր աշխատանքի սկզբունքով։ Նյութական բարիքների բաշխման այս սկզբունքը օբյեկտիվորեն պայմանավորված է նրանով, որ կոմունիզմի առաջին փուլում, սոցիալիզմի ժամանակ, աշխատանքը դեռ լրիվ չի դարձել մարդկանց կենսական առաջին անհրաժեշտությունը և արտադրողական ուժերի զարգացումը դեռ չի հասել այնպիսի մակարդակի, որ ստեղծվի սպառման առարկաների լիակատար առատություն և հնարավոր լինի դրանք բաշխել ըստ մարդկանց պահանջների։ «Ըստ աշխատանքի բաշխումը,— ասում է Ն. Ս. Խրուշչովը,— ապահովում է մարդկանց նյութական շահագրգռվածությունն արտադրության արդյունքների նկատմամբ, խթանում է աշխատանքի



արտադրողականության աճը, աշխատողների որակավորման բարձրացումը, արտադրության տեխնիկայի կատարելագործումը»։

Սոցիալիզմի օրոք մտավոր և ֆիզիկական աշխատանքի, ինչպես նաև մտավոր և ֆիզիկական աշխատանքով զբաղվող մարդկանց միջև գոյություն ունեն նաև ոչ էական տարբերություններ։ Որո՞նք են այդ տարբերությունները։ Եթե մտավոր և ֆիզիկական աշխատանքի էական տարբերությունները, որոնք հիմնականում արտահայտվում են աշխատողների կուլտուր-տեխնիկական մակարդակի, ինչպես նաև դասակարգերի գոյության տարբերությունների մեջ, անցողիկ, ժամանակավոր բնույթ ունեն և կվերանան կոմունիստական հասարակության բարձրագույն փուլում, ապա ոչ էական տարբերությունները՝ մտավոր և ֆիզիկական աշխատանքի բնույթը, առանձնահատկությունը, երբ առաջինը միտք, գաղափար է արտադրում, իսկ երկրորդը՝ առարկա, հարատև գործունեություն է և անհնար է պատկերացնել աշխատանքային պրոցեսն առանց այդ երկու տեսակների։

Միայն կոմունիստական հասարակության բարձրագույն փուլում, երբ արտադրողական ուժերն այնքան կզարգանան, որ ձեռք կբերվի սպառման առարկաների լիակատար առատություն, երբ բոլոր մարդիկ կամավոր կերպով կներգրավվեն նյութական արժեքների արտադրության կարևոր գործի մեջ, կվերանան մտավոր և ֆիզիկական աշխատանքի էական տարբերությունները։ Այն ժամանակ արդեն հասարակությունը կկարողանա իր դրոշակի վրա գրել՝ յուրաքանչյուրից՝ ըստ ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ պահանջմունքների։

Անկասկած, կոմունիզմի օրոք ևս կլինեն աշխատանքի բաժանում, ինչպես նաև մտավոր և ֆիզիկական աշխատանքի միջև զանազանություն, հարաբերական ինքնուրույն գործունեություն՝ ոչ էական տարբերություններ, սակայն չեն լինի մտավոր և ֆիզիկական աշխատողների միջև զարգացման միակողմանի տարբերություններ, աշխատանքի բաժանման քարացածություն։

Մտավոր և ֆիզիկական աշխատանքի էական տարբերությունների հաղթահարումը բարդ և դժվարին պրոցես է, որը չի կարելի պատկերել այնպես, թե բոլոր ֆիզիկական աշխատանքով զբաղվող մարդիկ հետզհետե կներգրավվեն մտավոր աշխատանքի բնագավառը և դրանով հարցը կլուծվի։ Կոմունիզմը ենթադրում է մարդու համակողմանի հոգևոր ու ֆիզիկական զարգացում, ուստի մտավոր և ֆիզիկական աշխատանքի օրգանական միացումը երկկողմանի պրոցես է, որը մի կողմից պահանջում է, որ մտավոր աշխատանքի ներկայացուցիչները զբաղվեն նաև ֆիզիկական աշխատանքով, մյուս կողմից, ֆիզիկական աշխատանքով զբաղվողները՝ մտավոր աշխատանքով։

***

Մեր պետության զարգացման նոր՝ կոմունիստական հասարակարգի կառուցման էտապում է՛լ ավելի պրակտիկ և առանձնահատուկ նշանակություն են ստանում մտավոր և ֆիզիկական աշխատանքի հարցերը։

Սոցիալիզմից կոմունիզմին անցնելու վճռական հիմքը՝ կոմունիստական հասարակարգի նյութատեխնիկական բազայի ստեղծումը, սոցիալիստական արտադրողական ուժերի նոր, հզոր վերելքն է։ Այդ պատմական խնդրի լուծման գլխավոր պայմանը տեխնիկայի անկանգ զարգացումը, կոմպլեքսային

մեքենայացումը և արտադրական պրոցեսների ավտոմատացման լայն արմատավորումն է։ Այս երաշխիքն ունենալով, պարտիան խնդիր է դնում առաջիկա տասնամյակում վերացնել ծանր ֆիզիկական աշխատանքը։

Նյութատեխնիկական նոր հիմքի վրա սոցիալիստական արտադրության հետագա զարգացման, աշխատանքի հետ ուսուցումն ավելի ու ավելի սերտորեն միացնելու համեմատ տեղի կունենա մտավոր և ֆիզիկական աշխատանքի միջև եղած էական տարբերությունների աստիճանական վերացումը,— ասում է Ն. Ս. Խրուշչովը։

Մտավոր և ֆիզիկական աշխատանքի էական տարբերությունները հաղթահարելու գործում վճռական նշանակություն ունի տեխնիկայի զարգացումը, որը հաջողությամբ օգտագործվում է մեր երկրում։ Տեխնիկայի հետագա պրոգրեսն անխզելիորեն կապված է հասարակության կուլտուրական աճի, նրա անդամների բազմակողմանի զարգացման հետ։ Որքան բարձր լինի մեր կադրերի կուլտուրական մակարդակը, այնքան խոր և ամուր կլինեն նրանց գիտական և տեխնիկական գիտելիքները, այնքան ավելի լավ կօգտագործվեն նորագույն տեխնիկան, կոմպլեքսային մեքենայացումը և արտադրության բազմակողմանի ավտոմատացումը։ Բարդ ավտոմատիկ հաստոցները, ծանր մամլիչները, հաշվիչ մեքենաները և տեխնիկական այլ սարքավորումներ ղեկավարելու համար բանվորները պետք է ունենան տեխնիկական բազմակողմանի գիտելիքներ։ Հետևապես, անհրաժեշտ է միջնակարգ և բարձրագույն մասնագիտական կրթություն, հարկավոր է որակավորման բարձր մակարդակ։ Վ. Ի. Լենինը, կոմունիզմի կառուցումը սերտորեն կապելով պարտիայի դաստիարակչական աշխատանքի խնդիրների հետ, գտնում էր, որ անհրաժեշտ է անցնել «...բազմակողմանի զարգացած ու բազմակողմանի պատրաստված մարդկանց դաստիարակությանը, որոնք կարողանում են ամեն ինչ անել»։

Տեխնիկական պրոգրեսի կարևորագույն պայմանը արտադրական պրոցեսների էլեկտրիֆիկացումն է։ Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը հաշվի առնելով էլեկտրիֆիկացման վճռական նշանակությունը կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում, խոշոր միջոցառումներ են իրագործում երկրի էլեկտրիֆիկացման համար։ Ուստի տասնամյակի վերջին էլեկտրաէներգիայի տարեկան արտադրությունը մեր երկրում պետք է հասնի 900—1000 միլիարդ, իսկ երկրորդ տասնամյակի վերջին՝ 2700—3000 միլիարդ կիլովատ-ժամի։

Արտադրական պրոցեսների մեքենայացումը և ավտոմատացումը հնարավորություն են տալիս անցյալի ամենածանր աշխատանքները, որոնք կատարվում էին ֆիզիկական ուժերի մեծ լարմամբ, փոխարինել գիտական հաշվարկումների հիման վրա կատարվող մեքենաների աշխատանքով, այլ կերպ ասած, մտավոր աշխատանքով։ «Նոր տեխնիկայի զարգացումը կօգտագործվի սովետական մարդու աշխատանքի պայմանները արմատապես բարելավելու և հեշտացնելու, աշխատանքային օրը կրճատելու և կենցաղը բարելավելու, ծանր ֆիզիկական աշխատանքը, իսկ հետո էլ ամեն տեսակ ոչ որակյալ աշխատանքը վերացնելու համար» (ՍՄԿՊ Ծրագրից)։

Տեխնիկական պրոգրեսը չի վերացնում մարդու մասնակցությունը արտադրության պրոցեսին։ Թեև արտադրության մի շարք ճյուղերում աշխատանքի մեծ ինտենսիվությունը, ճշգրիտ հաշիվները, բարդ տեխնոլոգիական պրոցես-



ները կատարում են մեքենաները, բայց բոլոր դեպքերում մարդն է ղեկավարում, կազմակերպում, ուղղություն տալիս արտադրությանը։

Մեր երկրի աշխատավորության կուլտուր-տեխնիկական մակարդակը և պրոֆեսիոնալ մասնագիտացման անընդհատ բարձրացումը ավելի են մերձեցնում աշխատանքի զանազան տեսակները՝ ստեղծելով աշխատանքային տարբեր ճյուղերի համար մեկ ընդհանուր հիմք։ Իրագործվում է մարքսիստական այն դրույթը, որ կոմունիզմի դարաշրջանում ազատ անցում կկատարվի մեկ պրոֆեսիայից դեպի մեկ ուրիշը և կվերանա աշխատանքի բաժանման միակողմանի բնույթը։

Սոցիալիստական հասարակարգում արտադրության պրոցեսների մեքենայացումը և ավտոմատացումը ո՛չ միայն տնտեսական, այլև սոցիալական մեծ նշանակություն ունեն։ Հակառակ կապիտալիզմի, որը տեխնիկայի ու գիտության նվաճումները ուղղում է բանվորների դեմ, նրանց դարձնում մեքենայի հասարակ կցորդներ, սոցիալիզմի օրոք տեխնիկական պրոգրեսը արմատապես վերափոխում է ո՛չ միայն աշխատանքի բնույթը, այլև բանվորներին ազատում ծանր, հոգնեցուցիչ ֆիզիկական աշխատանքից, զարգացնում նրանց մտավոր կարողությունները։

Արտադրության զինումը նորագույն տեխնիկայով որոշակի փոփոխություններ է մտցնում բանվորների որակավորման պրոֆեսիոնալ կազմի մեջ։ Արդյունաբերության մի շարք ճյուղերում, հատկապես լեռնահանքային, ածխային, շինարարության և այլ ճյուղերում կրճատվում է ձեռքի աշխատանքը։ Ածխային արդյունաբերության մեջ վերջին երկու տարվա ընթացքում այն պրոֆեսիաների քանակը, որոնք հիմնված են ձեռքի աշխատանքի վրա, 50-ից հասել է 17-ի։ Վերացել են ամրակչի, հորատողի, ածխահատ բարձիչի, այլ ճյուղերում՝ խառատի, հղկիչի, ֆրեզերողի պրոֆեսիաները և դրանց փոխարեն ստեղծվել մեխանիզատորի, մեխանիկի նոր պրոֆեսիաներ, որոնք իրենց մեջ ներառում են մի շարք մասնագիտություններ։ Արագորեն զարգանում է կոմպլեքսային ավտոմատացումը մետալուրգիական, քիմիական, նավթային, գազի, էներգետիկայի և արդյունաբերական այլ ճյուղերում։ Վերը նշված ճյուղերում առաջնակարգ մասնագետներ են համարվում մեքենաներ կարգավորողը, էլեկտրամոնտյորը և զանազան տիպի փականագործները։ Այդ մասնագիտությունները բանվորներից պահանջում են բազմակողմանի գիտելիքներ, որակավորման բարձր մակարդակ։ Ավտոմատացման շնորհիվ աշխատանքը հանգում է մեքենաներն ու սարքերը կառավարելուն, դրանք կարգի բերելուն, տեխնոլոգիական պրոցեսների ծրագրերն ու ռեժիմները կազմելուն։ Ավտոմատացման դեպքում արմատապես փոխվում է աշխատանքի բնույթը, մեքենայացվում են աշխատատար պրոցեսները, վերանում ձեռքի հետ կապված ծանր ֆիզիկական աշխատանքները։

ՍՄԿՊ Ծրագրում մեծ ուշադրություն է հատկացված արտադրական պրոցեսների կոմպլեքսային մեքենայացման ու ավտոմատացման հարցերին։ Խնդիր է դրվում առանձին ագրեգատների ու օպերացիաների ավտոմատացումից անցնել ցեխերի տեխնոլոգիական պրոցեսների ավտոմատացման և ամբողջովին ավտոմատացված ձեռնարկությունների ստեղծման։

Մեքենայական տեխնիկայի անընդհատ կատարելագործումները, էլեկտրիֆիկացումը, արտադրության պրոցեսների մեքենայացումն ու ավտոմատացումը լուրջ փոփոխություններ են առաջացրել ՍՍՌՄ բանվորների որակավորման

և մասնագիտացման գործում։ Արդյունաբերության մեջ հատկապես աճում է ծանր ինդուստրիայի ճյուղերում զբաղված բանվորների տեսակարար կշիռը։

Ժամանակակից մեր արդյունաբերության մեջ օրեցօր ավելանում է այն բանվորների թիվը, որոնք աշխատանքի պրոցեսում համատեղում են մի շարք մասնագիտություններ։ Պրոֆեսիաների և մասնագիտությունների համատեղման հիմքում ընկած է բանվորների որակավորման, կուլտուր-տեխնիկական աճը։ Այդպիսի պայմաններում մեկ բանվորը լրիվ կերպով կատարում է տեխնոլոգիական այն պրոցեսները, որոնք անհրաժեշտ են դետալի պատրաստման համար, վերացվում են միակողմանի գործողությունները, ինչպես նաև՝ հաշվիչ-վերլուծական և հսկման ֆունկցիաների բաժանումը։ Տեխնիկայի արդի զարգացումը, մասնավորապես մեքենաշինության ասպարեզում կատարվող աշխատանքները, պահանջում են պրոֆեսիաների և մասնագիտությունների լայն համատեղում։ Կոմունիստական աշխատանքի բրիգադաների ու հարվածայինների շարժման դրական կողմերից մեկն էլ այն է, որ ռացիոնալիզատորական և տեխնիկական նորմաների գերազանցումը զուգակցվում է մի քանի մասնագիտությունների յուրացման աշխատանքների հետ։

Գյուղատնտեսության ասպարեզում մեքենայացման լայն կիրառումը թույլ է տալիս ձեռքի աշխատանքի պրոցեսները կատարել մեքենաներով, որոնց շնորհիվ լայն հնարավորություններ ու հեռանկարներ են բացվել գյուղատնտեսության մեջ հարահոս մեթոդների հիման վրա արտադրական պրոցեսների կազմակերպման ինդուստրիալ ձևերի կիրառման համար։ Մեծ աշխատանքներ են տարվում գյուղատնտեսության նյութատեխնիկական բազայի հետագա ամրապնդման ուղղությամբ։

Մեր երկրում մեծ աշխատանք է կատարվում սոցիալիստական գյուղատնտեսության բոլոր տեղամասերը մասնագետների և կազմակերպիչների փորձված կադրերով ամրապնդելու ուղղությամբ։ Կոլտնտեսություններում և սովխոզներում աճել են մեծ թվով որակյալ կադրեր։ Կոլտնտեսային և սովխոզային արտադրության մեջ այժմ աշխատում են բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթության տեր ավելի քան 300 հազար մասնագետներ։ Կոլտնտեսությունների նախագահների կեսից ավելին և սովխոզների դիրեկտորների գրեթե 90 տոկոսը բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթություն ունեն։

ՍՍՌՄ գյուղատնտեսության մեջ աշխատանքի արտադրողականությունը տասը տարվա ընթացքում կբարձրանա առնվազն երկուս ու կես անգամ, իսկ քսան տարում՝ հինգ—վեց անգամ։ Գյուղատնտեսության տեխնիկական զինվածության համար հիմք կծառայեն, ինչպես նշվում է ՍՄԿԿ Ծրագրում, կոմպլեքսային մեքենայացման կիրառումը և ավտոմատիկայի միջոցների օգտագործումը։ Պարտիան կարևոր նշանակություն է տալիս գյուղատնտեսության արագ էլեկտրիֆիկացմանը։ Նշված միջոցառումները գյուղատնտեսական աշխատանքները տեխնիկական վերազինման տեսակետից կմոտեցնեն արդյունաբերության մակարդակին. գյուղատնտեսական աշխատանքը կդառնա արդյունաբերական աշխատանքի տարատեսակը։

Տեխնիկայի վիթխարի առաջընթացը փոփոխություն է մտցրել մտավոր և ֆիզիկական աշխատանքի բնույթի և նրանց փոխհարաբերության միջև։ Մարդկային ֆիզիկական ուժը, որպես էներգիայի աղբյուր, զգալիորեն կրճատվել է աշխատանքի պրոցեսում, դրա փոխարեն ավելացել է մտավոր գործունեու-



թյան ֆունկցիան։ Ներկա էտապում մեքենաների սպասարկումը (հաստոցավարի և ուրիշների աշխատանքը) կարելի է ֆիզիկական աշխատանք անվանել, իսկ մեքենաների ու պրոցեսների ղեկավարումը՝ մտավոր աշխատանք։ Ապագայի խիստ մեքենայացված և ավտոմատացված արտադրության պայմաններում կվերանա նաև մեքենաները սպասարկելու համեմատաբար ծանր աշխատանքը և այն կփոխարինվի մի այլ, ավելի հեշտ աշխատանքով։ Ժամանակակից ավտոմատ մեքենաները կատարում են բազմապիսի բարդ օպերացիաներ, առանց մարդու անմիջական մասնակցության։ Մարդու դերը աշխատանքում հանգում է միայն արտադրական պրոցեսները կարգավորելուն, ինչպես նաև ավտոմատներին հսկելուն և հետևելուն։

Սխալ է այն կարծիքը, թե կոմունիզմի օրոք տեխնիկայի և արտադրողական ուժերի զարգացման հետևանքով կվերանա ֆիզիկական աշխատանքը։ Իհարկե, արտադրության մեքենայացումը և ավտոմատացումը անչափ կթեթևացնեն ֆիզիկական աշխատանքը, այն կհարստանա ինտելեկտուալ, ստեղծագործական բովանդակությամբ, սակայն երբեք էլ չի կարելի պատկերացնել մարդու ներդաշնակ զարգացումը առանց ֆիզիկական բերկրալի աշխատանքի, որն ամրապնդում է մարդու օրգանիզմը, բարձրացնում նրա կենսական ֆունկցիաները։

ՍՄԿԿ Ծրագրում նշվում է, որ «Կոմունիզմի հաղթանակով տեղի կունենա մտավոր և ֆիզիկական աշխատանքի օրգանական միացում մարդկանց արտադրական գործունեության մեջ»։ Նշված մեջբերումից չի կարելի եզրակացնել, որ կոմունիզմի օրոք կվերանան, կանհետանան մտավոր կամ ֆիզիկական աշխատանքի տեսակները։ Ընդհակառակը, դա նշանակում է, որ ինչպես բնության մեջ գլուխն ու ձեռքը միևնույն օրգանիզմին են պատկանում, բայց դրանով նրանք չեն նույնացվում, կամ էլ չեն դադարում որպես առանձին ֆունկցիաներ հանդես գալուց, այնպես էլ աշխատանքի պրոցեսում օրգանապես միավորվում են մտավոր և ֆիզիկական աշխատանքները։

Խոշոր մեքենայական արտադրությունը և աշխատանքի հանրայնացումը իրենց հետ բերում են մի նոր անձնակազմ, որի ֆունկցիան է՝ հսկել մեքենաները, կարգավորել նրանց աշխատանքը, ղեկավարել արտադրական պրոցեսները։ Դա բանվորների ավելի բարձր, գիտականորեն կրթված մասն է, որի աշխատանքը հիմնականում մտավոր գործունեությունն է։ Այնպես է ստացվում, որ առանց թվարկած աշխատանքների արտադրական պրոցեսը չի կարող իրագործվել։ Այստեղից էլ այն հետևությունը, որ խոշոր մեքենայական արտադրության օրոք ինժեներա-տեխնիկական աշխատողները, որոնք զբաղված են մեքենաները կարգավորելով, նոր տեխնիկա ստեղծելով, գիտությունը արտադրության մեջ կիրառելու աշխատանքներով, հանդիսանում են արտադրական պրոցեսի ղեկավարները։

Մարքսը նշել է, որ խոշոր մեքենայական արտադրության պայմաններում, երբ աշխատանքի արդյունքը ստեղծվում է կոլեկտիվ աշխատանքի համատեղ ջանքերով, արտադրական աշխատանքի հասկացողությունն անխուսափելիորեն ընդարձակվում է, դրա մեջ մտնում է ո՛չ միայն անմիջական ձեռքի հետ կապված աշխատանքը, այլև ընդհանուր արտադրական պրոցեսի առանձին օղակները։ Հետևապես, ինժեներա-տեխնիկական անձնակազմի, ինչպես նաև գիտնականների աշխատանքն արտադրողական աշխատանք է, նյութական բարիքներ արտադրելու աշխատանք։

Մտավոր աշխատանքի արտադրողական բնույթի մասին են վկայում հաշվիչ տեխնիկայի, էլեկտրոնային սարքավորումների լայն նվաճումները, որոնք արտադրական պրոցեսների կառավարման համար թույլ են տալիս ավտոմատ կերպով ընտրել ու տեխնոլոգիական պրոցեսը ղեկավարել առավել շահավետ ռեժիմով։

ՍՄԿՊ Ծրագրում իրավացիորեն նշվում է, որ անհրաժեշտ է ամեն կերպ զարգացնել ժողովրդական տնտեսության խորհուրդների, ձեռնարկությունների, հասարակական կազմակերպությունների, գիտնականների, ինժեներների, բանվորների, կոլտնտեսականների նախաձեռնությունը նոր, կատարելագործված տեխնիկա ստեղծելու և կիրառելու գործում։ Նրանց ուշադրությունը պետք է կենտրոնացնել այնպիսի պրոբլեմների վրա, որոնց լուծումը մեծ չափով գիտությունը կդարձնի անմիջական արտադրողական ուժ, կվերացնի ձեռքի ծանր աշխատանքը։

Սոցիալիստական հասարակարգի ներկա էտապում բնորոշ է այն փաստը, որ անմիջական արտադրողների, նյութական բարիքներ ստեղծողների բանակը անընդհատ համալրվում է միջնակարգ և բարձրագույն տեխնիկական կրթությամբ զինված մարդկանցով։

Միջնակարգ և բարձրագույն դպրոցի վերակառուցումն արդեն որոշակի արդյունքներ է տալիս հասարակության նյութական և հոգևոր հարստության հետագա զարգացման համար։ Մեր արտադրական ձեռնարկություններում լայն տարածում են գտել նորարարական, գյուտարարական, ռացիոնալիզատորական շարժումը։ Բանվորների կուլտուր-տեխնիկական աճի մասին են խոսում այն փաստերը, որ 1960 թ. ժողովրդական տնտեսության մեջ արմատավորվել են ավելի քան 2 միլիոն 500 հազար գյուտեր ու ռացիոնալիզատորական առաջարկություններ։ Այս բոլորը վկայում են, որ առաջավոր բանվորները կատարում են ո՛չ թե մեխանիկական պարզ գործողություններ, այլև մասնակցում արտադրության կատարելագործմանն ու աշխատանքի բարելավմանը։

ՍՄԿՊ Ծրագրում նշվում է, որ առաջիկա տասը տարվա ընթացքում կիրագործվի անցում վեցժամյա, իսկ ստորերկրյա աշխատանքներում և վնասակար արտադրություններում՝ հինգժամյա աշխատանքային օրվա։ Սովետական Միությունը կդառնա աշխարհում ամենակարճ և միևնույն ժամանակ ամենաարտադրողական ու առավել բարձր վարձատրվող աշխատանքային օրվա երկիր։ Հիշյալ ձեռնարկությունները կնպաստեն, որպեսզի աշխատավոր մասսաներն ունենան ավելի շատ ազատ ժամանակ իրենց կուլտուրական հանգիստը կազմակերպելու, մտավոր աշխատանքով զբաղվելու համար։ Տնտեսական խոշոր միջոցառումների, գիտության, կուլտուրայի ու լուսավորության առջև այսօր ծառացած խնդիրների լուծման շնորհիվ Սովետական Միությունը զգալիորեն առաջ կընթանա ըստ պահանջմունքների բաշխման կոմունիստական սկզբունքի գործնական իրականացման ուղիով։

Սովետական ժողովուրդը՝ Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, վստահորեն առաջ է շարժվում կոմունիզմի ճանապարհով։ Այդ ճանապարհին աստիճանաբար կնվազեն և այնուհետև կվերանան մտավոր և ֆիզիկական աշխատանքի միջև եղած էական տարբերությունները։

---

# ՊԵՏԱԿԱՆ-ՄՈՆՈՊՈԼԻՍՏԱԿԱՆ ԿԱՊԻՏԱԼԻԶՄԸ

Մ. ԶԱՔԱՐՅԱՆ

Իմպերիալիզմը թևակոխել է իր մայրամուտի ու կործանման ժամանակաշրջանը։ Կապիտալիզմի վերջին փուլի այս ճշմարտացի գնահատականը գիտական կուռ տրամաբանությամբ հիմնավորված է ՍՄԿՊ Ծրագրում։ Պետական-մոնոպոլիստական կապիտալիզմը, որը լայնորեն զարգացել է իմպերիալիզմի վերջին ստադիայում, ամենից ցայտուն կերպով է դրսևորում կապիտալիստական սիստեմի փտումն ու պարազիտիզմը, նրա կազմալուծման անկասելի պրոցեսը։

Պետական-մոնոպոլիստական կապիտալը, որպես ֆինանսական օլիգարխիայի տիրապետության հաստատման ու տարածման հիմնական ձևերից մեկը, յուրահատուկ է կապիտալիզմի զարգացման մոնոպոլիստական ստադիային։ Պետական-մոնոպոլիստական կապիտալիզմը, որն առաջանում է մոնոպոլիաների և պետական ապարատի սերտաճումից, արդյունք է կապիտալիստական արտադրության հսկայական հանրայնացման, նրա խիստ համակենտրոնացման, իմպերիալիզմին ներհատուկ հակասությունների սրման և խորացման։ Ֆինանսական մագնատները պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի միջոցով իրենց են ենթարկում պետական կառավարող օրգանները, վերջիններս դարձնելով իրենց կամակատարներ։

Պետական-մոնոպոլիստական կապիտալիզմը կապիտալիզմի զարգացման «նոր փուլ», «կազմակերպված կապիտալիզմ» կամ «պետական սոցիալիզմ» չէ, ինչպես փորձում են այն ներկայացնել բուրժուազիայի ջատագովները։ Իրականում պետական-մոնոպոլիստական կապիտալիզմն իր մեջ բովանդակում է կապիտալիզմին հատուկ բոլոր սոցիալական հակասությունները, որոնք ընդունում են ավելի խոր և սուր բնույթ։ Խոշոր մոնոպոլիաներն օգտագործելով պետական-մոնոպոլիստական կապիտալիզմը (որի ձեռքում են գտնվում կապիտալը, մամուլը, ռադիոն, հեռուստատեսությունը, զինված ուժերը, հասարակական կազմակերպությունների ղեկավարությունը), հանուն մոնոպոլ բարձր շահույթի ստացման՝ ո՛չ միայն սաստկացնում են բանվորների շահագործումը, այլև ավելի ուժգին են ճնշում ու կեղեքում գաղութային և կախյալ երկրներին, սեփական մանր ու միջակ բուրժուազիային։

Ներկայումս, երբ կապիտալիզմը թևակոխել է իր սիստեմի ընդհանուր ճգնաժամի նոր էտապը, պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի զարգացման տենդենցի ճիշտ ըմբռնումը առանձին կարևորություն է ներկայացնում։

«Իմպերիալիզմի ստադիայում,— ասված է ՍՄԿՊ Ծրագրում,— լայն զարգացում է ստանում պետական-մոնոպոլիստական կապիտալիզմը։ Մոնոպո-

լիաների գոյացումն ու աճը հանգեցնում են այն բանին, որ պետությունը անմիջականորեն միջամտում է կապիտալիստական վերարտադրության պրոցեսին՝ հօգուտ ֆինանսական օլիգարխիայի։ Հանուն նրա շահերի բուրժուական պետությունը կիրառում է զանազան տեսակի կարգավորիչ միջոցառումներ, օգտագործում է էկոնոմիկայի առանձին ճյուղերի պետականացումը»։

Միանգամայն հասկանալի է թե ինչու 1960 թ. նոյեմբերին Մոսկվայում կայացած Կոմունիստական ու բանվորական պարտիաների ներկայացուցիչների խորհրդակցության Հայտարարության մեջ և ՍՄԿՊ Ծրագրում լայնորեն արծարծվեց և լուսաբանվեց պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի հարցը։ «Իմպերիալիզմի հակասությունները արագացրին մոնոպոլիստական կապիտալիզմի վերաճումը պետական մոնոպոլիստական կապիտալիզմի։ Ուժեղացնելով մոնոպոլիաների գերիշխանությունը ազգի կյանքի վրա, պետական-մոնոպոլիստական կապիտալիզմը մոնոպոլիաների ուժը միացնում է պետության ուժի հետ դարձնելով միասնական մեխանիզմ կապիտալիստական կարգերը փրկելու համար, բանվոր դասակարգին շահագործելու և բնակչության լայն խավերին կողոպտելու միջոցով իմպերիալիստական բուրժուազիայի շահույթների առավելագույն մեծացման համար» (Կոմունիստական և բանվորական պարտիաների ներկայացուցիչների խորհրդակցության Հայտարարությունը, 1960 թ.)։ Հետևապես, պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի էության լուսաբանումը կարևոր նշանակություն ունի ժամանակակից իմպերիալիստական տերությունների ներքին ու արտաքին քաղաքականությունը ճիշտ հասկանալու տեսակետից։

Պետական կապիտալիզմը, որպես սեփականության յուրահատուկ ձև բնորոշ է նրանով, որ պետությանն են պատկանում՝ երկրի ընդերքի որոշակի մասը, տրանսպորտի զգալի մասը, էմիսիոն բանկերը, ինչպես նաև որոշ քանակի գործարաններ ու ֆաբրիկաներ, որոնք կամ կառուցված են պետական բյուջեի հաշվին, կամ ենթարկվել են բուրժուական «ազգայնացման», չխախտելով մասնավոր սեփականության անձեռնմխելիության իրավունքը։

Այդ նշանակում է, որ կապիտալիստական սեփականատերերին զուգընթաց, բուրժուական պետությունները նույնպես հանդես են գալիս խոշոր սեփականատիրոջ դերում։ Սակայն պետությանը պատկանող այդ կարևոր տնտեսական օբյեկտները շահագործվում են ոչ թե իր, այլ խոշոր կապիտալիստների կողմից, ըստ վճարման որոշ կարգի, կամ չափազանց նպաստավոր գներով վաճառվում նրանց։

ԱՄՆ-ում պրեզիդենտ Ֆ. Ռուզվելտի կառավարման ժամանակ պետական բյուջեի հաշվին կառուցված գործարանները (գլխավորապես ռազմական) իրավականորեն կազմելով պետական սեփականություն, փաստորեն շահագործվում էին խոշոր մոնոպոլիաների կողմից։ Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո (Տրումենի և էյզենհաուերի կառավարությունների ժամանակ) պետական բյուջեի հաշվին կառուցված գործարանների զգալի մասը մատչելի գներով վաճառվեց խոշոր մոնոպոլիաներին։

Յուրահատուկ պետական կապիտալիզմ գոյություն ունի ազատագրված գաղութային երկրներում։ Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո Հնդկաստանը, Ինդոնեզիան, Բիրման, Իրաքը, ՄԱՌ-ը և այլ երկրներ ինչպես սեփական միջոցներով, այնպես էլ արտաքին վարկավորման հաշվին կառու-



ցում են արդյունաբերական ձեռնարկություններ, որոնք անմիջականորեն շահագործվում են պետության կողմից։

Բացի այդ, հիշյալ երկրներում պետական կապիտալիզմի առաջացման կարևոր ուղիներից մեկը օտարերկրյա կապիտալին պատկանող տնտեսական ձեռնարկությունների ազգայնացումն է։

Կապիտալիզմի զարգացման տենդենցն այն է, որ գնալով «Մանր և միջին տնտեսությունների արտամղումն ու կործանումը է՛լ ավելի է արագանում։ Կապիտալի համակենտրոնացումը և ինտերնացիոնալիզացիան աճում են հսկայական չափով։ Մոնոպոլիստական կապիտալիզմը վերածվում է պետական մոնոպոլիստական կապիտալիզմի, մի շարք երկրներում, հանգամանքների ճնշման հետևանքով, մտցվում է արտադրության և բաշխման հասարակական կարգավորում...» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 24, էջ 380)։

Այդ նշանակում է, որ պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի առաջացման և բուրժուական պետությունների տնտեսական ֆունկցիաների ընդարձակման հենարանը հանդիսանում է մոնոպոլիան։ Միանգամայն հասկանալի է, թե ինչու Վ. Ի. Լենինը մոնոպոլիան համարել է իմպերիալիզմի անկյունաքարը, նրա տնտեսական հիմքը։ Բնորոշ է, որ պետական մոնոպոլիստական կապիտալիզմն ավելի վաղ առաջացել է Գերմանիայում և Ռուսաստանում, ապա ԱՄՆ-ում, իսկ ավելի ուշ՝ Անգլիայում, Ֆրանսիայում և կապիտալիստական այլ երկրներում։

Սակայն երկրորդ համաշխարհային պատերազմից հետո մոնոպոլիստական կապիտալիզմի փոխարկումը պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի ավելի արագ և լայն զարգացում է ստացել ԱՄՆ-ում։ Հետևապես պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի զարգացումը տեղի է ունենում անհամաչափ, որն, անշուշտ, պայմանավորված է արտադրության համակենտրոնացման և բանկային կապիտալի կենտրոնացման անհամաչափությամբ։

«Պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի դիալեկտիկան այնպիսին է,— ասված է պարտիայի Ծրագրում,—որ կապիտալիստական սիստեմը ամրապնդելու փոխարեն, որի վրա հույս է դնում բուրժուազիան, է՛լ ավելի է սրում կապիտալիզմի հակասությունները, հիմն ի վեր խարխլում է այն»։

Որո՞նք են պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի առաջացման գլխավոր ուղիները։

Ամենից առաջ պետական և մասնավոր մոնոպոլիաների սերտաճումը տեղի է ունենում նրանց և կառավարող օրգանների մերձեցման հետևանքով։ Այդ իրականացվում է անվանական և արտոնյալ ակցիաների «պարգևատրման» կամ պետական ապարատի կառավարող անձերի կաշառման միջոցով՝ խոշոր մոնոպոլիստների կողմից։ Ինչպես հայտնի է, ակցիոներական ընկերությունների ակցիաները ո՛չ միայն բերում են եկամուտ, այլև տալիս են ընտրելու և ընտրվելու իրավունք։ Նշանակում է, պետական ապարատի պատասխանատու գործիչները «նվիրատվության» կարգով ձեռք բերելով այդ ակցիաները՝ հնարավորություն են ստանում ո՛չ միայն դառնալու այս կամ այն ակցիոներական ընկերության մասնակից, այլև ընտրվելու նրա ղեկավարող օրգաններում։ ԱՄՆ-ի կառավարության պետական նախկին քարտուղար Դալլեսը ո՛չ միայն հանդիսանում էր նավթային արքա Ռոքֆելլերի ընկերության իրավաբանական տան դիրեկտոր, այլև խոշոր ակցիոներ։

Դեռ անցյալ դարում էնգելսը նկատել է, որ ԱՄՆ-ում գոյություն ունի պե-

տական չինովնիկների ուղղակի գնումը խոշոր կապիտալիստների կողմից։ Իսկ Վ. Ի. Լենինը նշում է, որ ֆինանսական կապիտալը բուրժուական կարգերի ժամանակ ազատորեն կգնի ու կկաշառի յուրաքանչյուր կառավարության ու չինովնիկի։ Իտալիայում մինիստրների համար սովորական պրակտիկա է դարձել «արտադրական նվիրատվություն» ստանալը խոշոր արդյունաբերողներից, որոնք սերտորեն կապված են այս կամ այն մինիստրության հետ։

Երկրորդ, բուրժուական ընտրական սիստեմը լայն հնարավորություններ է տալիս խոշոր մոնոպոլիաներին՝ միահյուսվելու պետական ապարատի հետ և այն օգտագործելու մոնոպոլ բարձր շահույթի ստացման համար։ Պետական կառավարող օրգանների ընտրական կամպանիաների ֆինանսավորումը բացառապես կատարվում է խոշոր մոնոպոլիստների կողմից։ Ինչպես հայտնի է, 1933 թվականին ֆաշիստական դիկտատուրայի հաստատման և Հիտլերի՝ իշխանության գլուխ անցնելու գործում վճռական դեր խաղացին ֆինանսական կապիտալի այնպիսի խոշոր մագնատներ, ինչպիսիք էին՝ Տիսսենը, Կրուպպը, Սիմենս-Շուկերտ խոշորագույն ընկերությունը և այլն։ Խոշոր մոնոպոլիաներն օգտագործելով բուրժուական ընտրական սիստեմը ձգտում են՝ կա՛մ իրենց դրածոներին անցկացնել կառավարության կազմում, կա՛մ իրենք անմիջապես գրավել պատասխանատու պոստեր պետական ապարատի կառավարող օրգաններում։

ԱՄՆ-ում կառավարության կազմի գերակշռող մասը բաղկացած է ֆինանսական օլիգարխիայի ներկայացուցիչներից։ Ահա ԱՄՆ-ի նորընտիր նախագահ Քեննեդիի կառավարության կազմը՝ 1. Ջոն Քեննեդի—խոշոր կապիտալիստի որդի (հոր կապիտալը 400 մլն. դոլար), սերտ կապված է Ուոլլ Սթրիթի տերերի հետ. 2. Դին Ռասկ—պետական քարտուղար, սերտ կապված է ֆինանսական արքա Ռոքֆելլերի հետ, խոշոր ակցիոներ, «Ռոքֆելլերի Ֆոնդի» պրեզիդենտը։ 3. Ռոբերտ Մաքնամարա—պաշտպանության մինիստր, «Ֆորդ Մոտոռ կոմպանի» կոնցեռնի նախկին նախագահը, իր պորտֆելում է պահում այդ ընկերության 24050 ակցիա։ Միջազգային հարցերի գծով նրա օգնական է նշանակված Նյու-Յորքի ֆինանսիստ Պոլ Նիտցեն։ Ռոբերտ Մաքնամարան տարեկան ստանում է 400000 դոլար։ 4. Դուգլաս Դիլոն—ֆինանսների մինիստր, 1953 թվականից «Դիլոն, Ռինդ էնդ կոմպանի» ֆիրմաների դիրեկտորների խորհրդի նախագահն էր, նախկին կառավարության պետական քարտուղարի օգնականը տնտեսական հարցերում։ Սերտ կապված է Ուոլլ Սթրիթի գործարանների հետ։ 5. Էդվարդ Դեյ—կապի մինիստր, «Պրուդենշլ Լայֆ Ինշուրենս» ապահովագրական ընկերության նախկին փոխնախագահը։ 6. Լյութեր Հոջես—առևտրի մինիստր, որը միաժամանակ հանդիսանում է «Մարշալ Ֆիլդ էնդ կոմպանի» տեքստիլ ֆաբրիկաների տերստի փոխնախագահը։ 7. Ռոբերտ Քենեդի (պրեզիդենտի եղբայրը)—արդարադատության մինիստր։ 8. Մնացյալ երեք մինիստրները՝ գյուղատնտեսության, աշխատանքի և առողջապահության, մինչև Քեննեդիի կաբինետի կազմի մեջ մտնելը գրավում էին նահանգապետի պաշտոններ։

1956 թվականին ԱՄՆ-ի ազգային պաշտպանության խորհրդի կազմի 5 անդամները՝ Դ. Ֆ. Դալլեսը, Բրանդեյջը, Ա. Ու. Դալլեսը, Ստրաուսը և Ստասսենը սերտ կապեր ունեին Ռոքֆելլերի հետ և հանդիսանում էին նրա դրածոները։ Խոշոր արդյունաբերող Վիլսոնը և ֆինանսիստ Ջեքսոնը կապված էին ֆինանսական մագնատ Մորգանի և Դյուպոնի հետ, Էյզենհաուերը՝ Ռոքֆելլերի, Մորգանի և «Նեշնըլ Սիթի Բենկ»-ի հետ, վիցե-պրեզիդենտ Նիքսոնը՝ Կալիֆոռնիական ֆինանսական խմբավորման հետ, Անդերսոնը—Տեհասյան խմբի, ֆինանսիստ Համֆրին—Քլիվլենդյան խմբի հետ և այլն։ Ահա ամերիկյան «դեմոկրատիայի» տիպիկ պատկերը։ Այդ վկայում է այն մասին, որ ԱՄՆ-ում մոնոպոլիաների ուժը միացված է պետության հետ և երկրի տնտեսական ու քաղաքական կյանքում վճռական դեր են խաղում ֆինանսական արքաները, որոնք Միացյալ Նահանգները դարձրել են համաշխարհային ռեակցիայի գլխավոր բույնը։

«Ամերիկյան իմպերիալիզմը, քողարկվելով ազատության ու դեմոկրատիայի կեղծ դրոշակով, իրականում կատարում է համաշխարհային ժանդարմի դեր, պաշտպանելով ռեակցիոն դիկտատորական ռեժիմները, նեխած միապետությունները, հանդես գալով դեմոկրատական, ռևոլյուցիոն վերափոխումների դեմ, ագրեսիա սանձազերծելով իրենց անկախության համար պայքարող ժողովուրդների դեմ» (ՍՄԿՊ Ծրագիր)։

Այն փաստը, որ խոշոր մոնոպոլիստները մտնելով կառավարության կազմի մեջ պետությունը ենթարկում են իրենց, պարզ երևում է և Անգլիայի կառավարման պրակտիկայից։ Ահա Անգլիայի պրեմիեր-մինիստր Հարոլդ Մաքմիլանի գլխավորած պահպանողական կառավարության կազմը.

Մաքմիլանը խոշոր կապիտալիստ է և մինչև պրեմիեր-մինիստրի պաշտոնին անցնելը գլխավորում էր գրահրատարակչության մի շարք խոշորագույն ֆիրմաներ։

Պաշտպանության մինիստր Դանքեն Սենդիսը (Ուինստոն Չերչիլի աներձագը) եղել է գաղութային առևտրաարդյունաբերական ձեռնարկությունների դիրեկտոր։ Գաղութների մինիստր Լեննոքս-Բոյդը գրավում էր «Արտուր Հիննես, սան էնդ Կօ» ընկերության դիրեկտորի պաշտոնը։ Հողագործության, ձկնորսության և պարենավորման մինիստր—Հիտքոթ Էմերին եղել է «Լլոյդս Բէնկ»-ի դիրեկտորը և միաժամանակ գլխավորել է «Ջոն Հիտկոթ էնդ Կօ» և «Ասսօշիեյտեդ կոմպանիս» ֆիրմաները։

Բրիտանական ազգերի համագործակցության գործերի մինիստր լորդ Հոումն առաջներում հանդիսացել է «Բէնկ օֆ Սկոտլենդ»-ի և «Սկոթիշ Յունիոն էնդ Նեշնըլ Ինշուրենս» ընկերության դիրեկտորը։ Ընդամին, մինչև որոշ արդյունաբերական ձեռնարկությունների ազգայնացումը վարել է մի շարք դիրեկտորական պաշտոններ էլեկտրատեխնիկական ընկերություններում։

Շոտլանդիայի գործերի մինիստր Դ. Ս. Մակլեյը գլխավորել է «Մակլեյ էնդ Մակինտայր», «Պենինսուլա էնդ օրիենտլ ստիմ Նևիգեյշն» ընկերությունները, գրավել է ղեկավարող պոստեր «Նեշնըլ փրովինշըլ Բենկ» և այլ ընկերություններում։

Ներքին գործերի մինիստր և մամուլի կնքապահ լորդ Բատլերը նույնպես խոշոր տրեստներ է վարել։ Տրանսպորտի և քաղաքացիական ավիացիայի մինիստր Հ. Ուոտկինսոնը զբաղեցրել է դիրեկտորական պոստեր հաստոցաշինական մի շարք ֆիրմաներում։

Վառելանյութի և էլեկտրաէներգիայի մինիստր Ֆ. Միլոն առաջներում եղել է արդյունաբերական 13 ընկերությունների դիրեկտոր։

Այսպիսով, բուրժուական «դեմոկրատական» ընտրական սիստեմը լայն հնարավորություն է ստեղծում ֆինանսական օլիգարխիայի համար իշխող դիրքեր գրավելու պետական ապարատում։ Պրեմիեր Մաքմիլանի կաբինետի կազմն

ակնհայտ ցույց է տալիս, որ պետական կառավարող ապարատն ամբողջապես գտնվում է մի խումբ ֆինանսական մագնատների ձեռքում։ Միանգամայն հասկանալի է, որ այդպիսի կառավարությունը կարող է ծառայել միմիայն մոնոպոլիաների շահերին։

Նույն դրությունն է մյուս կապիտալիստական երկրներում։ Այդ մասին են վկայում դե Գոլի կառավարության կազմը և նրա քաղաքականությունը։

Ֆրանսիայի պրեզիդենտ գեներալ դե Գոլը անձամբ կապված է արդյունաբերողների ազգային խորհրդի հետ։ Մինիստրների խորհրդի նախագահ Միշել Դեբրեն հանդիսանում է դե Գոլի վստահելի անձը։ Նա կապված է «Սոսիետե դը լա Պեչինյեր» և «Կոմպանի էնդյուստրիէլ պուր Աֆրիկ սենտրալ» մոնոպոլիաների հետ։ Անպորտֆել մինիստր Լուի Ժակինոն տիրում է Լազար եղբայրների բանկի ակցիաների զգալի մասին։

Արտաքին գործերի մինիստր Կուվ դը Մյուրվիլը պատկանում է սեփականատերերի մի ընտանիքի, որը դեռ XIX դարի կեսերին տիրացել էր Մարսել քաղաքի «Է Կուվ և Կօ» խոշորագույն բանկին։ Ազգային պաշտպանության մինիստր Պյեր Գիյոման հանդիսանում է նավթային հանքավայրերի հետազոտման բյուրոյի նախագահը և լեռնահանքային արդյունաբերության գլխավոր խորհրդի անդամ։

Ներքին գործերի մինիստր Միշել Մորիս-Բոկանովսկին հանդիսանում է մի շարք խոշոր ընկերությունների ակցիաների հսկող ծրարների տերերից մեկը։ Այս ցուցակը կարելի է շարունակել։ Բայց բավարարվենք այսքանով։

Հիշյալ իմպերիալիստական տերությունների կառավարությունների կազմը վկայում է այն մասին, որ պետական մոնոպոլիստական կապիտալիզմը ներկայացնում է ֆինանսական կապիտալի ավելի ռեակցիոն և ագրեսիվ խմբի շահերը, ռազմական պակտերի կազմակերպիչը և պատերազմներ հրահրողը։ Դրա ապացույցն է այդ պետությունների կողմից կազմակերպված ինտերվենցիան Եգիպտոսում (1956 թվականին), Լաոսում, Կուբայում, Թունիսում, գաղութային պատերազմը Ալժիրում։ Գեներալ դե Գոլը, որը երեսպաշտորեն իրեն հայտարարում է ֆրանսիական ժողովրդի շահերի պաշտպան, այսօր ընդառաջում է գերմանական ռևանշիստներին։

Ֆրանսիական Կոմունիստական պարտիայի XV համագումարը իր թեզիսներում միանգամայն ճիշտ որակեց դե գոլյան քաղաքականությունը՝ որպես խոշոր արդյունաբերողների և ֆինանսական մագնատների հակաազգային, հակաժողովրդական քաղաքականություն։

Ֆրանսիական տնտեսագետ Հ. Կոստոնի տվյալների համաձայն պետության քաղաքականության հսկողության գլխավոր դերում հանդես են գալիս ֆինանսական օլիգարխիայի մի քանի ներկայացուցիչներ՝ Պոպի-Դուն (Ռոտշիլդի բանկի գլխավոր դիրեկտոր), Նոելը (սահմանադրական խորհրդի նախագահ և խոշոր ֆինանսական մագնատ), Շալանդոն (դե գոլյան շարժման գաղափարախոսը և մի շարք մոնոպոլիստական միավորումների վարչության անդամ) և խոշոր ֆինանսական գործարար Միսոֆը։ ԱՄՆ-ի, Անգլիայի և Ֆրանսիայի կառավարական կաբինետների կազմը վկայում է այն մասին, որ ֆինանսական օլիգարխիան չի բավարարվում սոսկ իր դրածոները տեղավորելով պետական ապարատում, այլ անմիջականորեն ներթափանցելով պետական ապարատ՝ գրավում է նրա կառավարող պոստերը։ Իսկ դա նշանակում է ֆինանսական օլիգարխիայի դիկտատուրայի հաստատում։



Այն փաստը, որ ժամանակակից բուրժուական պետությունները շնորհիվ մոնոպոլիաների աջակցության լայն հնարավորություններ են ստացել ակտիվորեն միջամտելու երկրի տնտեսական և քաղաքական գործերին, վկայում է այն մասին, որ պետության և մոնոպոլիաների շահերը համընկնում են միմյանց հետ, ընդ որում, տնտեսության կարգավորումը և հսկողության սահմանումը պետության կողմից բացառապես բխում է մոնոպոլիաների շահերից։

Բուրժուական «դեմոկրատիան», «ժողովրդական կապիտալիզմը», «կապիտալի դեմոկրատացումը» և նման այլ սպեկուլյատիվ ֆրազներ սոսկ հետապնդում են մի նպատակ՝ սքողել ժամանակակից բուրժուական պետության հակաժողովրդական բնույթը և նրա հավատարիմ ծառայությունը մոնոպոլիաներին։

Պետական ու մասնավոր մոնոպոլիաների սերտաճմանը նպաստող գլխավոր գործոններից են ձեռնարկատերերի կազմակերպությունների ներկայացուցչական օրգանները, որոնք ձեռք բերելով իրավական անձի իրավունք, խաղում են միջնորդի դեր մոնոպոլիաների և պետության միջև։

Ներկայումս կապիտալիստական բոլոր երկրներում գոյություն ունեն արդյունաբերողների ներկայացուցչական կազմակերպություններ՝ ԱՄՆ-ում Արդյունաբերողների ազգային ասոցիացիան, Անգլիայում Արդյունաբերողների Բրիտանական ֆեդերացիան, Ֆրանսիայում Ձեռնարկատերերի ազգային խորհուրդը, Իտալիայում Արդյունաբերության իտալական կոնֆեդերացիան և այլն։

Քանի որ ձեռնարկատերերի կառավարող օրգանների ընտրական սիստեմը հիմնված է կապիտալի մեծության վրա, ապա խոշոր կապիտալիստները, ստանալով ձայների բացարձակ մեծամասնությունը, խաղում են իշխող դեր։ Այսպես, օրինակ, Ֆրանսիայում Ձեռնարկատերերի ազգային խորհրդում վճռական դերում հանդես են գալիս երկու խոշոր կարտելային միություններ՝ «Կոմիտե դե Ֆորժ» և «Կոմիտե դե Ույեր»։

Այսպիսով, տնտեսական ներկայացուցչական օրգանները միահյուսվելով պետական ապարատի հետ, այն օգտագործում են արտոնություններ ձեռք բերելու համար՝ երկաթուղային և ծովային տարիֆի զեղչում, արտահանման պարգևատրումների ստացում կամ օտարերկրյա շուկաներում մարտական գներով վաճառված ապրանքների բերած վնասների հատուցում, պետական վարկի և պատվերների ստացում և այլն։

Առաջին և երկրորդ համաշխարհային պատերազմներն ավելի նպաստեցին պետական և մասնավոր մոնոպոլիաների անձնական փոխադարձ մասնակցության սիստեմի տարածմանը և, հետևապես, պետական մոնոպոլիստական կապիտալիզմի զարգացմանը։ Ներկայումս դժվար թե գտնվի որևէ բուրժուական մինիստր կամ պետական պատասխանատու գործիչ, որը մասնակից չլինի արդյունաբերական կամ բանկային ձեռնարկություններին։

Որպես կանոն պառլամենտում վճռական դեր է խաղում ձեռնարկատերերի «ճնշող խումբը» (Լոբբի), որը հատկապես բնորոշ է ԱՄՆ-ին։ ԱՄՆ-ում ֆինանսական մագնատները արդյունաբերողների ասոցիացիայի միջոցով ո՛չ միայն սերտ կապեր են ստեղծել կառավարական ղեկավար անձերի, այլև պենտագոնի (ռազմական մինիստրության) հետ՝ հանուն պատվերների ստացման և պաշտոնաթող զինվորական վերնախավի ներկայացուցիչների ներգրավման մոնոպոլիստական միություններում։ Ձեռնարկատերերի և պետական գործիչների փոխադարձ մասնակցության հիման վրա առաջացած պետական կապի-

տալիզմը «...ոչ միայն նպաստում է մոնոպոլիստների իշխանության վիթխարի մեծացմանը, այլև, բացի սրանից, հնարավորություն է տալիս անպատիժ կերպով կատարելու ամեն տեսակ մութ և կեղտոտ գործեր, հնարավորություն է տալիս հասարակությանը կողոպտելու...» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 22, էջ 300)։

Այսպիսով, արդյունաբերողների և բանկերի ներկայացուցչական կազմակերպությունների կառավարող օրգաններն ամեն կերպ ձգտում են միավորել ներճյուղային ձեռնարկատերերին մի կազմակերպության մեջ, որը ո՛չ միայն նպաստում է արտադրության կենտրոնացմանը, այլև մոնոպոլիայի յուրահատուկ, ավելի հզոր ձևի ստեղծմանը։ Նրանք օգտագործում են գոյություն ունեցող ընտրական ցենզը (ձայների ստացումը ըստ կապիտալի մեծության), որպեսզի կառավարող օրգաններում գրավեն տիրապետող դիրքեր և դրանք ի սպաս դնեն ֆինանսական օլիգարխիայի շահերին։ «Ճնշում» գործ դնելով պետության վրա՝ նրանք գների բարձրացմամբ ապահովում են մոնոպոլ բարձր շահույթի ստացումը ֆինանսական օլիգարխիայի կողմից։ Այդ ներկայացուցչական կամ «միջպետական» կազմակերպության միջոցով խոշոր մոնոպոլիստները և նրանց դրածոները գրավում են կառավարական բարձր պաշտոններ։ Դրանց անդուլ միջոցառումներով ճնշվում են գործադուլները և ռևոլյուցիոն շարժումները։ Մոնոպոլիստները օգտագործում են պետական-մոնոպոլիստական կապիտալիզմը կապիտալի արտահանման, դեմպինգի բերած վնասների հատուցման, երկաթուղային տարիֆի և ծովային ֆրախտի իջեցման, պետությանը պատկանող ձեռնարկությունները մատչելի պայմաններով շահագործման, պետական պատվերների (գլխավորապես ռազմական) և վարկի ստացման համար։

Վերջապես, մոնոպոլիաների սերտաճումը պետական ապարատի հետ կատարվում է նրանց փոխադարձ համագործակցությամբ՝ մի կողմից ակցիաների ձեռքբերման և, մյուս կողմից, արտադրամիջոցների բուրժուական ձևական ազգայնացման ու պետական արտադրական ձեռնարկությունները խոշոր մոնոպոլիաներին շահագործման հանձնելու միջոցով։ 1960 թվականին Արևմտյան Գերմանիայում կանցլեր Ադենաուերի կառավարությունն ընդունեց օրենք պետական «Ֆոլկսվագըն» խոշորագույն ավտոգործարանի վերամասնավորացման մասին, մանր ակցիաների բացթողման հիման վրա։

Ըստ էության այդ միջոցառումը նշանակում էր ոչ թե կապիտալի «դեմոկրատացում», ինչպես ներկայացնում են բուրժուական գաղափարախոսները, այլ նրա մոբիլիզացում և պետական մոնոպոլիայի փոխարկում մասնավոր մոնոպոլիայի։

Մանր ակցիաների բացթողման պրակտիկան որպես կապիտալի մասսայական մոբիլիզացիա նոր երևույթ չէ։ Դեռ անցյալ դարի իննսունական թվականներին այն կիրառվել է Անգլիայում։ Միանգամայն հասկանալի է, թե ինչու 1900 թվականին Սիմենսը, գերմանական այդ խոշորագույն ֆինանսական մագնատը, ռայխստագում հայտարարեց, որ «Բրիտանական իմպերիալիզմի հիմքը կազմում է մեկ ֆունտ ստեռլինգանոց ակցիան»։

Այդ գործարքն ակնառու վկայում է այն մասին, որ Արևմտյան Գերմանիայում ևս պետական մոնոպոլիստական կապիտալիզմը, որպես բուրժուական պետության թելադրող ուժ իրենից ներկայացնում է պետական և մասնավոր մոնոպոլիաների համագործակցություն։

Պետական և մասնավոր մոնոպոլիաների շահերի սերտաճման մասին են վկայում բուրժուական պետությունների մի շարք միջոցառումները հետպատե-



րազմյան շրջանում։ Տնտեսական մեկուսացման քաղաքականությունը ՍՍՌՄ-ի և ժողովրդական դեմոկրատիայի երկրների դեմ, Անգլիայի ռազմական ուժերի սպառնալից տեղաշարժը Իրանի սահմանագլխում՝ 1951 թվականին անգլո-իրանյան նավթային ընկերության «ազգայնացման» կապակցությամբ, անգլո-ֆրանսիական ինտերվենցիան Եգիպտոսի դեմ 1956 թվականին, ԱՄՆ-ի ռազմական ինտերվենցիան ռևոլյուցիոն Կուբայի դեմ և այլն։

Այդ նշանակում է, որ խոշոր մոնոպոլիաները պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի միջոցով օգտագործում են պետության դիվանագիտական լծակները և ռազմական ուժերը ճնշում գործադրելու օտար երկրների վրա, հանուն շուկաների և հումքի բազաների տիրապետման, որը հանդիսանում է մոնոպոլ բարձր շահույթի գլխավոր աղբյուրներից մեկը։

Պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի զարգացման տենդենցն առաջ է բերում քաղաքական ռեակցիա, ֆաշիզմի վերականգնման հնարավորություններ, սպառազինությունների չտեսնված մրցավազք, աշխատավորների շահագործման սաստկացում, սպառնում է տարբեր սիստեմների խաղաղ գոյակցությանը։

Պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի գործունեության կարևորագույն ոլորտներից մեկը ռազմական արդյունաբերությունն է։ Միլիտարիզմի անընդհատ աճը հենց պետական մոնոպոլիստական կապիտալիզմի վարած հակաժողովրդական քաղաքականության հետևանքն է։ Անհերքելի է, որ «Իմպերիալիստական պետությունները խաղաղ ժամանակ էլ հսկայական զինված ուժեր են պահում։ Ռազմական ծախսերը կլանում են պետական բյուջեների ավելի ու ավելի մեծ մասը։ Իմպերիալիստական պետությունները վերածվում են միլիտարիստական, ռազմա-ոստիկանական պետությունների. ռազմականացումն ընդգրկում է բուրժուական հասարակության ողջ կյանքը»։

ՍՄԿԿ Ծրագրի այս դրույթը ժամանակակից պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի իրական վիճակի ճշմարտացի գնահատականն է։ Եվ որքան էլ բուրժուազիայի գաղափարախոսները ճգնեն ապացուցել կապիտալիզմի «դեմոկրատիկ» բնույթը, փաստը մնում է փաստ, որ իմպերիալիստական տերություններում բարգավաճող ֆինանսական օլիգարխիան հարստանում է առասպելական չափերով, որպիսի պայմաններում «պետությունը դառնում է մոնոպոլիստական բուրժուազիայի գործերի կառավարման կոմիտե», որն ամեն գնով ուզում է փրկել կապիտալիստական հասարակարգը վերահաս կործանումից։

Մի անգամ ևս անդրադառնալով պետական մոնոպոլիստական կապիտալիզմի էությանը, Ն. Ս. Խրուշչովը պարտիայի XXII համագումարում պարտիայի Ծրագրի մասին տված իր զեկուցման մեջ ընդգծեց. «...որ պետական-մոնոպոլիստական կապիտալիզմը բնավ չի նշանակում կապիտալիստական զարգացման որևէ նոր, իմպերիալիզմից տարբեր ստադիայի առաջացում, չի նշանակում բուրժուական պետության վերածում միջնորդ դատավորի, ինչ-որ վերդասակարգային ուժի, որն իբր միատեսակ չափով պաշտպանում է մասնավոր և հասարակական շահերը, աշխատանքի և կապիտալի շահերը։ Պետական-մոնոպոլիստական կապիտալիզմը դրսևորվում է մոնոպոլիաների ուժի և պետության ուժի՝ միասնական մեխանիզմում միաձուլվելու մեջ, որը ազգի կյանքի բոլոր կողմերը ենթարկում է ֆինանսական օլիգարխիայի շահերին։ Էկոնոմիկայի հիմքը մնում են մոնոպոլիաները։ Եվ ոչ միայն առանձին երկրների շրջա-

*նակներում, այլև ամբողջ կապիտալիստական աշխարհի մասշտաբով։ Բավական է ասել, որ համաշխարհային կապիտալիստական արտադրության գրեթե մեկ երրորդը կենտրոնացված է միայն 200 խոշորագույն մոնոպոլիաների ձեռքում։ Վիթխարի ծովահրեշների պես մոնոպոլիաները իրենց շոշափուկների մեջ են առել ամբողջ երկրներ ու մայրցամաքներ, դուրս ծծելով ժողովուրդների կենսահյութերը»։*

*Այսպիսին է պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի մարքսիստական-լենինյան բնութագրությունը։*

*Կապիտալիզմի և ոչ մի պաշտպան չի կարող հերքել այն անկասկածելի փաստը, որ այժմ «ամբողջությամբ վերցրած կապիտալիզմը ավելի ու ավելի է կաշկանդում ժամանակակից արտադրողական ուժերի զարգացումը», որ մոնոպոլիստական կապիտալի իշխանության պայմաններում, տեխնիկայի «առաջադիմությունը շուռ է գալիս բանվոր դասակարգի դեմ», խորացնելով նրա թշվառությունը, կործանելով միլիոնավոր մանր արտադրողների։*

*Այժմ արդեն հնարավոր չէ անտեսել այն ճշմարտությունը, որ «Մոնոպոլիստական բուրժուազիան անօգուտ պալար է դարձել հասարակական օրգանիզմի վրա, ավելորդ է դարձել արտադրության պրոցեսի համար»։ Սակայն որքան էլ ԱՄՆ-ը ջանան «փրկել» կապիտալիզմը, նրանց «համաշխարհային տիրապետության նկրտումների լիակատար սնանկությունը» ակներև է։ Իրենց երբեմնի հզորությունը կորցրած Մեծ Բրիտանիան, Ֆրանսիան, Գերմանիան և Ճապոնիան, ինչպես նաև ԱՄՆ-ը գլորվում են դեպի մայրամուտը։ Մոնոպոլիստական բուրժուազիային չի կարող փրկել նույնիսկ միջուկային զենքը։ Այժմ խաղաղասեր մարդկության գլխավոր հարվածն ուղղվում է կապիտալիստական մոնոպոլիաների դեմ իբրև պատերազմի հրձիգների։ Սոցիալիստական ճամբարն իր անպարտելի հզորությամբ ո՛չ միայն սանձահարում է իմպերիալիստներին, այլև լիակատար հող է պատրաստում ամբողջ մարդկությանը կապիտալիզմի մագիլներից փրկելու և կոմունիզմի թագավորություն հաստատելու համար։*

«Ֆինանսական կապիտալի ճնշումը անընդհատ ուժեղանում է։ Հսկա մոնոպոլիաները, իրենց ձեռքում կենտրոնացնելով հասարակական արտադրության գերակշռող մասը, տիրապետում են ազգի կյանքին։ Միլիարդատերերի և միլիոնատերերի մի խումբ անարգել կերպով տնօրինում է կապիտալիստական աշխարհի ամբողջ հարստությունը, ամբողջ ազգերի կյանքը մանր դրամ է դարձնում հանուն իր շահամոլական գործարքների։ Ֆինանսական օլիգարխիան առասպելական չափերով հարստանում է։ Պետությունը դարձել է մոնոպոլիստական բուրժուազիայի գործերի կառավարման կոմիտե։ Խիստ ուժեղանում է ամբողջ տնտեսական կյանքի բյուրոկրատացումը։ Պետական-մոնոպոլիստական կապիտալիզմը մոնոպոլիաների ուժը և պետության ուժը միավորում է միասնական մեխանիզմի մեջ՝ մոնոպոլիաները հարստացնելու, բանվորական շարժումը և ազգային-ազատագրական պայքարը ճնշելու, կապիտալիստական հասարակարգը փրկելու, ագրեսիվ պատերազմներ սանձազերծելու նպատակով» (ՍՄԿՊ ԾՐԱԳՐԻՑ)։

# ԱՊԱԳԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻՆՆ Է

## Կ. ՎԱՐԴԱՆՅԱՆ

Այո՛, ապագան կոմունիստներինն է, Խաղաղության, Աշխատանքի, Ազատության, Հավասարության, Եղբայրության, Երջանկության, մարդկության պայծառ ապագայի անձնուրաց դրոշակակիրներինը։

Կես դար առաջ կապիտալիզմն անբաժան կերպով տիրապետում էր ամբողջ աշխարհում։ Մեծ հոկտեմբերի կենսատու ջերմության շնորհիվ սկսված ձնհալից հետո պատկերը փոխվեց։ Եվ այժմ, պատմության օբյեկտիվ զարգացման հարվածների տակ, իմպերիալիզմը կորցրել է իր քաղաքական ու տնտեսական վերահսկողությունը հարյուր միլիոնավոր մարդկանց վրա։ Օրեցօր նեղանում է հոգևարքի մեջ գտնվող իմպերիալիզմի գործունեության ոլորտը։ Սոցիալիզմի հզոր ճամբարը, նրա առանձնացող ուժերը և կոմունիզմի հեղափոխիչ գաղափարները բազում տեղերից փշրել են իմպերիալիզմի ողնաշարը։ Մարքսիզմ-լենինիզմի գաղափարներն անկասելի ուժով տարածվում են ամբողջ աշխարհում։

Բանվոր դասակարգի ռևոլյուցիոն շարժման, կոմունիստական և բանվորական պարտիաների հետագա ակտիվ գործունեության համար վիթխարի նշանակություն ունեն ՍՄԿՊ XXII համագումարի պատմական որոշումները, կոմունիզմի կառուցման հոյակապ ծրագիրը։ Մեր պարտիայի XXII համագումարը իրավամբ կարելի է համարել աշխարհի կոմունիստների համախմբվածության, նրանց ուժի, մարդկության պայծառ ապագայի համար մղվող պայքարում նրանց անսասան կամքի վառ դրսևորում։

ՍՄԿՊ XXII համագումարին մասնակցեցին արտասահմանյան կոմունիստական և բանվորական 80 պարտիաների պատվիրակություններ, որոնց ղեկավարները ելույթներ ունեցան ու իրենց հուզիչ, ջերմ խոսքն ասացին մեր պարտիայի, կոմունիզմ կառուցող սովետական ժողովրդի հասցեին։ Իսկ որտեղի՞ց են բխում այդ սերն ու հարգանքը, ո՞րն է դրանց ակունքը։ Մեր պարտիան իր գոյության ամբողջ ընթացքում պատվով է կատարել հասարակության ռևոլյուցիոն վերափոխման առաջամարտիկի իր միսիան, հերոսական պայքարով ու աշխատանքով ձեռք է բերել զարմանահրաշ հաջողություններ, իսկ այժմ իրականություն է դարձնում ամբողջ աշխարհի կոմունիստների նվիրական երազանքը՝ կոմունիզմը։

Ահա թե ինչու, եղբայրական բոլոր պարտիաները մեր հաղթանակները, մեր հաջողությունները համարում են միջազգային կոմունիստական շարժման հաղթանակներ ու հաջողություններ։ Աշխարհի բոլոր կոմունիստները միահամուռ հավանություն են տալիս մեր պարտիայի նոր Ծրագրին, որը տոգորված է սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ոգով։ Այդ Ծրագիրը միայն մեր պարտիայի, մեր ժողովրդի ծրագիրը չէ, այն ուղենիշ աստղ է եղբայրական բոլոր պարտիաների համար։ Լենինյան այդ նոր Ծրագրի իրականացումը բարեբար պայմաններ կստեղծի համաշխարհային սոցիալիզմի հաղթանակի համար, այն կհանդիսանա մարքսիզմ-լենինիզմի գաղափարների տրիումֆը։ Եվ, ինչպես համագումարում հիանալի կերպով ասաց Լենինյան Միացյալ բանվորական պարտիայի առաջին քարտուղար Վլադիսլավ Գոմուլկան, «...կոմունիզմի կառուցման ծրագրի իրականացումը Սովետական Միությունում նոր էտապ կբացի մարդկության պատմության մեջ, մեծ չափով կբարձրացնի կապիտալիստական երկրների աշխատավորների դասակարգային գիտակցությունը, մինչև այժմ չտեսնված պայմաններ կստեղծի ամբողջ աշխարհում սոցիալիզմի հաղթանակի համար»։

Մեր պարտիայի ու ժողովրդի տիտանական աշխատանքի յուրաքանչյուր հաջողություն նոր ոգևորություն, նոր ուժ ու եռանդ կտա միջազգային կոմունիստական շարժմանը։ Օրեցօր ավելի ուժգին կհնչեն սովետական ժողովրդի կոմունիստական աշխատանքի զարկերը, որոնք աշխարհի բոլոր աշխատավորներին ոտքի կհանեն ավելի հաստատակամորեն պայքարելու իրենց երջանկության և լուսաշող ապագայի համար։ Իսկ «Դա,—ինչպես ասաց Պ. Տոլյատտին,—նշա-

պառլամենտի կազմում կա 16, իսկ սենատում՝ 4 կոմունիստ: Սենատորների թվում է նաև Չիլիի Կոմպարտիայի Կենտկոմի գլխավոր քարտուղար Լուիս Կորվալանը:

Ընդհատակի ծանր պայմաններում է գործում Արգենտինայի Կոմունիստական պարտիան: Բայց կոմունիստները և հայրենասիրական մյուս ուժերը ակտիվորեն շարունակում են պայքարը քաղաքական և դեմոկրատական ազատությունների, երկիրը ամերիկյան իմպերիալիզմի կապանքներից ազատելու, արգենտինյան ժողովրդի սոցիալական առաջադիմության համար: Ամբողջ երկրում լայնորեն տարածվել են գործադուլային շարժումները և աշխատավորների մասսայական ելույթները: Այս տարվա հոկտեմբերի 6-ին տեղի ունեցած գործադուլին մասնակցեց ավելի քան չորս միլիոն մարդ:

Արգենտինայի Կոմունիստական պարտիան անխոնջ կերպով պայքարում է բանվոր դասակարգի լիակատար միասնության, արհմիութենական դեմոկրատիայի, բանվորա-գյուղացիական դաշինքի, ազգային-դեմոկրատական, հակաիմպերիալիստական, հակաֆեոդալական լայն ճակատ ստեղծելու, ամբողջ աշխարհի խաղաղության և դեմոկրատական կոալիցիոն կառավարություն ստեղծելու համար:

1960 թվականի հոկտեմբերի 8-ին Ուրուգվայի Կոմունիստական պարտիայի 40-ամյակի առթիվ կայացած բազմամարդ միտինգում կոմպարտիան աշխատավոր մասսաներին կոչ արեց միավորվել երկրի դեմոկրատական վերակառուցման պլատֆորմի շուրջը: Կոմունիստների լոզունգները մեծ ազդեցություն են գործում երկրում տեղի ունեցող իրադարձությունների վրա: Վերջին հինգ տարում Ուրուգվայում բռնկել է քաղաքական բնույթի 16 ընդհանուր գործադուլ: Միայն 1960 թվականի օգոստոսի 15-ից մինչև սեպտեմբերի 15-ը տեղի է ունեցել երեք ընդհանուր գործադուլ, որոնց մասնակցել են ավելի քան 250 հազար բանվոր և մոտ 50 հազար ուսանող: Կոմունիստների հաջող աշխատանքի շնորհիվ բանվոր դասակարգը, բոլոր աշխատավորները հասել են լուրջ հաջողությունների: Ուրուգվայի Գլխավոր ժողովի ներկայացուցիչների պալատում Կոմպարտիան ունի 2 տեղ: Երկրի քաղաքական և հասարակական կյանքում մեծ դեր է խաղում Կոմունիստական պարտիայի Գործադիր Կոմիտեի օրգան «Էստուդիոս» ժուռնալը, որը լայնորեն տարածվում է ինչպես Լատինական Ամերիկայում, այնպես էլ Եվրոպայում:

Արևելքի երկրների կոմպարտիաների համար հրատապ նշանակություն ունեն ազգային անկախության ամրապնդման, դեմոկրատիայի զարգացման և ժողովրդական մասսաների սոցիալական առաջադիմության համար մղվող պայքարի հարցերը:

Ասիայում քաղաքական հզոր ուժ է դարձել Ինդոնեզիայի Կոմունիստական պարտիան, որն ունի 2 միլիոն անդամ: Վերջին տարիների ընթացքում կոմպարտիան զգալիորեն ընդլայնել է կապը մասսաների հետ: Կոմունիստները մեծ աջակցություն են ստանում աշխատավորների հասարակական լայն կազմակերպությունների կողմից, որոնցում ընդգրկված են մոտ 10 միլիոն մարդ: Կոմպարտիայի հեղինակության ու ազդեցության մասին է վկայում այն փաստը, որ 1957—1958 թթ. իշխանության տեղական օրգանների ընտրությունների ժամանակ կոմունիստ թեկնածուները ստացան ավելի քան 8 միլիոն ձայն (ընդհանուր ձայների 20 տոկոսը), այսինքն՝ 2 միլիոնով ավելի, քան 1955 թվականի պառլամենտական ընտրություններում: 1960 թվականին պրեզիդենտ Սուկառնոյի կազմած նոր պառլամենտում կոմունիստներն իրենց ներկայացուցիչների թվով (30 մանդատ) քաղաքական պարտիաների մեջ գրավում են երկրորդ տեղը:

Ինդոնեզիայի Կոմպարտիայի Կենտկոմի նախագահ Այդիտը երկրի իշխանության բարձրագույն օրգանի՝ ժամանակավոր ժողովրդական կոնսուլտատիվ կոնգրեսի նախագահի տեղակալն է: Կոմպարտիայի մի քանի ղեկավար գործիչներ մտնում են պրեզիդենտին առընթեր Գերագույն կոնսուլտատիվ խորհրդի կազմի մեջ: Կոմունիստները ղեկավար մասնակցություն են ցուցաբերում Ինդոնեզիայի Ազգային ճակատում:

Ներկայումս, երկրում քաղաքական լարված պայքարի պայմաններում, երբ ռեակցիոն ուժերը փորձում են պառակտել Ազգային ճակատի ուժերը, կոմունիստները հետևողականորեն պայքարում են պրոգրեսիվ-ազգային բոլոր ուժերի համախմբման, տնտեսական անկախության և առաջադիմության ուղիով երկրի զարգացման համար:

Աշխատավոր մասսաների շրջանում մեծ ժողովրդականություն է վայելում Կոմպարտիայի տնտեսական ծրագիրը, որի հիմնական դրույթներն ընդունվել են որպես ազգային տնտեսության կազմակերպման պաշտոնական սկզբունքներ և հաստատվել ժամանակավոր կոնսուլտատիվ կոնգրեսի կողմից:

Կոմունիստական շարժման մարտական ջոկատներից մեկը Հնդկաստանի Կոմունիստական պարտիան է, որի դերը վերջին տարիներին մեծացել է երկրի քաղաքական կյանքում, աճել է նրա հեղինակությունը մասսաների շրջանում: Այսպես, օրինակ, 1957 թվականին պառլամենտի և նահանգների օրենսդրական օրգանների ընտրություններում կոմունիստներն ստացան ավելի քան 12 միլիոն ձայն: Կոմպարտիայի ղեկավարությամբ են գործում աշխատավորների խոշոր կազմակերպություններ՝ արհմիութենական, գյուղացիական և երիտասարդական մի շարք միավորումներ:

Երկու տարի շարունակ հնդիկ կոմունիստները գլխավորում էին Քերալա նահանգի կառավարությունը: Այդ ժամանակամիջոցում կոմունիստներն իրականացրին ժողովրդի շահերից բխող մի շարք կարևոր միջոցառումներ: Թեև ռեակցիային հաջողվեց խախտել կոնստիտուցիան և կոմունիստներին զրկել նահանգը կառավարելու իրավունքից, այնուամենայնիվ նրան չհաջողվեց նսեմացնել Կոմունիստական պարտիայի հեղինակությունը: 1960 թվականի սկզբին, պառլամենտական լրացուցիչ ընտրությունների ժամանակ, կոմունիստները 1700 հազար ձայն ավելի ստացան, քան 1957 թվականին:

1961 թվականի ապրիլին գումարված Հնդկաստանի Կոմպարտիայի VI համագումարը, ելնելով երկրի իրադրությունից, նոր խնդիրներ դրեց կոմունիստների առջև: Պայքարելով կառավարության ռեակցիոն տենդենցների դեմ, կոմպարտիան պաշտպանում է նրա առաջադիմական միջոցառումները, դրական չեզոքության քաղաքականությունը:

Համագումարը մեծ ուշադրություն դարձրեց բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքըն ամրապնդելու, գյուղում կոմունիստների աշխատանքը բարելավելու հարցերին: Կոմպարտիան բոլոր գծերով պայքարում է մինչև վերջ հասցնելու ազգային ռևոլյուցիան, սահմանափակելու իմպերիալիստական մոնոպոլիաների ներխուժումը, հողը հանձնելու այն մշակողներին, ընդլայնելու դեմոկրատիան բոլոր բնագավառներում և վարելու անկախ, խաղաղասիրական, հակագաղութային արտաքին քաղաքականություն:

Քաղաքական ռեպրեսիաների և ընդհատակի ծանր պայմաններում են գործում Հարավարևելյան Ասիայի, Մերձավոր և Միջին Արևելքի մի շարք երկրների՝ Բիրմայի, Պակիստանի, Մալայայի, Տաիլանդի, ՄԱՌ-ի, Թուրքիայի, Իրանի և այլ երկրների կոմպարտիաները: Այս երկրներում ռեակցիան ջանք չի խնայում «արմատախիլ անելու կոմունիզմը», արգելելու կոմունիստական գաղափարների տարածումը: Բայց ո՛չ մի ռեպրեսիա, ո՛չ մի տեռոր չեն կարող կասեցնել սոցիալական ազատագրության համար մղվող պայքարը:

Կոմունիստական գաղափարներն անկասելի ուժով տարածվում են «սև» աշխարհամասում՝ Աֆրիկայում: Եռանդուն աշխատանք են ծավալել և ավելի են ընդարձակել իրենց գործունեության ոլորտը Ալժիրի, Թունիսի կոմպարտիաները: Գվինեայում, Գանայում, Մալիում և մի շարք այլ երկրներում ստեղծվել են դեմոկրատական ուղղության քաղաքական պարտիաներ ու կազմակերպություններ, որոնց պատվիրակությունները մասնակցեցին ՍՄԿԿ XXII համագումարին և ողջունեցին այն:

Ազգային ազատագրության և անկախության համար պայքարող երկրների կոմպարտիաները վստահորեն քայլում են բանվոր դասակարգի, աշխատավոր մասսաների ավանգարդում և, հաղթահարելով դժվարությունները, վերջին հարվածներն են հասցնում կործանման դատապարտված գաղութակալությանը:

Կապիտալիստական զարգացած երկրների կոմպարտիաների խնդիրն է՝ ժողովրդի բոլոր ուժերը համախմբել պայքարելու պետական մոնոպոլիստական կապիտալիզմի դեմ, կատարել դեմոկրատական վերափոխումներ, տապալել մոնոպոլիաների տիրապետությունը: Այդ երկրների կոմպարտիաներն անձնազոհ պայքար են մղում հանուն սոցիալիզմի հաղթանակի, բոլոր գծերով պաշտպանում են բանվոր դասակարգի ու աշխատավորների շահերը, ժողովրդի դեմոկրատական իրավունքներն ու ազատությունները:

Ֆրանսիական ժողովրդի կենսական շահերի արտահայտիչն է Ֆրանսիայի Կոմունիստական պարտիան (407 հազար մարդ):

Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո ֆրանսիական իմպերիալիզմը չափազանց թուլացավ: Ստեղծված դժվարությունից դուրս գալու համար մոնոպոլիստական բուրժուազիան վճռեց վերացնել պառլամենտական դեմոկրատիան և հաստատել անձնական իշխանության ռեժիմ: Այժմ Ֆրանսիայի պառլամենտը, Մորիս Թորեզի արտահայտությամբ, դարձել է ֆիկցիա: Պրեզիդենտական ռեժիմն աստիճանաբար վերածվում է փաստական դիկտատուրայի: Այդ ռեժիմի հովանու տակ խռովարարները թափանցում են պետական ապարատի մեջ, ստեղծելով ֆաշիստական ռեակցիայի վտանգ:

Ֆրանսիայի Կոմպարտիայի XVI համագումարը (1961 թվականի մայիս) ընդգծեց, որ արդի էտապում պարտիայի գլխավոր նպատակն է՝ պայքարել անձնական իշխանության դեմ, վերականգնել դեմոկրատիան: «Մենք պատրաստ ենք,— մեր պարտիայի համագումարում ասաց Մորիս Թորեզը,— բոլոր ասպարեզներում համագործակցել բոլոր պարտիաների, բոլոր խմբերի, բոլոր մարդկանց հետ, որոնք իրենց առջև դնում են կամ կդնեն հետևյալ նպատակները. դեմոկրատիայի վերականգնում և նորացում, ֆաշիստական դավադրության վերացում, խաղաղություն Ալժիրում, խաղաղություն Եվրոպայում և ամբողջ աշխարհում»:

Ո՛չ հակադեմոկրատական կոնստիտուցիան, ո՛չ ֆաշիստական տարրերի աշխուժացումը, ո՛չ

կոմունիստական մամուլի հետապնդումները ի վիճակի չեն ֆրանսիական կոմունիստներին մեկուսացնել մասսաներից։ Ֆրանսիայի Կոմպարտիան օրեցօր ամրապնդում է իր շարքերը։

Փառապանծ ուղի է անցել Իտալիայի Կոմունիստական պարտիան, որի շարքերում բանվոր դասակարգի գործի համար մարտնչում են մոտ 1 միլիոն 800 հազար կոմունիստներ։ Այժմ Իտալիայի կյանքում չկա այնպիսի հարց, որով չզբաղվեն կոմունիստները, որի վրա ներգործություն չունենան նրանք։ Լինեն դրանք համազգային խոշոր պրոբլեմներ, ինչպես, օրինակ, Հարավի հետամնացության հաղթահարումը, ագրարային ռեֆորմը, թե տեղական նշանակություն ունեցող հարցեր, միշտ գտնվում են Կոմպարտիայի ուշադրության կենտրոնում, միշտ հուզում և հետաքրքրում են նրան։ Վերջին ժամանակներս պարտիան ձգտում է, որպեսզի նրա մարզային կոմիտեները ավելի համարձակորեն մշակեն տեղական քաղաքականության պրոբլեմները, ավելի մեծ նախաձեռնություն հանդես բերեն ժողովրդի շահերին վերաբերող բոլոր հարցերում։ Ահա այս բազմակողմանի աշխատանքն է, որ Իտալիայի Կոմպարտիային դարձրել է ազգային խոշոր ուժ և հսկայական չափով մեծացրել նրա ազդեցությունը աշխատավոր լայն մասսաների վրա։ Պատահական չէ, որ ինչպես 1958 թվականի պառլամենտական ընտրություններում, այնպես էլ 1960 թվականի մունիցիպալ օրգանների ընտրություններում յուրաքանչյուր չորրորդ ընտրող քվեարկեց Կոմպարտիայի թեկնածուների օգտին։ Խոսելով իտալական կոմունիստների խնդիրների մասին, Պալմիրո Տոլյատտին ՍՄԿՊ XXII համագումարում ասաց. «Մենք ուզում ենք իտալական ժողովրդի համար բացել սոցիալիզմի ուղին, քանի որ մենք գիտենք, որ սոցիալիզմը ամբողջ մարդկության ապագան է, որ սոցիալիզմը ճիշտ լուծում կտա այն բոլոր պրոբլեմներին, որոնք հուզում են մեր հայրենիքին»։

Ճապոնիայի Կոմպարտիան պայքարի կրակն ուղղում է երկու գլխավոր թշնամիների՝ ամերիկյան իմպերիալիզմի և ճապոնական մոնոպոլիստական կապիտալի դեմ։ Երկրում գնալով ուժեղանում է դժգոհության ալիքը ամերիկյան իմպերիալիզմի դեմ։

Ճապոնիայի Կոմպարտիան և երկրի դեմոկրատական ուժերը ստեղծել են համատեղ պայքարի ավելի քան երկու հազար կազմակերպություններ, որոնք միասնական ճակատի մեջ միավորել են մի քանի միլիոն աշխատավորների։ Այդ կազմակերպությունները մասսայական պայքար ծավալեցին ճապոնա-ամերիկյան ռազմական պայմանագրի դեմ։ Այդ պայքարի արդյունքը եղավ այն, որ ձախողվեց պրեզիդենտ Էյզենհաուերի այցը Ճապոնիա և տապալվեց Կիշիի կառավարությունը։ Երկրի դեմոկրատական ուժերի միասնական ճակատը վճռականորեն շարունակում է պայքարը հանուն անկախ, դեմոկրատական և խաղաղասեր Ճապոնիայի ստեղծման։

Ճապոնիայի Կոմպարտիան դարձել է հզոր, կազմակերպված ուժ, աճել է նրա ազդեցությունը բանվոր դասակարգի վրա։ Վերջին երկու տարում պարտիայի անդամների թիվն ավելացել է ավելի քան երկու անգամ. այժմ կոմպարտիայի շարքերում կա 100 հազար մարդ։

Ճապոնիայի Կոմպարտիայի VIII համագումարը (1961 թ. հուլիս) ընդունեց պարտիայի նոր ծրագիր, որը կոմունիստներից պահանջում է պայքարել պատերազմի քաղաքականության դեմ, միլիտարիզմի և իմպերիալիզմի վերածնման, ռեակցիայի և աշխատավոր ժողովրդի շահագործման դեմ։ Կոմպարտիան ընթանում է հանուն անկախության, դեմոկրատիայի, խաղաղության և չեզոքության պայքարի առաջին շարքերում։

Խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի համար մղվող պայքարում լուրջ հաջողությունների են հասել նաև Մեծ Բրիտանիայի, Ֆինլանդիայի, Բելգիայի, Դանիայի և կապիտալիստական մյուս երկրների կոմունիստական պարտիաները։

Միջազգային կոմունիստական շարժման համար կենսական կարևոր նշանակություն ունի նրա շարքերի միասնությունը, որը խարսխվում է պրոլետարական ինտերնացիոնալիզմի, մարքսիզմ-լենինիզմի սկզբունքների վրա։ Այդ նշանաբանով ընթացավ ՍՄԿՊ XXII համագումարը, որտեղ կոմունիստական և բանվորական եղբայրական պարտիաները դատապարտեցին Ալբանիայի Աշխատանքի պարտիայի ղեկավարների պառակտիչ գործողությունները։

Աշխարհի բոլոր կոմունիստները հոծ շարքերով առաջ են գնում։ Ո՛չ մի արգելք, ո՛չ մի դժվարություն չի կարող կասեցնել նրանց առաջընթացը։ Մարդկության պայծառ վաղը՝ կոմունիզմը, անխուսափելիորեն կհաղթանակի ամբողջ աշխարհում։ Ահա թե ինչու մենք ասում ենք՝ զուր են ձեր ճիգերը, պարոնայք իմպերիալիստնե՛ր՝ հակակոմունիզմի դրոշակակիրնե՛ր, ձեր երգը երգված է, կոմունիզմի ճառագայթները լուսավորում են ամբողջ մարդկության ուղին։ Ապագան կոմունիստներինն է։

---

## ՀԼԿԵՄ ՔԱՌԱՍՈՒՆ ՏԱՐԻՆ

# ՊԱՐՏԻԱՅԻ ՀԱՎԱՏԱՐԻՄ ՕԳՆԱԿԱՆԸ

Վ. ԴԱՐԲԻՆՅԱՆ

ՀԼԿԵՄ Կենտկոմի քարտուղար

*Համամիութենական Լենինյան Կոմունիստական Երիտասարդական Միությունը հանդիսանում է մեր պարտիայի հավատարիմ օգնականը և ռեզերվը, կոմունիզմի երիտասարդ կառուցողների մարտական ջոկատը։ Սովետական ժողովուրդն իրավամբ հպարտանում է իր երիտասարդությամբ։ Բարձր գնահատելով կոմերիտմիության, մեր փառապանծ երիտասարդության գործունեությունը, ՍՄԿՊ XXII համագումարի ամբիոնից ընկեր Ն. Ս. Խրուշչովն ասաց.*

*«Մենք բոլորս բարձր ենք գնահատում պարտիայի մարտական օգնականի, պանծալի Լենինյան Կոմունիստական Երիտասարդական Միության գործունեությունը։ Նրա հետ է կապված մեզանից շատերի կյանքը, շատ կոմունիստներ անցել են կոմերիտմիության դպրոցը։ Կոմերիտմիությունը մեր ապագան է, մեր ռեզերվը։ Սոցիալիստական շինարարության բոլոր էտապներում սովետական երիտասարդությունը, կոմերիտականները ցուցաբերել են պարտիայի առաջադրած խնդիրների հստակ ըմբռնում, նրանք իրենց աշխատանքով հաստատում են, որ ռևոլյուցիոն մեծ տրադիցիաների արժանավոր ժառանգորդներն են, իրենց հայրերի ու մայրերի փառավոր գործերի շարունակողը»։*

*Սովետական քաջարի երիտասարդության առաջավոր շարքերում են նաև Սովետական Հայաստանի պատանիներն ու աղջիկները, որոնք իրենց ողջ կյանքով մշտապես հավաստել են իրենց անսահման նվիրվածությունն ու հավատարմությունը լենինյան պարտիայի վեհ գործին։*

*Լրանում է ՀամԼԿԵՄ մարտական ջոկատներից մեկի՝ Հայաստանի կոմերիտմիության քառասուն տարին, որը հայ ժողովուրդը նշում է որպես իր հիշարժան տարեթվերից մեկը։ Եվ ինչպե՛ս հպարտությամբ ու բերկրանքով չցնծա մարդու սիրտը, երբ մեզնից յուրաքանչյուրի աչքի առջև չորս տասնամյակ շարունակ մեր ժողովրդի երջանկության համար ապրում, աշխատում և պայքարում է նրա սիրասուն զավակների միշտ երիտասարդ ու խիզախ սերունդը՝ լենինյան կոմերիտմիությունը։*

*Սովետական Հայաստանի երիտասարդ հայրենասերների փառավոր տոնը նշվում է մի այնպիսի ժամանակաշրջանում, երբ սովետական ժողովուրդը, զինված ՍՄԿՊ XXII համագումարի պատմական որոշումներով, խանդավառված ժողովրդական երջանկության պայծառ ու կենսասփյուռ հեռանկարներով, ձեռնամուխ է եղել դրանց կենսագործմանը։*

*Պարտիայի նոր Ծրագիրը խանդավառել ու թևավորել է նաև մեր պատանիներին ու աղջիկներին, նրանց տոգորել պարտիայի մեծ կանխագծումները*

հաջողությամբ կենսագործելու վճռականությամբ։ Կառուցել և ապրել կոմունիզմի օրոք՝ պարտիայի հռչակած այս հանդիսավոր կոչի իրականացման մեջ է տեսնում մեր երիտասարդությունն իր կյանքի իմաստը, իր երջանկության բանալին։ Խիզախել, անվեհեր մագլցել գիտության գագաթները, ստեղծել նոր տեխնիկա, հավաքել հարուստ բերք, այսօր աշխատել ավելի լավ, քան երեկ, իսկ վաղը՝ ավելի լավ, քան այսօր. ահա թե ինչի է ձգտում մեր հերոսական օրերի երիտասարդ ժամանակակիցը։

Այսօր, երբ մենք մի հետադարձ հայացք ենք նետում կոմերիտմիության անցած ուղու վրա, այն մեր առջև պատկերվում է որպես խիզախումներով ու հերոսապատումներով լի մի անջնջելի պատմություն։ Հայաստանի կոմերիտմիության հերոսական տարեգրությունը անխզելիորեն կապված է Հայաստանի Կոմունիստական պարտիայի պատմության՝ սոցիալիզմի և կոմունիզմի համար հայ ժողովրդի մղած անձնուրաց պայքարի պատմության հետ։ Նա եղել ու մնում է Կոմունիստական պարտիայի մարտական ռեզերվն ու հավատարիմ հերթափոխը։ Հայաստանի կոմերիտմիությունը կոփվել ու առնացել է ռևոլյուցիոն պայքարի քուրայում, սոցիալիզմի կառուցման դժվարին ու հերոսական աշխատանքի տարիներին։

ՀԼԿԵՄ-ը ծնունդ է առել հայ ժողովրդի պատմության ամենամռայլ ու մղձավանջային, դաշնակների տիրահռչակ տիրապետության դժնդակ օրերին։ Ծնվելով Հայաստանում Սովետական իշխանության հաղթանակի համար մղած հերոսամարտերի փոթորիկներում, կազմավորվելով ու ձևավորվելով մեր ժողովրդի պայծառ այգաբացին, Կոմունիստական պարտիայի ամենօրյա ղեկավարությամբ Հայաստանի լենինյան կոմերիտմիությունն անցել է մե՜ծ ու փառավոր ուղի։ Նրա շարքերում աճել են հազարավոր երիտասարդ հայրենասերներ, կոմունիստական հասարակարգի ակտիվ ու գիտակից կառուցողներ, ժողովրդի երջանկության համար պայքարող խիզախ մարտիկներ, որոնք իրենց անձնուրաց ու հերոսական աշխատանքով վաստակել են մեր ժողովրդի անսահման սերն ու խոր հարգանքը։

1919 թվականի ապրիլին ձևավորվեց Երևանի երիտասարդ կոմունիստների «Սպարտակ» կազմակերպությունը։ Ազատության անզուսպ տենչով տոգորված անտիկ աշխարհի մեծ դյուցազնի՝ Սպարտակի անունը կրող այդ կազմակերպությունը առաջին կոմունիստական երիտասարդական կազմակերպությունն էր Հայաստանում։ Նրա ստեղծողների՝ անմահ ռևոլյուցիոներներ Ղուկաս Ղուկասյանի, Արմենակ Բուդաղյանի, Աղասի Խանջյանի և շատ ուրիշների անունները գրանցված են մեր կոմերիտմիության ոսկե տարեգրության առաջին էջերում՝ որպես հավերժ կենդանի ու գալիք սերունդներին նորանոր սխրանքների, խիզախ գործերի մղող պայծառ անուններ։

1920 թվականի Մայիսյան հերոսական ապստամբության բոցերի մեջ նետվեցին «Սպարտակի» անդամները, ռևոլյուցիոն երիտասարդները։ Փորձություններով ու դժվարություններով լի է եղել Հայաստանի կոմերիտմիության ծնունդը։ Նա կյանքի վկայագիր ստացավ Հայաստանում սովետական կարգերի հաստատման ու ամրապնդման համար մղված պայքարի տարիներին։ Ամբողջ աշխատավորության հետ միասին ռևոլյուցիոն գոտեմարտի բռնվեց նաև կոմերիտական առաջին սերունդը։ 1921 թվականի փետրվարյան ավանտյուրայի ժամանակ անձնազոհություն ու հերոսություն ցուցաբերեցին շատ կոմերիտականներ։ Այդ դաժան կռիվներում շատերի հետ իր մատաղ կյանքը զոհեց և իր



հիշատակը անթառամ փառքով պսակեց Հայաստանի կոմերիտմիության հիմնադիրներից մեկը՝ ՀԼԿԵՄ Կենտկոմի քարտուղար Արմենակ Բուդաղյանը։

1921 թվականի օգոստոսին բացվեց Հայաստանի կոմերիտմիության հիմնադիր համագումարը, որին մասնակցում էին 153 պատգամավորներ՝ ներկայացնելով կոմերիտմիության 7990 անդամ-թեկնածուների։ Համագումարի աշխատանքի հիմքում դրված էր ՌԿԵՄ Համառուսաստանյան III համագումարում Վ. Ի. Լենինի արտասանած՝ «Երիտասարդության միությունների խնդիրները» պատմական ճառը, որը ուղեցույց աստղ հանդիսացավ երիտասարդ սերնդի ողջ գործունեության համար։ «Ընթացիկ մոմենտը և կոմերիտմիության խնդիրները» զեկուցումով համագումարում հանդես եկավ աննկուն լենինյան Ալ. Մյասնիկյանը։

Կոմունիստական պարտիայի կոչով կոմերիտմիությունը ակտիվորեն մասնակցեց ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության վերականգնման աշխատանքներին, ձեռնարկված սոցիալիստական առաջին միջոցառումների կենսագործմանը։ Ստվարանում էին կոմերիտմիության շարքերը։ Միայն լենինյան կոչի օրերին կոմերիտմիության շարքերն ընդունվեցին ավելի քան 11800 պատանիներ ու աղջիկներ։

Լենինի պես սովորելու, աշխատելու և պայքարելու բուռն ցանկությամբ տոգորված, 1924 թվականի փետրվարին Հայաստանի կոմերիտմիությունը որոշեց կազմակերպությունը կոչել սիրելի առաջնորդի անունով։ Կոմերիտմիության յուրաքանչյուր անդամի կյանքի անխախտ նշանաբանը դարձավ ապրել ու աշխատել Լենինի պես։ Մեր երկրի բոլոր կոմերիտականների հետ միասին Հայաստանի կոմերիտմիությունը նույնպես միշտ հավատարիմ մնաց այդ հանդիսավոր երդմանը։

Ղեկավարվելով սոցիալիստական շինարարության լենինյան կանխագծումներով, մեր պարտիան սովետական ժողովրդի առջև դրեց մեր երկրի սոցիալիստական ինդուստրացման և դրա հիման վրա գյուղատնտեսության կոլեկտիվացման համարձակ ծրագիրը, որի իրականացումը ապահովում էր ՍՍՌՄ-ի տնտեսական ու քաղաքական ինքնուրույնությունը, սոցիալիստական հասարակության կառուցումը։ Պարտիայի կոչը պատրաստակամությամբ ընդունեց կոմերիտմիությունը, ամբողջ երիտասարդությունը. ռևոլյուցիոն թափով և ավյունով նրանք ձեռնամուխ եղան նոր հասարակարգի կառուցման դժվարին գործին։

Մոբիլիզացնելով ամբողջ երիտասարդության ուժերը՝ ՀԼԿԵՄ կազմակերպությունները հանդես եկան նոր, հիանալի նախաձեռնություններով ու հայրենանվեր գործերով։ Միայն 1927—28 տնտեսական տարվա առաջին կիսամյակում Երևան քաղաքի արտադրական ձեռնարկությունների երիտասարդ բանվորներն արեցին 260 ռացիոնալիզատորական առաջարկություն։ Ալավերդու և Ղափանի պղնձահանքերի, Երևանի «Արարատ», մեխանիկական գործարանների, Լենինականի շոգեքարշային դեպոյի և մյուս ձեռնարկությունների կոմերիտական կազմակերպությունների նախաձեռնությամբ կազմակերպվեցին երիտասարդ ռացիոնալիզատորների, գյուտարարների խմբակներ։

Ռեսպուբլիկայի կոմերիտական կազմակերպություններում ՀամԼԿԵՄ VIII համագումարից հետո ծնունդ առան «Թեթև հեծելազորի» ջոկատները, որոնք մեծ նշանակություն ունեցան երիտասարդության կոմունիստական դաստիարակության և նրան սոցիալիզմի կառուցման ակտիվ մասնակիցը դարձնելու

համար: Կարճ ժամանակամիջոցում ստեղծվում են 600 այդպիսի ջոկատներ՝ ավելի քան 8000 անդամներով:

Հայաստանի կոմերիտմիությունը, պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ, անձնազոհ, հերոսական աշխատանք կատարեց ռեսպուբլիկայի էլեկտրիֆիկացման գործում, քիմիական և շինանյութերի արդյունաբերության ստեղծման, պղնձարդյունաբերության վերականգնման ու վերակառուցման ասպարեզներում: Միության արդյունաբերական խոշոր կենտրոնների կոմերիտական կազմակերպությունների օրինակով ռեսպուբլիկայում լայնորեն ծավալվում էր հարվածայնության ու սոցիալիստական մրցության շարժումը: 1930 թվականի սկզբին Հայաստանում կային 8803 հարվածայիններ, որոնցից մոտ 4000-ը կոմերիտականներ էին:

ԳՈԷԼՌՈ-ի պլանի տասնամյակի կապակցությամբ, 1930 թվականին ՀԼԿԵՄ-ը վերցրեց ռեսպուբլիկայի էլեկտրիֆիկացիայի շեֆությունը: Բազմաթիվ լավագույն կոմերիտականներ ուղարկվեցին Ձորագէսի, Քանաքեռգէսի և մյուս հիդրոէլեկտրակայանների շինարարության վրա աշխատելու: Շատերի հիշողության մեջ թարմ է ռեսպուբլիկայի անդրանիկ հիդրոէլեկտրակայանի՝ Ձորագէսի կառուցման ժամանակ երիտասարդ շինարարների անխոնջ աշխատանքը և ամեն մի դժվարություն հաղթահարելու նրանց կամքն ու վճռականությունը: Այդ հերոսական աշխատանքը ըստ արժանվույն գնահատվեց, և Հայաստանի կոմերիտմիությունը 1932 թվականի նոյեմբերին պարգևատրվեց ռեսպուբլիկայի բարձրագույն՝ «Աշխատանքային Կարմիր Դրոշի» շքանշանով:

Մեծ աշխատանք կատարեց կոմերիտմիությունը գյուղում: Նա ակտիվորեն մասնակցեց մանր, անհատական գյուղացիական տնտեսությունների սոցիալիստական վերափոխմանը: Ռեսպուբլիկայի կոմերիտական կազմակերպություններն անց էին կացնում մասսայական բերքարշավ, քաղաքի և գյուղի կոմերիտականները հանդես էին գալիս կոլտնտեսություններում աշխատանքային նոր ձևերի կիրառման, ցանքատարածությունների ընդարձակման, սերմացուի զտման, գյուղատնտեսական գործիքների ու մեքենաների վերանորոգման նախաձեռնողներ ու ակտիվ մասնակիցներ:

Լայնորեն հայտնի են Հայաստանի լենինյան կոմերիտմիության խոշոր ծառայությունները կուլտուրական ռևոլյուցիայի ճակատում: Նա վճռական պայքար է մղել հին կենցաղի վնասակար երևույթների դեմ, բանվորա-գյուղացիական երիտասարդության լայն խավերին ներգրավելով կուլտուրական արշավների մեջ: Կոմերիտմիության այդ նախաձեռնությանը ոգևորությամբ արձագանքեց սովետական ինտելիգենցիան:

Կոմերիտմիությունն ամենաակտիվ ու գործնական մասնակցություն ունեցավ անգրագիտության վերացման գործին: Միայն 1930—1933 թթ. Հայաստանում կարդալ-գրել սովորեցին 380679 հասակավոր մարդ: 1936 թվականին մասսայական դպրոցներում աշխատող 7633 ուսուցիչներից 4426-ը մանկավարժական աշխատանքի էին անցել կոմերիտմիության ուղեգրերով:

Սոցիալիստական շինարարության հերոսամարտերում օրավուր աճում էր Հայաստանի կոմերիտականների թիվը: Միայն առաջին հնգամյակների տարիներին ՀամԼԿԵՄ շարքերն ընդունվեցին 60000-ից ավելի երիտասարդներ: Պարտիայի մշտական հոգատարությամբ հզորացավ և ամրապնդվեց կոմերիտմիությունը, ծավալվեց նրա ստեղծագործական ակտիվությունը: Հպարտության զգացումով կարելի է նշել, որ ռեսպուբլիկայի կոմերիտական կազմակերպու-



թյուններում կոփվեցին պարտիայի ու ժողովրդի գործին անսահմանորեն նվիրված, ռևոլյուցիոն մեծ ավյունով լի ու գործիմաց լավագույն բոլշևիկյան կադրեր:

Ռեսպուբլիկայի կոմերիտական կազմակերպությունները միշտ էլ իրենց հարազատ գործն են համարել խորապես ուսումնասիրել ռազմական գործը, ակտիվորեն մասնակցել երկրի պաշտպանական հզորության ամրապնդմանը: Նրանք պատվով էին կատարում իրենց շեֆությունը ռազմա-օդային ու ռազմածովային ուժերի նկատմամբ: Հայաստանի կոմերիտմիությունը վերցրել էր Կասպիական նավատորմիղի նավերից մեկի շեֆությունը, միջոցներ հավաքել «Հայաստանի կոմերիտական» էսկադրիլյայի կառուցման համար: Մեր կոմերիտականներն ու երիտասարդները պատրաստ էին պարտիայի առաջին իսկ կոչով ոչ միայն իրենց անձնվեր աշխատանքով, այլև զենքով պաշտպանելու մեր երջանկության ամրոցը՝ սոցիալիստական Հայրենիքը:

Հայրենական Մեծ պատերազմը իսկական փորձություն եղավ սովետական երիտասարդության համար: Դաժան ու ծանր պատերազմի տարիներին ամբողջ ժողովրդի հետ իսկական քննություն բռնեց լենինյան խիզախ կոմերիտմիությունը: Մենք հպարտությամբ ենք նշում, որ այդ ծանր փորձությունից պատվով դուրս եկավ նաև Հայաստանի կոմերիտմիությունը:

Սովետական երիտասարդության անօրինակ սխրագործություններն ու մասսայական հերոսությունները գերազանցեցին մարդու ամենավառ պատկերացումները խիզախության և արիության մասին: Հայրենիքի սրբազան հողը ֆաշիստական հրոսակներից ազատելու համար բոլոր ռազմաճակատներում սովետական մյուս ազգերի երիտասարդների հետ մեկտեղ, եղբայրաբար ուս-ուսի տված հերոսաբար մարտնչում էին հայ ժողովրդի զավակները: Պատերազմի տարիներին Հայաստանի կոմերիտմիության շարքերից Սովետական Բանակ մեկնեցին ավելի քան 70250 կոմերիտականներ:

Պատերազմի առաջին երեք տարում կամավոր կերպով ռազմաճակատ մեկնեցին մոտ 20 հազար կոմերիտականներ: Պատերազմական գործողությունների ամենաթեժ օրերին, մեր Հայրենիքի հերոս քաղաքների պաշտպանների թվում քաջությամբ մարտնչում էին նաև Հայաստանի կոմերիտմիության սաները: Հայ ժողովրդի պանծալի զավակներ Նելսոն Ստեփանյանի, Հունան Ավետիսյանի, Սերգեյ Բուռնազյանի, Սերգեյ Օհանյանի, Մեսրոպ Ղազարյանի, Ջահան Կարախանյանի և շատ ուրիշների անունները մեկընդմիշտ գրանցվեցին մեր Հայրենիքի ազատության ու անկախության համար մարտնչողների ոսկե մատյանում: Հայրենական Մեծ պատերազմի ժամանակ ցուցաբերած խիզախության ու հերոսության համար ՍՍՌՄ շքանշաններով ու մեդալներով պարգևատրված 66802 հայ մարտիկների կեսից ավելին, 104 հայ հերոսներից 65-ը կոմերիտականներ էին:

Հայաստանի երիտասարդությունը, և, առաջին հերթին, մեր աղջիկները սրբությամբ էին կատարում իրենց հայրենասիրական պարտքը նաև թիկունքում: Ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկություններում, կոլտնտեսային դաշտերում աշխատող աղջիկներն ու պատանիները մեծ զրկանքների գնով, իրենց անձնազոհ աշխատանքով կռում էին պատմական մեծ հաղթանակը: Նրանք պաշտպանության ֆոնդի ակտիվ մասնակիցներն էին: Հայաստանի կոմերիտմիության ուժերով ստեղծվեցին «Հայաստանի կոմերիտական» տանկային շարասյուն, ճակատայինների երեխաներին օգնելու ֆոնդեր և այլն:

Հայրենասիրական խելացի նոր նախաձեռնություններով և աշխատանքային սխրագործություններով հարուստ է Հայաստանի կոմերիտմիության հետպատերազմյան ժամանակաշրջանի գործունեությունը։

ՍՄԿՊ XX համագումարը մեծագույն ուղենիշ դարձավ մեր պարտիայի ու ժողովրդի կյանքում։ Վերացնելով անհատի պաշտամունքի ժամանակաշրջանի մրուրը, համագումարը լայն ասպարեզ բացեց պարտիայի ու ժողովրդի ստեղծագործական ուժերի համար, նպաստեց մասսաների հետ պարտիայի կապերի ընդլայնմանն ու ամրապնդմանը։ Ծանր է հիշել, որ անհատի պաշտամունքի տիրապետության տարիներին անդարմանելի կորուստներ ունեցան նաև Հայաստանի կոմերիտմիության դաստիարակած կադրերը. զոհ գնացին Աղասի Խանջյանը և Հմայակ Վարդանյանը, Գումեդինը, Պետիկ Թորոսյանը, Պապիկ Մկրտչյանը, Լյուսյա Ինջիկյանը, Հրանտ Եկավյանը, Պետիկ Պետրոսյանը, Միշա Ենգիբարյանը և ուրիշներ, վսեմ իդեալներով ու աննկուն հավատով տոգորված գործիչներ, որոնց հիշատակը միշտ վառ կմնա երիտասարդ սրտերում, որոնց կյանքի ոգեշնչող օրինակով կդաստիարակվեն կոմերիտմիության նոր սերունդները։

Պարտիայի XX համագումարից հետո խոշոր տեղաշարժեր կատարվեցին նաև լենինյան կոմերիտմիության կյանքում։ Կոմունիստական պարտիան օգնեց կոմերիտմիությանը արմատապես վերակառուցելու և կատարելագործելու իր աշխատանքը, վճռական շրջադարձ կատարելու դեպի տնտեսական շինարարության խնդիրները։ Պարտիան կոմերիտմիությանը հանձնարարեց մեծ գործեր՝ երիտասարդ սերնդին դաստիարակել աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի ոգով, համակողմանիորեն նախապատրաստել նրան կոմունիզմի անմիջական կառուցմանը։

Սովետական երիտասարդության համար դաստիարակչական մեծ դպրոց հանդիսացավ խամ ու խոպան հողերի յուրացումը։ Դա մեր երիտասարդ սերնդի փառքի գործն էր, մեր պարտիային նրա նվիրվածության ամենավառ ցուցադրումը։ Քիչ զրկանքներ ու դժվարություններ չկրեցին պարտիայի կոչով, սրտի թելադրանքով խոպան հողերը մեկնած երիտասարդ էնտուզիաստների առաջին ջոկատները։ Սակայն նրանք չընկրկեցին և երեք ու կես տարվա ընթացքում մշակվեց ու յուրացվեց ավելի քան 42 միլիոն հեկտար խամ ու խոպան հող։ Դարավոր խոպանը նվաճվեց խիզախ հայրենասերների հաղթ բազուկների ու համարձակ մտքի ուժով։ Պարտիան և կառավարությունը, բարձր գնահատելով խոպանը նվաճողների հերոսական աշխատանքը, 1956 թվականի նոյեմբերին լենինյան կոմերիտմիությանը պարգևատրեց Լենինի երրորդ շքանշանով։

Հայաստանի կոմերիտմիության ուղեգրերով 1954—1955 թվականներին Ղազախստան՝ մշտական աշխատանքի մեկնեցին երեք հազար կոմերիտականներ։ Լենինյան կոմերիտմիության կոչով Հայաստանի երիտասարդությունը ակտիվ կերպով մասնակցել է խոպան հողերի բերքահավաքի աշխատանքներին. միայն 1956—1961 թթ. բերքահավաքին մասնակցել են ռեսպուբլիկայի մոտ ինը հազար պատանիներ ու աղջիկներ։

Մեր ինդուստրիայի կարևորագույն ճյուղերի հարվածային կառուցումներին, Հեռավոր Արևելքի և Հյուսիսի բնական հարստությունների յուրացման համար ծավալված կոմերիտական արշավին մասնակցում է նաև մեր ռեսպուբլիկայի երիտասարդությունը։ 1956—1961 թվականներին Հեռավոր Արևելք, Կույ-



բիշևգէս, «Կարագանդաշախտստրոյ», Ղախաստան, Նոր Վորոնեժի ջերմակայանը և այլուր մեկնել են մոտ հազար երիտասարդներ։

Հայաստանի կոմերիտմիությունը ակտիվ մասնակցել է Սևան—Հրազդան կասկադի բոլոր հիդրոկայանների կառուցման աշխատանքներին։ Բավական է նշել, որ Գյումուշգէսի կառուցման, որի շեֆությունը վերցրել էր ՀԼԿԵՄ-ը, աշխատանքներին մասնակցեցին հինգ հազար պատանիներ ու աղջիկներ, 11 հազար երիտասարդ բանվորներ ու բանվորուհիներ։ Մեր անձնվեր երիտասարդությունը նշանակալից ավանդ է ներդրել ու ներդնում է Ղազախ—Երևան գազամուղի կառուցման, Ագարակի պղնձամոլիբդենային կոմբինատի, Երևանի պոլիվինիլացետատ գործարանի երկրորդ հերթի շինարարության և այլ գործերում։

Ռեսպուբլիկայի կոմերիտական կազմակերպությունները նկատելի գործ են կատարել գյուղական երիտասարդության աշխատանքային դաստիարակության բնագավառում։ Մեր պատանիներն ու աղջիկները սկսել են ավելի ջերմ սիրով մասնակցել հանրային գործերին, ավելի շատ հարգել հողագործի և անասնապահի աշխատանքը։ Կոմերիտական ուղեգրերով վերջին տարիներին անասնապահական ֆերմաները մշտական աշխատանքի են գնացել հարյուրավոր երիտասարդներ։ Երիտասարդները մեծ եռանդով մշակում են եգիպտացորեն և ստանում բարձր բերք։ Հարկ է նշել մեր երիտասարդ կոլտնտեսականների անձնուրաց աշխատանքը գյուղատնտեսական մթերքների առատություն ստեղծելու գործում։

Առօրյա աշխատանքում աճում ու դաստիարակվում է մեր երիտասարդ սերունդը։ Ռեսպուբլիկայի աշխատավորներին հայտնի են կոմերիտականների, երիտասարդների հերոսական, սխրանքներով լի գործերը, նրանց քաջ հայտնի են այն բազմաթիվ խիզախ երիտասարդ բանվորների, ինժեներների, կոլտնտեսականների, գիտնականների անունները, որոնք քայլում են մեր հաղթական առաջընթացի առաջին շարքերում։

Լենինյան կոմերիտմիությունը հանդիսանում է կոմունիստական աշխատանքի կոլեկտիվների ու հարվածայինների շարժման նախաձեռնողը, շարժում, որն օրեցօր ավելի է ծավալվում մեր երկրում։ Այժմ ռեսպուբլիկայի արդյունաբերական, շինարարական և տրանսպորտի ձեռնարկություններում, սովխոզներում և կոլտնտեսություններում կոմունիստական աշխատանքի կոչման համար պայքարում են 1400 կոմերիտական-երիտասարդական բրիգադներ, օղակներ, հերթափոխություններ, տեղամասեր ու ցեխեր։ Արդեն 278 երիտասարդական կոլեկտիվներ նվաճել են այդ կոչումը։ Կոմունիստական աշխատանքի հարվածայինի կոչման համար պայքարող յոթ հազար պատանիներից ու աղջիկներից 1100 մարդ արժանացել են այդ բարձր կոչմանը։

Ռեսպուբլիկայում լայնորեն ծավալվում է երիտասարդ ռացիոնալիզատորների ու գյուտարարների շարժումը, որի մեջ ներկայումս ընդգրկված են 5147 մարդ։ Միայն ընթացիկ տարվա տասն ամսում նրանք արել են 9136 ռացիոնալիզատորական առաջարկ՝ 4,3 միլիոն ռուբլի պայմանական տնտեսական օգուտով։

Հայաստանի կոմերիտմիությունը, սովետական և հասարակական մյուս կազմակերպությունների հետ համատեղ, զգալի աշխատանք է կատարել ու կատարում դպրոցը, ուսումնական հիմնարկները կյանքի հետ կապելու, սովորողների աշխատանքային ու գաղափարական դաստիարակության ուղղությամբ։

*աճում է կենսախինդ, աշխատասեր, ֆիզիկապես և բարոյապես առողջ երիտասարդ սերունդը։*

*ՍՄԿԿ XXII համագումարը մեր սովետական երիտասարդության առաջ բաց արեց ստեղծագործական աշխատանքի մեծ ու հրապուրիչ հորիզոններ։ Այն գիտակցությունը, որ իրենք են կառուցելու կոմունիզմը և ապրելու են այդ հասարակության մեջ, մեր պատանիներին ու աղջիկներին ոգևորում և մղում է նոր սխրանքների ի փառս Հայրենիքի։ Նրանք ջերմ հավանություն տվեցին կոմունիզմ կառուցողների համագումարի որոշումներին և պատրաստակամություն հայտնեցին գործի վերածելու հարազատ պարտիայի հոյակապ կանխագծումները։ ՍՄԿԿ XXII համագումարին հղած իրենց նամակ-երդումում 48 միլիոն սովետական երիտասարդներ հանդիսավոր կերպով երդվեցին՝ իրենց բոլոր ուժերը, գիտելիքները նվիրաբերել կոմունիզմի կառուցման վեհ գործին։*

*Կոմերիտմիության առջև կանգնած են մեծ խնդիրներ։* «Լենինյան Կոմունիստական Երիտասարդական Միության գլխավոր խնդիրն է,— *ՍՄԿԿ XXII համագումարում իր զեկուցման մեջ ասաց ընկեր Խրուշչովը,*— պատանիներին ու աղջիկներին դաստիարակել ռևոլյուցիոն պայքարի հերոսական տրադիցիաներով, բանվորների, կոլտնտեսականների, ինտելիգենցիայի աչքնվեր աշխատանքի օրինակներով, մարքսիզմ-լենինիզմի մեծ գաղափարներով»։

*Այս խոսքերում հակիրճ, բայց հստակ տրված են կոմերիտմիության խնդիրները կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում։*

*Նոր մարդու դաստիարակությունը բարդ ու տևական պրոցես է, այն պահանջում է մեծ ջանքեր։ Կոմերիտմիությունը կոչված է օգնելու պարտիային՝ դաստիարակելու հոգևոր հարստությամբ, բարոյական անաղարտությամբ, ֆիզիկական կատարելությամբ օժտված կոմունիզմի գիտակից կառուցողներ։*

*Մենք պետք է երիտասարդ մարդկանց նախապատրաստենք աշխատանքային գործունեության համար, կոփենք նրանց աշխատանքում, սեր ու հարգանք ներշնչենք աշխատանքի՝ որպես առաջին կենսական պահանջմունքի նկատմամբ։ Սովորեցնել մեր երիտասարդությանը ապրել ու աշխատել կոմունիստաբար, դաստիարակել նրան կոմունիզմի գործին հավատարմության, հայրենասիրության և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ոգով—սա է մեր կոմերիտական կազմակերպությունների առաջնահերթ խնդիրը։*

*Օգնենք մեր երիտասարդ սերնդին՝ զինվելու գիտելիքներով, տիրապետելու ամենաժամանակակից տեխնիկային, ազատվելու անցյալի վերապրուկներից։ Անհրաժեշտ է, որ կոմերիտմիությունն ուժեղացնի ազդեցությունը յուրաքանչյուր երիտասարդի վրա, հարստացնի դաստիարակչական աշխատանքի բովանդակությունը և կատարելագործի նրա ձևերը։ Կոմերիտմիությունն իր առջև դրված խնդիրներն իրականացնելու է պարտիայի անմիջական ղեկավարությամբ, որը նրա ուժի ու հզորության աղբյուրն է։*

*Հայաստանի կոմերիտմիությունը, որն իր շարքերում ունի 180 հազար մարդ, ամբողջ սովետական երիտասարդության հետ միասին այսուհետև ևս անհունորեն նվիրված կլինի պարտիայի գործին։ Պարտիան ողջ ժողովրդին, մեր պանծալի երիտասարդությանը կոչում է առաջ, դեպի խաղաղ ստեղծագործական աշխատանք՝ հանուն կոմունիզմի հաղթանակի։*

---

# ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼԻԶՄԻ ԵՐԻՏԱՍԱՐԴ ՋԱՀԱԿԻՐՆԵՐԸ

*Ռ. ԱԹԱՅԱՆ*

## ԱԶԱՏՈՒԹՅԱՆ ԹԵՎԵՐՈՎ

Հայաստանի կոմերիտմիությունը, Անդրկովկասի մյուս կոմերիտական կազմակերպությունների հետ, իր ծննդյամբ պարտական է փոթորկաշունչ 1917-ին։

Հազիվ 36 ժամ էր անցել, ինչ մետաղյա լարերը հեռու Հյուսիսից բերել էին Նիկոլայ II կայսրի գահընկեցության լուրը, ցնծահույզ բազմությամբ լի էր Երևանի ուսուցչական սեմինարիայի (մեր Պետական համալսարանի հին շենքի) անպարիսպ բակը։ Առաջին անգամ այս քաղաքի պատմության մեջ պատանիների ու աղջիկների այդպիսի հոծ բազմություն միտինգի էր հավաքվել, այն էլ շատերը ալ վարդակապը կրծքներին։

Եվ ահա ասպարեզ են ելնում հին կարգերին թշնամի մանկավարժները, որոնց մեջ կային բազաքական աքսորականներ։ Ամենաեռանդուն հռետորներից է այդ օրը Թեմական և Գայանյան դպրոցների ընդհանուր պատմության ուսուցիչը։ Արիստոկրատական արտաքինով սիգահասակ այդ մարդը տակառների վրա ելած կոչ է անում պատանեկությանը հին դպրոցի փլատակների վրա հիմնել նոր դպրոցը, և այդ նոր դպրոցի ծնունդը նշանավորելով ասես թե, նախքան կիջներ իր տարօրինակ ամբիոնից, երեք անգամ ատրճանակ է կրակում օդի մեջ։ Գրականագետ Պողոս Մակինցյանն էր դա, որին վիճակված էր նորաստեղծ Սովետական Հայաստանի Լուսավորության ժողովրդական կոմիսարը լինել չորս տարի հետո։

Ա՛յն, ինչ կատարվում էր Երևանում, ավելի մեծ ժամաշտաբ և բուռն արտահայտություն ուներ Անդրկովկասի արդյունաբերական կենտրոններում՝ Թիֆլիսում և մանավանդ Բաքվում։ Այստեղ լույս էին ընծայվում աշակերտական տպագիր լրագրեր՝ ռուսերեն, վրացերեն և հայերեն։ Պատանեկության հոծ կանգվածներին համակած տրամադրությունն են արտահայտում Բաքվի № 2 գիմնազիայի «Единение» և Դեմոկրատական աշակերտության օրգան «Юный голос» լրագրերը։ «Ազատության արշալույսը ծագեց Ռուսաստանի վրա. այժմ միտքը ազատ է և քանդելով կապանքները, բարձրագոչ հռչակում է իր իրավունքը...», «Մեկ է պատկանում արևը, մեկ համար է լույս տալու նա...», «նոր դպրոցում անհապաղ իրականություն կդառնան հումանիստ մանկավարժների ոսկի երազները»,— կարդում ենք այդ լրագրերի էջերում։

Ճիշտ այսպիսի ռոմանտիկ հույզերով էր տարված այդ օրերին նաև Երևանի պատանեկությունը։ Այստեղ, դեռ մարտի 14-ի միտինգում, ստեղծվում է «Ընդհանուր աշակերտական միություն», իսկ մի խումբ եռանդուն երիտասարդներ, որ համախմբված էին Երևանում բնակվող բոլշևիկ Արշավիր Մելիքյանի շուրջը, հիմնում են սոցիալիստ-ինտերնացիոնալիստ երիտասարդների միություն, որի կազմում աշակերտների հետ նաև բանվորներ կային։

Քանդվում, փշրվում են ազգային, միջդասային և տարիքային անջրպետները, և նորահաս երիտասարդությունն անսպառ եռանդով ասպարեզ է մտնում ժողովրդին ծառայելու վսեմ ձգտումներով տոգորված։ Այդ օրերի խանդավառ տրամադրության ամենացայտուն մի դրսևորումը Կովկասյան իրականության մեջ այն կանաչազարդ գնացքն է, որ 1917 թվի մայիսի 1-ին ճանապարհ է ընկնում Երևան կայարանից։ Երկաթուղայիններն էին տրամադրել այս գնացքը։ Ապրանքատար բաց վագոնները լիքն էին քաղաքի բոլոր դպրոցների՝ շուրջ մեկ տասնյակ ազգությունների պատկանող աշակերտներով, աղջիկ-տղա խառը՝ իրենց ուսուցիչների հետ։ Կային նրանց հետ նաև բանվորներ Երևանի այն ժամանակվա խղճուկ ձեռնարկություններից, կային ռուս զինվորներ։ Ալեքսանդրապոլի ճանապարհին զարնանազգեստ այս գնացքից ամեն կայարանում դուրս են գալիս եռանդալից պատանիները, ցնծագին խոսքով ողջունում են տեղական բնակչությանը, շնորհավորում են ազատությունը, բարեմաղթում ու խոստանում նույնիսկ՝ հող և խաղաղություն, նոր, բարգավաճ, լուսավոր կյանք։

«Գայանյան հայկական իգական դպրոցի պրն.
վերատեսչին.
Երևան քաղաքի Աշակերտական միության
Կենտրոնական Կոմիտեի
հայտարարություն.

*Երևան քաղաքի Աշակերտական Միության Կենտրոնական Կոմիտեն այսօր, Հոկտեմբերի 10-ի իր արտակարգ բաց նիստում, մասնակցությամբ խորհրդակցական ձայն ունեցող առանձին ընկերների, բազմակողմանիորեն քննարկելով մանկավարժական խորհրդում աշակերտների ներկայացուցչություն ունենալու հարցը, միաձայն որոշեց.*

*Մանկավարժական խորհրդում աշակերտության ներկայացուցիչ ունենալու սկզբունքը համարել անհրաժեշտ և անհետաձգելի, ըստ որում աշակերտության ներկայացուցիչները պետք է վճռական ձայնի իրավունք ստանան։*

*Տեղեկացնելով Ձեզ այս մասին, Երևանի Կենտրոնական աշակերտական կոմիտեն, խնդրում է Ձեզ անմիջապես հրավիրել Մանկավարժական խորհրդի արտակարգ նիստ, որտեղ պետք է պարզվի խորհրդի վերաբերմունքը Կենտրոնական Կոմիտեի որոշմանը։*

*Պատասխանի ուշացումը կամ թե Մանկավարժական խորհրդի լռությունը Կենտրոնական Կոմիտեն կդիտի իբրև մերժում, որի դեպքում Կենտրոնական Կոմիտեն իրեն իրավունք է վերապահում գործել, ինչպես որ ինքը կորոշի։*

Կենտրոնական աշակերտական կոմիտեի
Նախագահ՝ Ա. Իսահակյան
Քարտուղար՝ Ս. Սողոմոնյան

*11 Հոկտեմբերի 1917 թ.*
*ք. Երևան»։*

Կլոր կնիքի վրա հստակ կերպով կարդացվում է. «Աշակերտների միության Կենտրոնական Կոմիտե. հիմնված 1917 թ. մարտի 14-ին»:

Հազիվ թե կարող է լինել մի վավերաթուղթ, որ ավելի լավ բնութագրեր սովորող երիտասարդության տրամադրությունն այդ պահին: Սա իսկական մի վերջնագիր է, որ կարող էին հեղինակել իրենց դատի արդարությանը վստահ և հաղթանակի աննկուն կամքով տոգորված երիտասարդները միայն:

Գայանյան դպրոցի վերատեսուչ Տիգրան Ռաշմաճյանը ընդառաջ է գնում աշակերտներին: Գիմնազիաները կտրականապես հակառակվում են: Ի պատասխան՝ հոկտեմբերի 17-ից դասադուլ է Երևանում, թեև դպրոցները չեն փակվում, բարձր դասարանցիներն իրե՛նք են պարապում փոքրերի հետ: Դասադուլի կոմիտեն, որի նախագահը նույնպես Ալ. Իսահակյանն է, իր շտաբն է դարձնում Նազարովսկայա փողոցի վրա գտնվող արական գիմնազիան (ներկայումս Ամիրյան փողոցի № 58 դպրոցի շենքը), արգելելով ուսուցիչների մուտքը այնտեղ: Ոչ միայն դպրոցական իշխանությունները, այլև ամբողջ չինովնիկությունը, նաև քաղաքապահ կորքի հրամանատարությունը ընկալում են դասադուլն իբրև իրենց դեմ ուղղված հանդուգն մի մարտահրավեր: Քաղաքային վարչության պաշտոնական տեղեկագրում գործ է ածվում «ապստամբ աշակերտներ» (восставшие ученики) արտահայտությունը: Գիմնազիայի վերատեսուչ Ջոգոշվիլին Կովկասյան ուսումնական օկրուգ ուղարկած հեռագրերում խոսում է սպառազեն աշակերտների կողմից գիմնազիայի գրավման մասին, գործ ածելով «Захватчики» — հափշտակիչներ բառը:

Սահմանադիր ժողովի ընտրությունների կողքին աշակերտական դասադուլը դառնում է այն գլխավոր իրադարձությունը, որի շուրջը կրքերի կատաղի բախում է տեղի ունենում Երևանում: Աշակերտներն իրոք սպառազինվում են դպրոցում պինավարժության համար պահվող հրացաններով, կամ ատրճանակներով: Բանվորական պատգամավորների սովետում մենշևիկ Գոգուաձեն պնդում է, թե դասադուլը դեմ է գնում դեմոկրատիայի շահերին և կոչ է անում աշակերտներին՝ պիջելով «կոհաբերություն անել և չխորացնել անարխիան»: Դասադուլին կորավիգ են լինում «Երիտասարդ ինտերնացիոնալիստների միությունը», Երևանի բոլշևիկները: Պողոս Մակինցյանը, որ բանվորական սովետի գործկոմի անդամ էր, դասադուլը դիտում է իբրև արդյունք դպրոցում տիրող բյուրոկրատական ռեժիմի: Ծնողների ու մանկավարժների ժողովում դասադուլի պահանջների պաշտպանությամբ հանդես է գալիս Երևանի գիմնազիայի շրջանավարտ բոլշևիկ իրավաբան Գևորգ Աթարբեկովը: Քիչ է մնում բանը արյունհեղության հասնի, երբ միապետական գնդապետ Պլատոնովն սպառնում է թնդանոթի կապել դասադուլի շտաբը՝ Պուշկինյան գիմնազիան: Եթե սկզբում, խաների և հարուստ վաճառականների կավակներից բացի, աշակերտության ամբողջ կանգվածը հարում էր դասադուլին, հիմա շատերը տատանվում են: Դաշնակցականներն իրենց հերթին փորձում են պառակտել շարժումը, այդ օրերին հենց հայտարարելով իրենց լրագրում, թե կազմակերպում են «Դաշնակցական երիտասարդների միություն»:

Երևանի դասադուլը անջատ մի շարժում չէր սակայն. այդ օրերին աշակերտական հուզումներ էին պոռթկում նաև Բաքվում ու Գանձակում, Թիֆլիսում և Քութաիսիում, դասադուլ էր նաև Էջմիածնի ճեմարանում: Բայց Հոկտեմբերյան հեղաշրջման Պետրոգրադից ստացված լուրն է, որ խուճապ է առաջ բերում իշխողների մեջ: Կովկասյան ուսումնական օկրուգի վարչությունը հեռագրով կարգադրում է ընդունել դասադուլի բոլոր պահանջները, աշակերտության ներկայացուցիչների վճռական ձայնի իրավունքը միայն կանց առնելով: Դասադուլը հաղթում է փաստորեն, ընդմիշտ մնալով իբրև Հայաստանում նորահաս կոմունիստ գործիչների՝ Ալեքսանդր Իսահակյանի, Ղուկաս Ղուկասյանի, Աղասի Խանջյանի, Արմենակ Բուդաղյանի անմիջական ղեկավարությամբ ծավալվող երիտասարդական շարժման պայծառ էջերից մեկը:

## ՀՈՍԱՆՔԻ ԴԵՄ

Շուտով, սակայն, վրա են հասնում ավելի ծանր օրեր Կովկասի, մանավանդ Հայաստանի համար: Օսմանյան ներխուժումը տակն ու վրա է անում ամեն ինչ: Դպրոցի և ուսման մասին խոսք լինել չէր կարող արդեն: Բոլշևիկների Կովկասյան կոմիտեն կոչ է անում պաշտպան կանգնել հայ ժողովրդին, բոլոր ուժերը նվիրել պինված ինքնապաշտպանությանը: Երևանի աչքի ընկնող բոլշևիկ գործիչ Արշավիր Մելիքյանն իբրև ժողովրդական աշխարհազորի պինվոր կռվում է Սարդարաբադի դաշտում, Ղուկասը գնդացրորդ է Ապարանի ճակատում:

Ու երբ, վերջապես, մասսայական հերոսությամբ, ծանր կոհերի գնով ետ է մղված բնաջնջման վտանգը, երբ վիլհելմյան իմպերիալիզմի պարտության հետևանքով գերմանո-թուրքական հորդանները նոր միայն հեռացել են Կովկասից, վրաց մենշևիկների և հայ դաշնակցականների նորելուկ կառավարությունները նոր պատերազմ են սկսում: Շովինիզմի այս մոլուցքի պահին ահա Հայաստանի ու Վրաստանի երիտասարդ ինտերնացիոնալիստները եղբայրական ձեռք են մեկնում իրար: Շուտով, 1919 թվականի մարտին, Ղուկասը գնում է Թիֆլիս, մասնակցում այնտեղ «Սպարտակի» գաղտնի կոնֆերանսին, որը ղեկավարում էր Միխա Ցխակայան: Նրա վերադառնալուն պես Երևանում վերստեղծվում ու նոր ուժ է առնում «Երիտասարդ ինտերնացիոնալիստների միությունը», հիմնադրվում է Հայաստանի «Սպարտակը»: Մի բուռ երիտասարդներ ու աղջիկներ Երևանում, ապա նաև Դիլիջանում, Նոր Բայազեդում, Ալեքսանդրապոլում ու Էջմիածնում, հակադրվելով տիրող իրավակարգին և իշխող մտայնությանը, անձնվիրաբար կռվի են ելնում հանուն իրենց իդեալների: Եթե նրանք ոչ միշտ կարողանում են արձագանքել կանգվածների նյութական վիճակից բխող հրատապ հարցերին, ապա ամեն օր և ամեն ժամ լավատեղյակ են աշխարհի անցուդարձին, երկու վիթխարի բանակների՝ Սովետական Ռուսաստանի և «տասնչորս տերությունների» գոյամարտին, և ողջ էությամբ տոգորված Սոցիալիստական Ռուսաստանի մոտալուտ հաղթանակի հեռանկարով: Միության օրգան «Սպարտակ» լրագրի մեջ Ղուկասն իր հոդվածում ակնածանքի խոսք է ասում



ՕԼԳԱ ՇԱՏՈՒՆՈՎՍԿԱՅԱ

Կարլ Լիբկնեխտի հիշատակին՝ իբրև «համաշխարհային երիտասարդության առաջնորդի», ու գովերգում է «Բաքվի ըմբոստացումն ընդդեմ Ասիական միլիտարիզմի», որակելով Ստեփան Շահումյանի գլխավորած Կոմունան իբրև «փառավոր մի դրվագ համաշխարհային պրոլետարիատի պատմության մեջ»:

«Սպարտակ» լրագիրը լույս է տեսնում մայիսի մեկին և Արմենակ Բուդաղյանն այս առթիվ ավետում է իր ընթերցողներին իր այնքա՜ն բնորոշ. փոքր-ինչ վերամբարձ ոճով. «Պրոլետարական հեղափոխության հառաջապահ Խորհրդային Ռուսաստանի, Ուկրաինայի, Հունգարիայի և Բավարիայի պրոլետարիատը տոնում է իր աշխատանքի պանծացումի օրը և գալիս է շեփորելու ի լուր աշխարհի, որ փշրվում են հետպհետե բռնության ժանիքները...»:

Անսասան հավատը իրենց արդար գործի վեբահաս հաղթանակի նկատմամբ թևավորում է սպարտակյաններին: Իր գաղափարական սերտ միասնությունը, ինչպես ընդունված էր ասել այն ժամանակ, «Մայր-կուսակցության» և ընդհանուր կոմերիտական շարժման հետ Հայաստանի «Սպարտակը» կրկին ընդգծում է նաև իր վերանվանումով, կոչելով իրեն «Կոմունիստ երիտասարդների միություն»: Մեկ հոգի միայն նրա անդամներից, որ իրեն մենշևիկ-ինտերնացիոնալիստ էր հորջորջում, ի նշան բողոքի հեռանում է, մի երկրորդն էլ՝ առժամանակ հետո դուրս մնում, թեև երկրում

գիք էր տվել հենց գյուղացի երիտասարդության վերաբերմամբ բռնելիք դիրքի հարցը: Բեսո Լոմինաձեն, որ Միկոյանի հետ միասին Կովկասյան Կոմիտեի ներկայացուցիչն էր, պահանջ էր դնում զգուշորեն վերաբերվել գյուղացի երիտասարդների ընդունելությանը, քանի որ նրանք իրենց հետ կբերեն մասնավոր-սեփականատիրական հոգեբանություն, աղարտելով միության գաղափարական մաքրությունը: Պատգամավորներից մի քանիսը, մանավանդ Ջնելաձեն, խստորեն առարկում են, նշելով, թե գյուղացի երիտասարդությունը ժողովրդի ամենահարստահարված մասն է և նրա մեջ շատ կան գիտակից և հասուն անհատներ: Ջնելաձեին պաշտպանում է նաև Միկոյանը: Եվ եթե Ղուկասը, տեղ հասնելուն պես, երեսը դարձրել է դեպի գյուղ, ապա այդ ցույց է տալիս, որ Բաքվի կոնֆերանսը նոր մղում է տվել նրա գործուն եռանդին:

## ԸՆԴՎԶՈՒՄ

1919-ի երկրորդ կիսամյակը նոր աշխույժ է բերում Հայաստանի Սպարտակի գործունեությանը: Հալածանքն ու հետապնդումը չեն ընկճում սպարտակյաններին. ընդհակառակը, կոփում են նրանց մարտական կամքը: Պառլամենտի ընտրությունների առթիվ բաց թողած նոր կոչում նրանք մերկացնում են դաշնակցական կառավարության ստորաքարշ, ծախու բնույթը և իրենց գրաված այս խիզախ դիրքի շնորհիվ բարոյական կշիռ են ձեռք բերում երիտասարդության շրջանում: Այդ երևում է թեկուզ նրանից, որ տարեվերջին, բանտից դուրս գալուց հետո, Աղասի Խանջյանը Թեմական դպրոցում փակ քվեարկությամբ ավելի շատ ձայն է ստանում, քան որևէ մեկը, և ընտրվում «Ընդհանուր աշակերտական միության» վարչության և նրա լրագրի խմբագրության անդամ:

Իսկ 1920 թվականի հունվարին, Հայաստանի բոլշևիկների Երևանում գումարված անլեգալ կոնֆերանսից հետո, որտեղ լսվում է մանրամասն զեկուցում «Սպարտակի» գործունեության մասին, սպարտակյաններն իրենց ջանքերը կենտրոնացնում են մի ուղղությամբ՝ զինված ապստամբություն նախապատրաստելու: Ժամանակները կրկին փոխվել էին: Անդրկովկասյան երեք կառավարությունները լիովին դրսևորել էին իրենց սնանկությունը: Սով էր Հայաստանում ու Ադրբեջանում: Մյուս կողմից Ռուսաստանում ամրացել էր սովետական իրավակարգը: Դենիկինի կորքի բեկորները Անդրկովկասի վրայով խուճապահար փախուստ էին տալիս դեպի Պարսկաստան: Փոթորիկ էր սպասվում, և նրա մերձեցումն զգում էին երիտասարդ սրտերը, հոգով ընդառաջ գնում նրան: «Անդրկովկասի բանվոր երիտասարդությունը կկատարի իր պարտքը, հաստատաքայլ ընթանալով Անդրկովկասի աշխատավորության ավանգարդում, տապալելու կեղեքման, կամայականության ու ժանդարմական նագայկաների իրավակարգը,— գրում է 1920 թ. մարտի 1-ին Բաքվում լույս ընծայված երիտասարդական «Красный клич» միօրյա լրագիրը:— Պատրաստվեցե՛ք ուրեմն, ժամանակը չի՛ սպասում, վայրկյանը մո՛տ է, պայքարը՝ վերահա՛ս: Հառա՜ջ անկասկած ու անվախ, կարմիր դրոշը ձեռքներիս, «Ինտերնացիոնալի» երգը շրթներիս, հառա՜ջ դեպի մարտ՝ հանուն բանվորների ու գյուղացիների իշխանության»: Հայաստանի կոմերիտականները ևս Ադրբեջանի և Վրաստանի իրենց ընկերների հետ միասին այս նույն հույսերով էին տոգորված և նրանց բոլորին պատկերանում էր արդեն նոր, Սովետական Անդրկովկասը, իբրև ազգամիջյան խաղաղության օրրան, իբրև իրավահավասար, բարեկամ ժողովուրդների միատեղ ջանքերով ծաղկող աշխատանքի մի թագավորություն:

Հայաստանում շուտով վրա հասած մայիսյան անցքերին ակտիվ կերպով մասնակցում են Նոր Բայազետի և Դիլիջանի սպարտակյանները: Բայց ապստամբությունը ձախողվում է: Ղուկասը, որ Կարսում ապստամբության ղեկավարներից էր, ընկնում է մարտական դիրքում: Արմենակ Բուդաղյանը կալանավորվում է: Դիլիջանի «Սպարտակի» կազմակերպիչներից Գևորգ Իշխանյանը գազանային խոշտանգումների ենթարկվելով երկրորդ անգամ բանտ է նետվում, իսկ Աշոտ Աբրահամյանը՝ թաքնվելով, կարողանում է անցնել Բաքու: Երևանի գիմնազիայի երեք սաները (Համայակ Վարդանյան, Գուրգեն Մելիք-Օհանջանյան և Միշա Ենգիբարյան) կալանավորվում, ապա, մանկավարժական կազմի բուռն բողոքի շնորհիվ, ազատվում են ու արտաքսվում Հայաստանի սահմաններից: Պատերին ու հեռագրասյուներին փակցրված ծանուցումով Ներքին գործոց մինիստրությունը մի բուռ ոսկի է խոստանում Աղասի Խանջյանի տեղը հայտնողին: Վեց ամիս, տեղից տեղ փոխադրվելով, գաղտնի գործելուց հետո նա ևս ընկնում է կինվորական ատյանի ձեռքը և դատապարտվում 10 տարվա տաժանակրության: Դեռ նոր կյանք մտած, սպարտակյաններն զգում են իրենց կաշվի վրա այդ դաժան ռեժիմի ամբողջ ծանրությունը:

Ու հենց նրանով է դրսևորում Հայաստանի «Սպարտակն» իր կենսունակությունը, որ հակառակ մի ժամվա արքաների խժդժություններին, այս պայմաններում նույնիսկ կարողանում է ավելի սերտ գործակցություն հաստատել և միասնություն ստեղծել եղբայրական կոմերիտական կազմակերպությունների հետ: Թիֆլիսի «Սպարտակը», ինքը ևս հալածանքի տակ, իր հերթին ամեն ինչ անում է Հայաստանի ընկերներին օգնելու համար:

Երևանի անվթար մնացած ռադիոդիվիզիոնի կազմակերպությունից Բաքու են գնում Սուրեն Բունիաթյանն ու Գիգո Երեմյանը, և վերադարձին, դաշտում հավաքված Դիլիջանի կոմերիտականներին պատմում ընթացիկ քաղաքական կյանքի մասին:

Սեպտեմբերին Բաքվում գումարված Արևելքի երիտասարդության համագումարին մասնակցող հայ կոմերիտականները հանդիպում են Մոսկվայից ու Թիֆլիսից եկած ընկերների հետ: Այս համագումարում ղեկավար դեր է կատարում Անդրկովկասի կոմերիտմիությունը: Ադրբեջանի գործիչներից, իբրև Երիտկոմինտերնի գործկոմի ներկայացուցիչներ, «Արևելքի երիտասարդության խորհրդի» անդամ են ընտրվում Օլգա Շատունովսկայան և Սաշա Բրեյտմանը, Վրաստանից՝ Բորիս Ջնելաձեն և Ամասը, իսկ Հայաստանից՝ սպարտակյան Հայկ Իսահակյանը՝ Ալեքսանդր Իսահակյանի կրտսեր եղբայրը: Առժամանակ հետո, 1920 թ. հոկտեմբերին, Բաքվի պատվիրակների հետ Ռուսաստանի կոմերիտմիության III համագումարն է գնում և լսում Լենինի նշանավոր զեկուցումը Զանգեզուրի կոմերիտականների ներկայացուցիչ Գումեդինը (Գուրգեն Մելիք-Դադայան):

Ու երբ 1920 թ. դեկտեմբերին վերջապես Հայաստանում սովետական կարգեր են հաստատվում, և բանտից ազատված Արմենակ Բուդաղյանն ու աքսորից վերադարձած Համայակ Վարդանյանը գլխավորում են կոմերիտական աշխատանքը, նրանք մեծ չափով հիմնվում են Բաքվի փորձի վրա:

Հայաստանի կոմերիտականները, սակայն, շուտով հարկադրված են լինում նորից զենք վերցնել սովետական իրավակարգը պաշտպանելու համար: Կոմունիստական ջոկատներն են մտնում Էջմիածնի և Ղամարլուի, Կոտայքի և Սևանի, Դիլիջանի ու Նոր Բայազետի կոմերիտականները: Դաշնակցականների փետրվարյան ավանտյուրայի օրերին աղջիկները ևս չեն ուզում ետ մնալ: Ղամարլուի ճակատում իբրև սանիտար աշխատում է Աղավնի Բուդումյանը: Մաշված տրեխներով, խոր ձյան մեջ՝ հրացանն ուսին Չիբուխլիի ճակատն է գնում Դիլիջանի կոմերիտական գավկոմի նորընտիր քարտուղար Հրանուշ Ստեփանի Դավթյանը, մինչև որ ընկերների համառ պահանջով հրամանատարությունը հարկադրում է նրան վերադառնալ թիկունքում աշխատելու: Եվ Դիլիջանի կոմերիտուհիները հերոսական ջանքեր են գործ դնում այդ դաժան ձմեռը, տաք շոր ու կոշիկ ժողովելով կռվող մարտիկների համար:

Շատ զոհեր է տվել Հայաստանի կոմերիտմիությունը դաշնակցական արկածախնդիրների դեմ մղված այս վերջին կռիվներում: Տաթևի ճանապարհին սրախողող է արվել Արմենակ Բուդաղյանը: Նոր Բայազետն ու Դարալագյազն ազատագրելիս սպանվել են երկու քաջարի երիտասարդներ Դիլիջանի «Սպարտակից»՝ Գրիգոր Մանթաշյանը և Սաշա Համբարձումյանը: Նրանց հետ միասին օտարերկրյա գաղութարարների գործակալների դեմ կռվելով, Հայաստանի հողն իրենց արյամբ ներկում են Հյուսիսից եկած կարմիր զինվորներ ու անձնազոհ ռուս կոմերիտուհիներ:

Շուտով ամենուրեք վերահաստատվում է բանվորա-գյուղացիական իշխանությունը: 1921 թվականի օգոստոսի 21-ին Սովետական Հայաստանի մայրաքաղաք Երևանում բացելով Հայաստանի կոմերիտմիության առաջին համագումարը, Կենտկոմի քարտուղար Համայակ Վարդանյանը ամենից առաջ հիշում է զոհված ընկերներին: Ժողովրդական կոմիսարների խորհրդի նախագահ Ալեքսանդր Մյասնիկյանը հարգանքի խոսք է ասում նրանց հիշատակին:

Այս համագումարն արդեն, որի քառասնամյակը լրացավ այս տարի, Հայաստանի կոմերիտմիությունը դիմավորեց իբրև մասսայական կազմակերպություն, որն իր կազմով հանդերձ խորհրդանշում էր նրա միջազգայնական դավանանքը. յոթ հազար հայ երիտասարդների ու աղջիկների հետ նրա շարքերում կային 727 ադրբեջանցիներ, 59 ռուսներ, 56 ասորիներ, 17 քրդեր և 64 հույներ:

Եվ եթե 1919 թ. սեպտեմբերին Բաքվում կայացած կիսալեգալ կոնֆերանսին Ղուկասը միանձնյա կերպով էր ներկայացնում Հայաստանի «Սպարտակը», ապա երկու տարի հետո միայն Հայաստանի կոմերիտմիության առաջին համագումարի 153 պատգամավորներից 70 հոգի մեկնում են Բաքու մասնակցելու կոմերիտմիության Կովկասյան համագումարին, իբրև կորովի ու եռանդալից ջահակիրները կոմունիստական ինտերնացիոնալիզմի, որի նշանաբանով ընթանալու էր Անդրկովկասի ժողովուրդների նոր կյանքը:

# Մ. Վ. ԼՈՄՈՆՈՍՈՎ

(Ծննդյան 250-ամյակի առթիվ)



Սովետական բազմազգ ժողովուրդը և ամբողջ առաջադեմ մարդկությունն այս տարվա նոյեմբերի 19-ին նշեցին ռուս մեծ մտածող, էնցիկլոպեդիստ, Ռուսաստանում մատերիալիստական ուղղության, փորձնական գիտության և ժամանակակից ռուսական լեզվի հիմնադիր, բանաստեղծ, ջերմ հայրենասեր, հումանիստ և լուսավորիչ Միխայիլ Վասիլևիչ Լոմոնոսովի ծննդյան **250**-ամյակը։ Իմացության ամենատարբեր բնագավառներում նրա թողած հարուստ ժառանգությունը խոշոր ներդրում է ո՛չ միայն ռուսական, այլև համաշխարհային գիտության գանձարանում։ Լոմոնոսովն իր ամբողջ կյանքը նվիրել է գիտությանը, հայրենիքին և իր ժողովրդին ծառայելու փառապանծ գործին, դրանով նա մեկընդմիշտ ձուլվել է իր հարազատ ժողովրդի և ամբողջ առաջադեմ մարդկության հետ, կանգնել է մարդկային հասարակության պատմության այն խոշորագույն հանճարների շարքում, որոնք նույնքան անմահ են, որքան նրանց ծնող ժողովուրդը։

***

Միխայիլ Վասիլևիչ Լոմոնոսովը ծնվել է 1711 թվականի նոյեմբերի 8-ին (19) Արխանգելսկի նահանգի Միշանինսկ գյուղում։ Այդ երկրամասն իր ժամանակին ուներ համեմատաբար բարձր կուլտուրա և զարգացած ծովագնացություն։ Սակայն Արխանգելսկի նահանգում հնարավոր չէր ո՛չ խոր գիտելիքներ ձեռք բերել և ո՛չ էլ բեղմնավոր գիտական գործունեություն ծավալել։ Ուստի Լոմոնոսովը 1730 թ. դեկտեմբերին ոտքով մեկնում է Մոսկվա՝ սովորելու։ Քանի որ նա չուներ ազնվական ծագում, դրա համար էլ նրան մեծ դժվարությամբ է հաջողվում 1731 թ. հունվարին ընդունվել Մոսկվայի սլավոնա-հունա-լատինական ակադեմիան։ Այստեղ Լոմոնոսովն աչքի է ընկնում ինչպես իր ընդունակություններով, այնպես էլ բազմակողմանի գիտելիքներով։ Նկատի ունենալով այդ հանգամանքը, 1736 թ. սկզբին նրան ուղարկում են Պետերբուրգի ակադեմիան, իսկ նույն թվականի աշնանը երեք տարով գործուղում արտասահման՝ Մարբուրգի համալսարանում սովորելու, որտեղ նա խոր կերպով ուսումնասիրեց բնագիտության նվաճումները։ 1741 թ. Լոմոնոսովը վերադառնում է Պետերբուրգ՝ Գիտությունների ակադեմիա։ Այդ ժամանակ ակադեմիան փաստորեն ղեկավարում էին գերմանացիները՝ Ի. Դ. Շումախերը և նրա համախոհները։ Նրանք փորձում էին չընդունել Լոմոնոսովի գիտական ծառայությունները, սակայն փաստերի ճնշման տակ ստիպված էին ճանաչել նրա մեծությունը և 1745 թ. նրան նշանակեցին քիմիայի պրոֆեսոր (ակադեմիկոս) Պետերբուրգի Գիտությունների ակադեմիայում։ Ակադեմիա թափանցած օտարերկրացիները երբեմն արգելակում էին ռուսական կուլտուրայի ինքնուրույն զարգացումը, արհամարհական վերաբերմունք էին ցույց տալիս ռուսական գիտության և կուլտուրայի նկատմամբ։ Բնական է, որ այնպիսի ջերմ հայրենասեր, ինչպիսին Լոմոնոսովն էր, չէր կարող հաշտվել ակադեմիայում տեղ գտած իր ժողովրդի և հայրենիքի նկատմամբ այդպիսի հայացքների հետ։ Ակադեմիայում աշխատելու ամբողջ ժամանակաշրջանում Լոմոնոսովը պայքար էր ծավալում արտասահմանի առջև խոնարհվելու, ռուսական մտքի ստորացման դեմ։

Լոմոնոսովը բեղմնավոր գիտական գործունեություն ծավալեց այդ ժամանակվա բնագիտության համարյա բոլոր բնագավառներում, սկսած ֆիզիկայից վերջացրած երկրաբանությամբ։ 1748 թ. Լոմոնոսովի ջանքերով ստեղծվեց առաջին քիմիական լաբորատորիան, որը ռուսական իրականության մեջ հսկայական դեր խաղաց քիմիայի զարգացման գործում։ Այդ լաբորատորիան դարձավ այն գիտական օջախը, որտեղ Լոմոնոսովը կատարեց իր բոլոր կարևոր հայտնագործությունները քիմիայի բնագավառում։ 1746 թվականին նա առաջին անգամ սկսեց մայրենի լեզվով դասախոսություններ կարդալ ակադեմիայում։

Լոմոնոսովը լուսավորության ջերմ պաշտպան էր։ Նա պահանջում էր ժողովրդի ներկայացուցիչներից պատրաստել բժիշկներ, ուսուցիչներ, որոնք կարողանային կրթությունն ու լուսավորությունը տանել դեպի աշխատավոր մասսաները։ Լոմոնոսովը մշակեց գիմնազիաներում և մյուս աշխարհիկ հիմնարկներում սովորելու ուսուցման նոր կանոններ, որոնց նպատակն էր հնարավորություններ ստեղծել ներքնախավերի երեխաների կրթության համար։ Նա մտածում էր ստեղծել նոր համալսարան, որտեղ հնարավորություն ունենան սովորելու հասարակության տարբեր շերտերից դուրս եկած, գիտության սապարեզում ունակություններ ցուցաբերող բոլոր անձինք։ Լոմոնոսովի առաջարկությամբ 1755 թ. հիմնադրվեց Մոսկվայի համալսարանը, որն այժմ կրում է նրա անունը։ Համալսարանը դարձավ XVIII դարի ռուսական առաջավոր

մտքի կենտրոն և մեծ դեր կատարեց Ռուսաստանի գիտության և կուլտուրայի զարգացման գործում։

Իր կյանքի վերջին տարիներին (նա մահացել է 1765 թ. ապրիլի 15 (4)-ին) գիտության տարբեր բնագավառների (մետաղագիտություն, լեռնային գործ և երկրաբանություն, օպտիկա, ծովագնացություն, աշխարհագրություն, օդերևութաբանություն, աստղագիտություն, ֆիզիկա, քիմիա և այլն) ուսումնասիրության հետ միասին Լոմոնոսովը գրել է արժեքավոր աշխատություններ ռուս ժողովրդի պատմության վերաբերյալ, մշակել է ռուսական գրական լեզվի ու քերականության հարցերը և այլն։

Ինչի համար պայքարում, ինչի մասին երազում էր Լոմոնոսովը, իրականություն է դարձել նրա հայրենիքում։ Այսօր Սովետական Միությունը ո՛չ միայն համատարած գրագիտության, այլև առաջավոր գիտության երկիր է։ Այժմ սովետական գիտությունը մի շարք ճյուղերում գլխավորում և ուղղություն է տալիս համաշխարհային գիտությանը, առաջին անգամ իրականացվում է գիտության և արտադրության իսկական կապը, որի ջերմ պաշտպանն էր իր ժամանակին Լոմոնոսովը։

Մեկ հոդվածի շրջանակներում հնարավոր չէ լրիվ պատկերացում տալ այնպիսի էնցիկլոպեդիստ մտածողի գիտական գործունեության մասին, ինչպիսին Լոմոնոսովն է, ուստի մենք կաշխատենք միայն ընդհանուր գծերով արծարծել նրա գործունեությունը՝ հասարակական կյանքի երևույթների, բնության և փիլիսոփայության բնագավառներում։

***

Հենվելով պատմական փաստերի վրա, Լոմոնոսովը ցույց էր տալիս, որ այսպես կոչված գերմանական դպրոցը (Գ. Բայեր, Գ. Միլլեր և ուրիշներ), ռուս ժողովրդի դերը համաշխարհային պատմության մեջ նսեմացնելու նպատակով, կեղծում են պատմությունը։ Նսեմացնելով սլավոնների դերը Եվրոպայի պատմության մեջ, նրանք առաջ էին քաշում այն տեսակետը, թե իբր սլավոնները ոչ թե բնիկ եվրոպացիներ են, այլ եկվորներ և այլն։ Քննադատելով այդ սխալ տեսակետը, Լոմոնոսովն առաջ էր քաշում այն միտքը, որ ռուս ժողովրդի պատմությունը և նրա համաշխարհային դերը հասկանալու համար անհրաժեշտ է վերջինս դիտել որպես համաշխարհային պատմության միասնական պրոցեսի մի մասը, վեր էր հանում սլավոնների դերը Եվրոպայի պատմության մեջ, հիմնավորում էր, որ սլավոնները բնիկներ են և այլն։

Ունենալով առանձին արժեքավոր մտքեր հասարակական կյանքի զարգացման վերաբերյալ, ընդհանուր առմամբ, Լոմոնոսովը պատմության վերաբերյալ անց էր կացնում իդեալիստական տեսակետ։ Այսպես, օրինակ, նա այն կարծիքին էր, որ լուսավորության և կուլտուրայի օգնությամբ կարելի է արմատապես վերափոխել հասարակությունը։ Գյուղացիների վիճակի բարելավումը նա կապում էր կալվածատերերի կուլտուրայի ու կրթության բարձրացման և ոչ թե սոցիալական ռևոլյուցիայի հետ։

Լոմոնոսովի հոգատարությունը դեպի ռուս ժողովուրդն իր փայլուն արտահայտությունն է գտել Ի. Ի. Շուվալովին գրած նամակում, որտեղ նա հանդես է գալիս ռուս ժողովրդի պահպանմանը և աճմանը խանգարող այնպիսի



գործոնների դեմ, ինչպիսիք էին՝ ճորտատիրական շահագործումը, անհավասար ամուսնությունը, բժշկական օգնության բացակայությունը և այլն։

Լոմոնոսովը մեծ հումանիստ էր, խաղաղության և ժողովուրդների եղբայրության պաշտպան։ Նա գիտության, լուսավորության և ընդհանրապես ժողովրդի բարգավաճման գործը կապում էր խաղաղության հետ։ 1752 թվականին Շուվալովին գրած՝ «Ապակու օգտի մասին» նամակում Լոմոնոսովը անարգանքի սյունին է գամում գաղութարարների ստոր գործողությունները, որոնք ոսկի կուտակելու նպատակով ոչնչացնում էին Ամերիկայի բնիկներին։ Այսօր, երբ ամբողջ առաջադեմ մարդկությունը նշում է Լոմոնոսովի ծննդյան 250-ամյակը, ամոթաբեր գաղութային սիստեմն ապրում է իր մայրամուտը, մարդկությունը հաստատ և վճռական քայլերով մոտենում է այն օրվան, երբ մեկընդմիշտ վերջ կտրվի մարդկային հասարակության պատմության այդ ստոր էտապին, որի ընթացքում ոչնչացվել և ստրկացվել են գաղութային և կախյալ երկրների հարյուր միլիոնավոր մարդիկ։

Մեծ է Լոմոնոսովի դերը ռուսաց լեզվի և գրականության զարգացման գործում։ Լոմոնոսովից սկսվում է մեր գրականությունը, գրել է ռուս մեծ քննադատ Բելինսկին, նա եղել է նրա հայրը և սնուցողը։ Լոմոնոսովը մեծ նշանակություն էր տալիս բոլորի համար հասկանալի ազգային լեզվի ստեղծմանը, որի հետ կապում էր նաև ազգային կուլտուրայի զարգացումը։ Այդ նպատակին հասնելու համար Լոմոնոսովն ամեն կերպ աշխատում էր գրական լեզուն մոտեցնել ժողովրդին։ Նշված բնագավառում նրա կատարած երկար տարիների աշխատանքի արդյունքը եղավ ռուսական առաջին քերականության ստեղծումը, որի հիմքում դրված էր բոլորի համար հասկանալի և հարուստ խոսակցական լեզուն։ Ռադիշչևը և Պուշկինը արդարացիորեն Լոմոնոսովին համարել են ռուսական խոսքի արմատավորողը։

Բացի քերականությունից Լոմոնոսովը գրել է նաև ռուսական պերճախոսության կուրսը, որի մեջ նա նպատակ էր դրել ցույց տալ, թե ինչպես պետք է ճիշտ, գեղեցիկ և հասկանալի ձևով շարադրել մտքերը, հենվելով բազմահարուստ և կենդանի ռուսաց լեզվի վրա։ Նրա մշակած ռուսական պերճախոսությունը արմատապես տարբերվում էր այդ ժամանակվա եկեղեցական պրակտիկայում տեղ գտած պերճախոսությունից, որը վարվում էր ո՛չ թե ռուսերեն, այլ լատիներեն լեզվով։ Լոմոնոսովի այդ աշխատությունն իր ժամանակին մեծ հաջողություն ունեցավ։

Լոմոնոսովը գտնում էր, որ պոեզիան պետք է ծառայի ժողովրդին, նրանում պետք է փառաբանվեն հայրենիքը, ժողովուրդը և նրա ծոցից ելած հերոսների սխրագործությունները։ Լոմոնոսովը պոեզիան դարձրեց գիտության տարածման հզոր միջոց։ Լոմոնոսովի պոեզիայի առանցքը կազմող հայրենիքի և մարդու երջանկության վեհ գաղափարները անթառամ փառքով են պսակում Լոմոնոսով քաղաքացուն, հումանիստին, հայրենասերին։ Լոմոնոսովի պոեզիան, ինչպես արդարացիորեն նկատել է Բելինսկին, մտել է գրականության պատմության մեջ, որպես մարդու հիմն։

Լոմոնոսովը բազմաթիվ արժեքավոր մտքեր է արտահայտել արվեստի հարցերի վերաբերյալ։ Նա վերականգնեց XII դարից մոռացված մոզաիկայի (խճանկարչության) արվեստը։ Նրա կազմակերպած գունավոր ապակիների գործարանում և լաբորատորիայում պատրաստվել են 43 նկարներ, որոնցից մեզ են հասել 22-ը. դրանք պատրաստված են ո՛չ թե գունավոր քարերից, այլ

գունավոր ապակիներից։ Այդ նկարները որոշակի գաղափար են տալիս Լոմոնոսովի նկարչական բարձր արվեստի մասին։

***

Մեծ են Լոմոնոսովի ծառայությունները գիտական մտքի զարգացման գործում։ Նա համարձակ կերպով առաջ էր մղում գիտությունը, հաղթահարելով դժվարությունները, անխնա պայքարում էր ռեակցիոն հայացքների դեմ, որոնք խանգարում էին գիտության առաջընթացին։ Որպես խոշոր բնագետ, իր հետազոտությունների ամենատարբեր բնագավառներում Լոմոնոսովը ձգտում էր ճանաչել բնությունն այնպես, ինչպես նա կա, բացահայտել վերջինիս զարգացման օրենքները։ Նման մատերիալիստական մոտեցումը Լոմոնոսովին հնարավորություն էր տալիս բնության մեջ տեղի ունեցող երևույթների պատճառները փնտրել բուն իրենց մեջ, բացահայտել վերջիններիս իսկական էությունը։ Նա իր հետազոտությունների ընթացքում երբեք չէր խոնարհվում հեղինակությունների առջև, ուշադիր կերպով ունկնդրում էր փորձի, պրակտիկայի ձայնը։ Լոմոնոսովը բարձր էր գնահատում փորձի դերը գիտական ճանաչողության գործում, սակայն, ի տարբերություն մերկ էմպիրիկների, նա փորձնական իմացությունը սերտ կերպով զուգակցում էր տեսական իմացության հետ, իսկ նման մոտեցումը հնարավորություն էր տալիս նրան մշակելու այդ ժամանակվա բնագիտության կարևոր պրոբլեմները։

Գիտական ճանաչողության ասպարեզում Լոմոնոսովն անալիզը և սինթեզը դիտում էր միասնության մեջ, որպես ճանաչողության պրոցեսի իրար հետ անխզելիորեն կապված և միմյանց փոխադարձաբար լրացնող երկու կողմեր։ Անալիզի և սինթեզի միասնությունը նա համարում էր լաբորատոր հետազոտությունների հիմքը։ Ի տարբերություն այդ շրջանում լայն տարածում ստացած բնության ուսումնասիրման մետաֆիզիկական մեթոդի, որն իրերը, երևույթներն ու պրոցեսները դիտում էր մեկը մյուսից անջատ, Լոմոնոսովն այն տեսակետին էր, որ ֆիզիկայի, քիմիայի, երկրաբանության և բնագիտության մյուս ճյուղերի կողմից ուսումնասիրվող երևույթները կապված են իրար հետ, պայմանավորում են մեկը մյուսին, ուստի պետք է ուսումնասիրվեն ո՛չ թե մեկուսացված ձևով, այլ փոխադարձ կապի մեջ։ Դա բոլորովին նոր հարցադրում էր, որը առաջ էր քաշում Լոմոնոսովը։ Նա գտնում էր, որ գիտության մեկ ճյուղի մասնագետները իրենց հետազոտությունների ընթացքում պետք է օգտագործեն մյուս գիտությունների ձեռք բերած նվաճումները։ Այսպես, օրինակ, Լոմոնոսովն այն կարծիքին էր, որ քիմիան ֆիզիկայից պետք է վերցնի այն, ինչ կարևոր է քիմիական երևույթների բացատրման համար և հակառակը, որպեսզի այդ երկու գիտություններն էլ ստանան լայն զարգացում, հնարավորություն ունենան երևույթների բացատրման վրա ավելի պայծառ լույս սփռելու։ Լոմոնոսովը գիտության պատմության մեջ առաջին անգամ մշակեց գիտության մի այնպիսի ճյուղ, ինչպիսին ֆիզիկական քիմիան է։ Այդ գիտության ստեղծումը երկու գիտությունների՝ ֆիզիկայի և քիմիայի շոշափակետում Լոմոնոսովի խոշոր ծառայություններից մեկն է, նոր առաջընթաց քայլ գիտության պատմության մեջ։ Իր մշակած ֆիզիկական քիմիայի կուրսում նա նոր ձևով էր դնում ֆիզիկական և քիմիական երևույթների միջև եղած կապի հարցը։ Լոմոնոսովը գտնում էր, որ այդ երևույթներն իրականում միշտ հանդես



են գալիս միասին, դրա համար էլ վերջիններիս ուսումնասիրությունը չի կարելի իրականացնել անջատ ձևով։

Լոմոնոսովի առաջ քաշած և հիմնավորած այն հանճարեղ միտքը, որ գիտության տարբեր ճյուղերի միջև եղած կապը պայմանավորված է նրանց կողմից ուսումնասիրվող բնագավառների կապով, որ գիտության տարբեր ճյուղերի հաջող զարգացման համար անհրաժեշտ է, որպեսզի վերջիններս գտնվեն փոխադարձ կապի և պայմանավորվածության մեջ, որ գիտության մեկ ճյուղի նվաճումները պետք է օգտագործվեն գիտության մյուս ճյուղի առաջընթացի համար, իր փայլուն հաստատումն է գտել գիտության հետագա զարգացմամբ։

Մեր օրերում գիտության զարգացումը տեղի է ունենում իրար հետ օրգանապես կապված երկու հակադիր տենդենցներով, մի կողմից շարունակվում և անընդհատ ավելի ու ավելի է խորանում գիտությունների դիֆերենցիացիայի պրոցեսը, իսկ մյուս կողմից, տարբեր գիտությունների շոշափակետերում ծագում են նոր գիտություններ, որոնք տանում են դեպի գիտության մեկ միասնական շենքի ստեղծումը։ Այսպես, օրինակ, ֆիզիկայի և քիմիայի շոշափակետում, բացի Լոմոնոսովի ստեղծած ֆիզիկական քիմիայից, ծագել է նաև գիտության նոր ճյուղ՝ քիմիական ֆիզիկա, բիոլոգիայի, ֆիզիկայի և քիմիայի շոշափակետերում՝ բիոքիմիան և բիոֆիզիկան, քիմիայի և երկրաբանության շոշափակետերում՝ գեոքիմիան և այլն։ Այսօր ավելի հրամայաբար է դրվում գիտության մեկ բնագավառի նվաճումները գիտության մյուս բնագավառներում օգտագործելու հարցը, քանի որ առանց նման մոտեցման անհնար է դառնում գիտության առանձին ճյուղերի բուռն զարգացումը։ Այսպես, օրինակ, ժամանակակից բիոլոգիայի արագ զարգացումը անհնար է պատկերացնել առանց ժամանակակից ֆիզիկայի և քիմիայի ձեռք բերած հսկայական նվաճումների օգտագործման։ Այստեղից որոշակիորեն երևում է, թե որքան մեծ զարգացում են ստացել գիտությունների կապի և փոխազդեցության վերաբերյալ Լոմոնոսովի մտքերը։

Լոմոնոսովը հետևողականորեն պայքարում էր հակագիտական տեսակետների՝ ֆլոգիստոնի, ջերմածնի և այլ կեղծ տեսությունների դեմ։ Համաձայն ֆլոգիստոնի տեսության, այրման պրոցեսը կապված է այրվող նյութերից հեռացող անտեսանելի և անկշռելի նյութի՝ ֆլոգիստոնի հետ։ Լոմոնոսովն իր փորձնական հետազոտությունների օգնությամբ հերքեց ֆլոգիստոնի կեղծ տեսությունը, ցույց տվեց, որ բնության մեջ կատարվող քիմիական փոփոխություններին մասնակցում են միանգամայն ռեալ նյութեր, որոնք ենթարկվում են ընդհանուր բնական օրենքներին։ Այդ օրենքի բացահայտումը և փորձնական հիմնավորումը հանդիսանում է Լոմոնոսովի մեծագույն ծառայությունը համաշխարհային գիտության առջև։ Լոմոնոսովի բացահայտած նյութի և շարժման պահպանման օրենքը մարդկային մտքի խոշորագույն հայտնագործություններից մեկն է։ Այդ օրենքը նոր և անսասան հիմք ստեղծեց բնության մատերիալիստական ըմբռնման համար և մահացու հարված հասցրեց մատերիայի և շարժման վերաբերյալ ամեն տեսակի իդեալիստական հայացքներին։

Այդ օրենքի ձևակերպումը Լոմոնոսովը տվել է 1748 թ. Լ. Էյլերին գրած նամակում, որտեղ նա ցույց է տալիս, որ իր բացահայտած օրենքը ո՛չ թե մասնակի, այլ բնության մեջ գործող ընդհանուր օրենք է, որն իր ուժը պահպանում է ինչպես նյութի, այնպես էլ շարժման վերաբերյալ։ Այստեղից որոշակիորեն երևում է, որ Լոմոնոսովն իր փորձնական հետազոտությունների ընդհանրաց-

ման ճանապարհով հասել է մատերիայի և շարժման միասնության ըմբռնմանը։ Այդ միասնությունն իր փայլուն հաստատումն է գտել ժամանակակից բնագիտության բազմաթիվ հայտնագործությունների և հատկապես մասսայի և էներգիայի անխզելի կապի գիտական հիմնավորման մեջ։

Հենվելով իր հայտնագործությունների և բնագիտության նվաճումների վրա, Լոմոնոսովը մշակում է ջերմության մեխանիկական տեսությունը։ Նա գալիս է այն համոզման, որ ջերմությունը ծագում է շարժումից, իսկ քանի որ շարժումն էլ չի կարող տեղի ունենալ առանց մատերիայի, ապա անհրաժեշտ է ջերմային շարժումը կապել մատերիայի որևէ կոնկրետ տեսակի հետ։ Նյութի այդպիսի կոնկրետ տեսակներ նա համարում է մոլեկուլները և ատոմները, որոնցից կազմված են մեզ շրջապատող առարկաները։ Այստեղ արժեքավորն այն է, որ Լոմոնոսովը ջերմությունը կապում է նյութական շարժման որոշ տեսակի հետ։ Դրանով նա ցույց է տալիս, որ այսպես կոչված ջերմածնի տեսակետը, որը լայն տարածում էր ստացել ֆիզիկոսների շրջանում, չի համապատասխանում իրականությանը, որովհետև նա ջերմության պատճառը փնտրում է ո՛չ թե նյութական պրոցեսներում, այլ հատուկ անկշռելի նյութի մեջ, որն իբր մտնում է բոլոր մարմինների կազմի մեջ։ Թեև Լոմոնոսովի մշակած տեսությունը զերծ չէր մեխանիկական մտածողության տարրերից, բայց իր ժամանակի համար դա առաջընթաց լուրջ քայլ էր։ Ջերմությունը և կրակը առաջ են գալիս շարժումից, գրում էր Լոմոնոսովը, իսկ շարժումը կարող է լինել մատերիայի մեջ. ինչպես շարժումն առանց մատերիայի, այնպես էլ կրակն առանց շարժման չի կարող գոյություն ունենալ։ Գիտության զարգացման հետագա ընթացքը փայլուն կերպով հաստատեց Լոմոնոսովի առաջ քաշած մտքերը, բացահայտվեց ջերմության, որպես շարժման հատուկ տեսակի, սպեցիֆիկ բնույթը, վեր հանվեց նրա տեղը շարժման մյուս տեսակների շարքում։

Լոմոնոսովը ատոմա-մոլեկուլային տեսության հիմնադիրներից մեկն է։ 1741 թ. գրած «Մաթեմատիկական քիմիայի էլեմենտները» աշխատության մեջ նա շարադրում է իր տեսակետը մատերիայի կառուցվածքի վերաբերյալ։ Լոմոնոսովը որոշակի սահման է անցկացնում մատերիայի երկու իրարից որակապես տարբեր մասնիկների՝ էլեմենտների (ատոմների) և կորպուսկուլաների (մոլեկուլների) միջև։ «Էլեմենտը,— գրում է Լոմոնոսովը,— մարմնի այն մասն է, որը կազմված չէ որևէ ուրիշ ավելի մանր և իրենից տարբերվող մարմիններից» (М. В. Ломоносов, Избранные философские произведения, էջ 89)։ Այստեղից որոշակիորեն երևում է, որ էլեմենտը հանդիսանում է նյութի բաժանելիության սահմանը, այսինքն՝ ժամանակի պատկերացմամբ այն հիմքը, որից ծագում է իրերի և երևույթների հարուստ բազմազանությունը։ Ժամանակակից գիտությունը վաղուց իրականացրել է ատոմի բաժանելիությունը, բացահայտել է վերջինիս բարդ կառուցվածքը, սակայն այդ չի նշանակում, թե ատոմը դադարել է մատերիայի որակապես որոշակի դիսկրետ մասնիկ լինելուց, ընդհակառակը, նա այժմ ըմբռնվում է ո՛չ թե մատերիայի բաժանելիության վերջին սահմանը, ինչպես մտածում էին անցյալում, այլ մատերիայի բաժանելիության քիմիական սահման, որից այն կողմ մասնիկները կորցնում են իրենց քիմիական հատկությունները։ Էլեմենտները Լոմոնոսովը դիտում է այն կապի մեջ, որը տանում է դեպի կորպուսկուլաները։ Վերջիններս ծագում են էլեմենտների միացման ճանապարհով։ Համաձայն Լոմոնոսովի բնորոշման «Կորպուսկուլան էլեմենտների հավաքականությունն է, որը առաջացնում է մեկ



փոքրիկ մասսա»։ Նշանակի, Լոմոնոսովի հիշատակած կորպուսկուլաները, դրանք ոչ այլ ինչ են, եթե ոչ մոլեկուլներ, որոնցից ծագում է մեզ շրջապատող իրերի և երևույթների հարուստ բազմազանությունը։

Լոմոնոսովը՝ չի բավարարվում էլեմենտների և կորպուսկուլաների միջև եղած կապի և որակական տարբերության բացահայտմամբ, նա աշխատում է գտնել մեզ շրջապատող իրերի և երևույթների հարուստ բազմազանության պատճառը։ Նա տարբերում է երկու տեսակի կորպուսկուլաներ՝ համասեռ և ոչ համասեռ։ Կորպուսկուլաները համասեռ են, եթե կազմված են միևնույն թվով միատեսակ էլեմենտներից, որոնք միացած են իրար հետ միևնույն ձևով։ Կորպուսկուլաները ոչ համասեռ կամ տարասեռ են, եթե կազմված են տարբեր էլեմենտներից, որոնք միացած են իրար հետ տարբեր քանակներով, իսկ միևնույն քանակների դեպքում տարբեր ձևերով։ Այստեղից որոշակիորեն երևում է, որ Լոմոնոսովը հիմնականում ճիշտ է նկատել մեզ շրջապատող իրերի և երևույթների հարուստ բազմազանության պատճառը։ Լոմոնոսովի այս դատողությունները դուրս էին գալիս իր ժամանակի գիտական մտքի շրջանակներից և որոշ իմաստով կանխորոշում էին քիմիայի հետագա զարգացումը։ Նրա այն պնդումը, թե միևնույն տեսակի և միևնույն քանակի քիմիական էլեմենտները տարբեր ձևերով միանալով իրար հետ կարող են առաջացնել որակապես տարբեր մոլեկուլներ, գործնականում հիմնավորվեց Լոմոնոսովի մահից 58 տարի հետո, երբ առաջին անգամ 1823 թ. ցույց տրվեց, որ շառաչող արծաթը և իզոցիանաթթվական արծաթը ունեն միատեսակ կազմ, բայց տարբեր հատկություններ։ Սակայն այդ երևույթը, որը հայտնի է իզոմերիա անունով, իր իսկական բացատրությունն ստացավ XIX դարի երկրորդ կեսին ռուս մեծ քիմիկոս Բուտլերովի՝ նյութի քիմիական կառուցվածքի տեսության շնորհիվ։

Մենք ընդհանուր գծերով նշեցինք Լոմոնոսովի կատարած խոշոր հայտնագործությունները ֆիզիկայի և քիմիայի բնագավառներում, բայց նա շատ արժեքավոր հետազոտություններ ունի նաև գիտության այլ բնագավառներում։ Սակայն նշված հայտնագործություններն էլ միանգամայն բավական են ընդհանուր պատկերացում կազմելու գիտության այդ տիտանի մասին, որն անթիվ մարգարիտներ է սփռել իմացության ամենատարբեր բնագավառներում։

***

Փիլիսոփայության հիմնական հարցը՝ մատերիայի և գիտակցության փոխհարաբերության հարցը Լոմոնոսովը լուծում էր մատերիալիստորեն, նա գտնում էր, որ նյութական աշխարհը գոյություն ունի անկախ մարդու կամքից ու գիտակցությունից և զարգանում է իրեն հատուկ օրենքներով։ Մատերիան այն է, գրում է Լոմոնոսովը, ինչից կազմված է մարմինը և ինչից կախված է նրա էությունը։ Բոլոր մարմինները «կազմված են մատերիայից և ձևից... վերջինս կախված է առաջինից (М. В. Ломоносов, Избранные философские произведения, էջ 92)։ Ձևի և մատերիայի փոխհարաբերության հարցում Լոմոնոսովն անց էր կացնում ճիշտ տեսակետ, նա առաջնությունը տալիս էր ո՛չ թե ձևին, այլ մատերիային, որը համարում էր իրերի էությունը։ Սակայն մատերիան բնութագրելիս նա սահմանափակվում էր գլխավորապես վերջինիս մեխանիկական հատկություններով, և դա հասկանալի է, որովհետև այդ ժամանակվա գիտություններից զարգացման համեմատաբար բարձր աստիճանի էր հասել և քիչ

թե շատ ավարտուն տեսք էր ընդունել միայն մեխանիկան։ Դրա համար էլ ինչպես XVIII դարի մատերիալիզմն ամբողջությամբ վերցրած, այնպես էլ Լոմոնոսովի մատերիալիզմը, մեխանիստական էր։

Մատերիայի հիմնական հատկությունները Լոմոնոսովը համարում էր տարածությունը, ուժը, իներցիան, անթափանցելիությունը և մեխանիկական շարժումը։ Դրանք այն հատկանիշներն են, որոնց օգնությամբ մեխանիկայում բնութագրվում են մարմինները։ Լոմոնոսովը ցույց էր տալիս, որ տարածականությունից զուրկ նյութական մասնիկները չեն կարող առաջացնել տարածական մարմիններ, դրա համար էլ անհնար է խոսել տարածականությունից զուրկ նյութական մասնիկների մասին։ Իսկ այստեղից որոշակիորեն երևում է, որ տարածականությունը հավասարապես հատուկ է բոլոր մարմիններին, ինչպես մեծ, այնպես էլ փոքր, այսինքն՝ տարածությունն անբաժանելի է մատերիայից։

Փիլիսոփայության պատմության մեջ առաջընթաց քայլ էին Լոմոնոսովի ընդհանրացումները շարժման ձևերի ըմբռնման բնագավառում։ Նա շարժումը համարում էր մատերիայի անբաժանելի հատկությունը։ Մարմինների անընդհատ առաջացումն ու քայքայումը, գրում էր Լոմոնոսովը, վկայում են կորպուսկուլաների շարժման մասին, որը տեղի է ունենում ամենուրեք, ինչպես կենդանի, այնպես էլ անկենդան բնության մեջ։ Լոմոնոսովը շարժումը գլխավորապես դիտում էր որպես մեխանիկական տեղափոխություն։ Շարժման աղբյուրը նա փնտրում էր ո՛չ թե բուն իրերի մեջ, այլ նրանցից դուրս, որը հանգեցնում էր առաջնահարվածի սխալ տեսակետին։

Սակայն Լոմոնոսովին չէր բավարարում միայն մեխանիկական շարժումը, նա փորձում էր հաղթահարել այդ ժամանակվա գիտության շրջանակները, առաջ էր քաշում ներքին և արտաքին շարժման հարցը, փորձում էր դասակարգել ներքին շարժումը (առաջընթաց, պտտական և տատանողական), ջերմությունը կապում էր մոլեկուլների և ատոմների շարժման հետ, իսկ էլեկտրականությունը և լույսը համարում էր եթերի շարժման յուրատեսակ ձևերը։ Նման մոտեցումը հնարավորություն էր տալիս Լոմոնոսովին ո՛չ միայն առաջ քաշելու շարժման տարբեր ձևերի հարցը, այլև հիմնովին հերքելու այդ ժամանակ գիտնականների շրջանում տարածում գտած կեղծ տեսությունները, որոնք փորձում էին ջերմային, քիմիական, էլեկտրական և այլ երևույթները կապել անկշռելի և անտեսանելի նյութերի հետ (ջերմածին, էլեկտրական հեղուկ և այլն)։ Դրանով նա ընդգծում էր նշված բնագավառների բացահայտման ճիշտ ուղին, վերջիններս կապում էր նյութական պրոցեսների հետ, որը հսկայական առաջընթաց քայլ էր։

Բնագիտության նվաճումների հետ ունեցած անխզելի կապը Լոմոնոսովին հնարավորություն էր տալիս իր մատերիալիզմը դարձնել ավելի հետևողական։ Նա հանդես էր գալիս առաջնային և երկրորդային որակների դեմ։ Այդ տեսակետի կողմնակիցները (Գալիլեյը, Լոկը և ուրիշներ) այն կարծիքին էին, թե իբր օբյեկտիվորեն գոյություն ունեն միայն առաջնային որակներ (տարածականությունը, ծանրությունը, ուժը, իներցիան), որոնք բնութագրում են առարկան ամբողջությամբ, իսկ երկրորդային որակները (հոտը, համը, գույնը, ձայնը և այլն) իբր կապված չեն առարկայի հետ և ունեն սուբյեկտիվ ծագում։ Լոմոնոսովը ցույց էր տալիս, որ ո՛չ միայն առաջնային, այլև երկրորդային որակները գոյություն ունեն օբյեկտիվորեն, օրգանապես կապված են իրար հետ և պայմանավորում են մեկը մյուսին։ Միայն վերջիններս առարկան բնութագրում են տարբեր կողմերից և իմացվում են տարբեր ճանապարհներով։

Իմացության թեորիայի բնագավառում Լոմոնոսովը կանգնած էր մատերիալիստական սենսուալիզմի դիրքերում։ Նա այն կարծիքին էր, որ արտաքին աշխարհը և նրա օրինաչափությունները ճանաչելի են, դրա համար էլ աշխարհի ճանաչելիությունը ժխտող իդեալիստական տեսակետները համարում էր ոչ կենսունակ և գիտության հետ առնչություն չունեցող։ Լոմոնոսովը վճռականորեն հանդես էր գալիս ինչպես ռացիոնալիզմի «բնածին գաղափարների», այնպես էլ սենսուալիստ Լոկի կողմից պաշտպանվող «ներքին փորձի» դեմ։ Նա ցույց էր տալիս, որ իսկական գիտական իմացությունը գոյանում է զգայականի և տրամաբանականի ճիշտ զուգակցման ճանապարհով, այնպես որ չի կարող լինել իսկական իմացություն առանց փորձի և տեսական եզրակացությունների։ Բարձր գնահատելով տեսական եզրակացությունների դերը գիտական իմացության մեջ, Լոմոնոսովը միաժամանակ պահանջում էր դրանք ստուգել փորձով։ Ստույգ փորձերի միջոցով նա ցույց տվեց, որ Բոյլի օրենքը ռեալ գազերի նկատմամբ կիրառելիս տալիս է որոշ շեղում։ Կնշանակի, ըստ Լոմոնոսովի, իսկական գիտական իմացությունը կազմվում է երեք, իրար հետ փոխադարձաբար կապված էտապներից՝ զգայական ընկալումներ, գիտական ընդհանրացումներ և, վերջապես, գիտության ձեռք բերած արդյունքների փորձնական ստուգում։

Լոմոնոսովի ստեղծած մատերիալիստական տրադիցիան հետագայում կարևոր դեր խաղաց Ռուսաստանում բնագիտության ու փիլիսոփայական մտքի զարգացման գործում։ Լոմոնոսովը XVIII դարի համաշխարհային գիտության ամենապայծառ աստղերից մեկն է։ Նրա գիտական խոշոր հայտնագործությունները առհավետ մտել են համաշխարհային գիտության ոսկե ֆոնդի մեջ։ Նրա անմահ կերպարը, որպես առաջավոր գիտության համար մարտնչող անձնվեր մարտիկի, այսօր էլ լավագույն օրինակ է ծառայում սովետական և ամբողջ աշխարհի գիտնականների համար։

Ա. ՄԻՆԱՍՅԱՆ

# ՀՈՒՇԵՐ ՌԵՎՈԼՅՈՒՑԻՈՆ ԱՆՑՅԱԼԻՑ

## ԱՆՄԱՐ ՏՊԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

Դժվար է այժմ ամենայն մանրամասնությամբ հիշել ու շարադրել այն բոլոր դեպքերն ու իրադարձությունները, որոնց մասնակցել կամ ականատես եմ եղել մոտ կես դար առաջ։ Բայց կան դեպքեր, իրողություններ, պայծառ անձնավորություններ, որոնք ինչքան էլ ծածկված լինեն տարիների մշուշով, չեն աղոտանում, չեն ջնջվում մարդու հիշողությունից։

1917 թվականի դեկտեմբեր։ Թիֆլիսի Զուբալովի թատրոնում, Վերայի կամրջից ոչ հեռու, տեղի էին ունենում Կովկասյան բանակի Երկրային II համագումարի նիստերը։ Ինձ բախտ վիճակվեց լինել այդ համագումարում, որտեղ բոլշևիկները փայլուն հաղթանակ տարան և ծանր հարված հասցրին անդրկովկասյան հակահեղափոխությանը։ Պետք էր տեսնել, թե ինչպես բոլշևիկները, Ստ. Շահումյանի ղեկավարությամբ, դիմակազերծ էին անում պարոնայք մենշևիկներին, որոնք խոսքով սոցիալիստ էին, իսկ գործով՝ շովինիստ ու դավաճան։

Ստեփան Շահումյանին ես առաջին անգամ տեսել էի 1917 թվականին Թիֆլիսում՝ բոլշևիկների Հավլաբարի ակումբում, որտեղ նա դասախոսություն կարդաց ազգային հարցի մասին։ Այդ օրն իսկ նա հմայեց իր ունկնդիրներին։ Բոլշևիկ ղեկավարի նրա հիանալի հատկությունները մի առանձին փայլով դրսևորվեցին Կովկասյան բանակի Երկրային II համագումարում։ Համագումարում քննարկվող հիմնական հարցն էր «Ընթացիկ մոմենտը և իշխանության հարցը Կովկասում»։ Այդ առթիվ ելույթ ունեցավ Ստ. Շահումյանը։ Շահումյանը լենինյան տիպի պերճախոս հռետոր էր։ Ի տարբերություն Գեգեճկորիի և պառլամենտական այլ հռետորների, նա կեցվածքներ չէր ընդունում, չէր կոտրատվում, ճոռոմաբանում։ Հակառակորդներին նա ջախջախում էր իր հուժկու տրամաբանությամբ, կծու սարկազմով և նյութի խոր իմացությամբ։ Հասարակ մարդկանց պարզ ու հասկանալի էին նրա ճառերը։

Համագումարում բոլշևիկների տարած հաղթանակը նսեմացնելու, բոլշևիկներին վարկաբեկելու համար մենշևիկները, աջ էսեռները, դաշնակցականները սուտ լուր տարածեցին, թե իբր Պետրոգրադից հաղորդում է ստացվել, որ Սովետական Ռուսաստանը դադարեցրել է Բրեստ-Լիտովսկի հաշտության բանակցությունները Գերմանիայի հետ, և Լենինը կոչ է արել շարունակել պատերազմը։ Այդ կեղծիքին պաշտոնական բնույթ տալու համար սանձարձակ ճառով հանդես եկավ մենշևիկ Գեգեճկորին։ Այնուհետև ելույթ ունեցավ Ստ. Շահումյանը և կոնկրետ փաստերով մերկացրեց հակահեղափոխության պարագլխի մտացածին հերյուրանքները։

Ինչպե՜ս խայտառակվեցին մենշևիկներն ու նրանց պարագլուխները, երբ մի ժամ անց Անդրկովկասյան Կոմիսարիատի փոստ-հեռագրական կոմիսար (1914 թվականից ՌՍԴԲՊ անդամ) Ահարոնյանը համագումարին զեկուցեց, որ Պիտերից ստացվել է մի ընդարձակ հեռագիր՝ Գերմանիայի հետ զինադադար կնքելու մասին։ Այդ հաղորդումից հետո անասելի աղմուկ բարձրացավ դահլիճում։ Բոլշևիկներն ու նրանց հարողները բուռն օվացիա կազմակերպեցին Ստ. Շահումյանի պատվին։ Մենշևիկներն ու նրանց դաշնակիցները մերկացվել էին սուտ և խաբեության մեջ։ Համագումարը որոշեց այդ հեռագիրը հրապարակել թերթերում, և հաջորդ օրը ժողովուրդն իմացավ Բրեստ-Լիտովսկի հաշտության բանակցությունների ընթացքի մասին։

Համագումարն ընտրեց Կովկասյան բանակի Երկրային նոր Սովետ, բոլշևիկ Կորգանովի նախագահությամբ։ Այդ Սովետում բոլշևիկները բացարձակ մեծամասնություն էին կազմում։

1917 թվականի դեկտեմբերի վերջին Երկրային կոմիտեն ինձ գործուղեց Ալեքսանդրապոլ՝ բանակում պարտիական աշխատանք տանելու։ Ալեքսանդրապոլում ես եղել էի մի քանի անգամ, բայց կարճ ժամանակով և պարզ պատկերացում չունեի նրա կյանքի, էկոնոմիկայի և կուլտուրայի մասին։ Ուստի և գալով քաղաք առաջին հերթին հետաքրքրվեցի բնակչության նիստ ու կացով, տեղի քաղաքական կյանքով։ Պարտիայի քաղաքային կոմիտեում, որը գտնվում էր Բեբուտովյան փողոցում, ես հանդիպեցի Բ. Ղարիբջանյանին։



Ղարիբջանյանը սրածայր, սև բեղերով, նիհարադեմ, միջահասակ մարդ էր։ Հանգիստ էր նրա հայացքը։

— Շատ ուրախ եմ, որ Անդրերկրկոմը ձեզ ուղարկել է մեր պարտիական կազմակերպությանը։ Մենք մեծ կարիք ենք զգում գրագետ պարտիական աշխատողների։

Այս խոսքերով սկսեց Ղարիբջանյանն իր զրույցն ինձ հետ։ Ղարիբջանյանը մի անգամ էլ ուշադրությամբ նայեց ինձ, կարծես խորհելով, թե ինչից սկսի իր զրույցը։ Նա համառոտակի ինձ ծանոթացրեց Ալեքսանդրապոլի վիճակին։

Զրույցի վերջում Բ. Ղարիբջանյանն ասաց, որ քաղաք են ժամանել նոր զորամասեր, որոնք հապճեպորեն ձևավորվել են դաշնակների և Անդրկովկասյան Կոմիսարիատի կողմից։ Բայց դրանց կազմում, ասաց նա, կան հին զինվորներ, սպաներ, որոնք համակրում են բոլշևիկներին, չեն ընկել հակահեղափոխության ազդեցության տակ։ Անհրաժեշտ է թափանցել զորամասերը, ուսումնասիրել զինվորների և հրամանատարության փոխհարաբերությունները։ Ես հավատացած եմ, որ դաշնակներն իրենց սադրաֆոնական քաղաքականությամբ արդեն իրենց դեմ են լարել զինվորների և սպաների մի մասին։ Եթե մեզ հաջողվի աշխատանք կազմակերպել բանակում, տարակույս չկա, որ զինվորների մեծամասնությունը մեր կողմը կանցնի։ Եթե դուք կապ ունեք ռադիոդիվիզիոնի հետ, ապա հարկավոր է հենց այնտեղ էլ հաստատվել։ Մեր գործի համար շատ օգտակար է ռադիոկայանում մեր մարդն ունենալ։

— Սակայն,— նկատեց Բագրատը,— ձեր գործունեությունը դրանով չի սահմանափակվում։ Մեր կազմակերպությունն այժմ չունի իր թերթը, իսկ առանց թերթի շատ դժվար է։ Անհրաժեշտ է ամենահասարակ, ամենասովորական մարդկանց սրտին հասցնել մեր խոսքը։ Մի քանի րոպե լռելուց հետո Ղարիբջանյանը մեղմ ժպիտով դիմեց ինձ.

— Լսել եմ, որ դուք լրագրական աշխատանքի որոշ փորձ ունեք, Թիֆլիսում խմբագրել եք «Նոր սերունդ» երիտասարդական թերթը։ Լավ կլիներ ձեռնամուխ լինեիք մեր պարտիական թերթի հրատարակմանը...

Երկար տևեց զրույցը Ղարիբջանյանի հետ։ Մենք շոշափեցինք ամենաբազմազան թեմաներ։

Ինչպես պայմանավորվել էինք Ղարիբջանյանի հետ, ես իմ պարտիական աշխատանքն սկսեցի ռադիոդիվիզիոնում, մասնավորապես, այդ դիվիզիոնի կուրսանտների շրջանում։ Դասընթացներում շատ կային Թիֆլիսից ինձ ծանոթ պարտիական և անպարտիական ընկերներ։ Լավ եմ հիշում Գրիշա Շահսուվարյանին, Թադևոս Մանդալյանին և ուրիշներին։ Այդ ընկերների հետ մենք սկսեցինք մեր շուրջը համախմբել առավել առաջավոր, համարձակ և ակտիվ մարդկանց. առաջարկեցինք դասընթացներում զինվորական դեպուտատների Սովետ կազմակերպել։ Մեր աշխատանքի մասին իմացավ հրամանատարությունը։ Պարապմունքներից մեկի ժամանակ մեզ համար անսպասելի դասարան մտավ բարձրահասակ, թիկնեղ, թխադեմ մի գնդապետ։ Նա ինչ-որ բան շշնջաց դասատուի ականջին, որն իր տեղը զիջեց գնդապետին։ Վերջինս սկսեց խոսել զինվորական պարտքի, հայրենիքի փրկության, մեծ Հայաստանի ճակատագրի մասին... Ապա սկսեց բոլշևիկներին հայհոյել և, վերջապես, հայտարարեց, թե ռադիոդիվիզիոն, մանավանդ կուրսանտների մեջ, թափանցել է բոլշևիկյան վարակը և այն տարածող մարդկանց մասին հարկավոր է հայտնել հրամանատարությանը։ Մեռելային լռություն տիրեց։ Գնդապետը գոռգոռում էր, մոլեգնում, սպառնում, բայց այդ ամենը չչփոթեց կուրսանտներին։ Նրանք նստած էին հանգիստ ու լուռ։ Գնդապետը գնաց առանց որևէ արդյունքի հասնելու։ Դա հիանալի հաղթանակ էր. մեզ համար արդեն պարզ էր, որ կուրսանտների մեջ կայուն հիմք ունեինք մեր հետագա աշխատանքի համար։

Բոլշևիկների Ալեքսանդրապոլի կազմակերպությունը գյուղի հետ կապ էր պահպանում գյուղում աշխատող մի քանի ընկերների միջոցով։ Այդ ընկերներից ես լավ եմ հիշում Ռուբեն Սաֆարյանի պայծառ կերպարը։ Նա ուռուցիկ, լայն ճակատով, գանգուր ու սև մազերով բարձրահասակ մի երիտասարդ էր։ Սաֆարյանն ինձ միշտ զարմացնում էր իր բուռն եռանդով, գյուղի կյանքի խոր իմացությամբ, ընթացիկ իրադարձություններն ընդհանրացնելու և ճիշտ հետևություններ անելու ունակությամբ։ Նա հազվադյուտ էր լինում քաղաքում, ուստի ես անհամբեր սպասում էի նրա գալուն։ Հանդիպումներին նա միշտ մեծ ոգևորությամբ ինձ պատմում էր, թե ինչ է տեղի ունենում գյուղում։

— Մեր գյուղացին,— ասում էր Ռուբենը,— շատ է մտահոգված Անդրկովկասը Ռուսաստանից անջատելու կապակցությամբ, չի հավատում դաշնակների խոստումներին, անպաշտպան է զգում իրեն հարձակվող թուրքական զորքերի հանդեպ։

Ռուբենը շատ էր սիրում ժողովրդական երգերը, Շիրակի անծայրածիր հեռուները, կանաչ դաշտերը։ Ալագյազի ձյունածածկ գագաթները, Մանթաշի քամիները, մայր հողի շունչը։ Սաֆարյանը դեռ այն օրերին երազում էր ժողովրդի գեղարվեստական ինքնագործունեության, ժողովրդական տաղանդների զարգացման մասին։ Ռուբենը ժողովրդական մասսաների գեղարվես-

տական ինքնագործունեության իրոք գաղափարական նախաձեռնողներից մեկն էր։ Նա հաճախ ինձ ասում էր. «Ես իմ ամբողջ երիտասարդ կյանքը կզոհեմ հանուն իմ ժողովրդի երջանկության»։

Թերթի հրատարակությունը կապված էր բազմաթիվ դժվարությունների հետ. թուղթ չկար, փող չկար, և որ գլխավորն է, չկային լրագրային աշխատողներ։ Այնուամենայնիվ բանվորների օգնությամբ հաղթահարվեցին այդ դժվարությունները։

Հայերեն թերթի առաջին համարը «Պրոլետար» անունով լույս տեսավ 1918 թվականի ապրիլ ամսին [1]։ Այդ համարում զետեղված էր Վ. Ի. Լենինի՝ «Մեր օրերի գլխավոր խնդիրը» հոդվածը, տպարանի գրաշար Գ. Հաննեսօղլյանի թարգմանությամբ։ Որպես այդ հոդվածի բնաբան Վ. Ի. Լենինը բերում էր Նեկրասովի խոսքերը.

> Դու և՛ աղքատ ես, դու և՛ առատ ես,
> Դու և՛ հզոր ես, դու և՛ անզոր ես,
> — Մա՛յր Ռուսաստան։

Այդ տողերը շատ էին սազում հոշոտված Հայաստանի ծանր օրերին։ Հայաստանը և՛ «աղքատ էր», և՛ «անզոր» դաշնակների ավանտյուրիստական քաղաքականության հետևանքով։

Շատ պրիմիտիվ էր տպագրական տեխնիկան Ալեքսանդրապոլում. տպագրող մեքենաներն աշխատում էին ո՛չ թե էլեկտրականությամբ, այլ ձեռքով. բանվորները պտտում էին մեքենայի անիվը և շարժման մեջ դնում տպագրահաստոցը։

Հիշում եմ, երբ ինձ տպարանից հայտնեցին, որ թերթի առաջին համարի տպագրությունը կանգ է առել բանվորական ուժի պակասության պատճառով, ստիպված եղա մի քանի կոմունիստների հետ տպարան գնալ։ Երեք ժամ հետո թերթի ամբողջ տիրաժը տպագրված էր։

Նոր թերթի լույսընծայումը մեծ իրադարձություն էր մեր կազմակերպության ու քաղաքի կյանքում։ Դաշնակները շշմել էին, նրանց համար բոլորովին անսպասելի էր այդ։

Թերթի երկրորդ համարը նվիրված էր մայիսմեկյան տոնին։ Բնակչության մեջ մի առանձին սենսացիա առաջացրեց թերթում իմ զետեղած հաղորդումն այն մասին, որ Աստրախանից զորք է ուղարկված՝ օգնելու Բաքվի կոմունային։ Բոլորին ուրախություն պատճառեց այդ լուրը։ Բնակչության ճնշող մեծամասնության համակրանքը Բաքվի Սովետական իշխանության կողմն էր։ Անձնվեր, մեծ աշխատանք էին կատարում Ալեքսանդրապոլի բոլշևիկները։ Հիշում եմ այնպիսի բանվորների և ակտիվիստների աշխատանքը, ինչպիսիք էին՝ Բագրատ Լոդյանը, Թադևոս Թադևոսյանը, Գևորգ Հաննեսօղլյանը, Խաչիկ Օհանջանյանը, Հայկ Մարկոսյանը և ուրիշները։ Կանանցից իրենց ակտիվությամբ ու պատանեկան ավյունով առանձնապես աչքի էին ընկնում՝ Վազգանուշ Հակոբյանը, Լիզա Գևորգյանը, Վարդուշ Թարախչյանը և ուրիշներ։

Հիշատակության արժանի է ալեքսանդրապոլցի բոլշևիկների իրականացրած ևս մի կարևոր միջոցառում՝ «Կարմիր Գվարդիայի» ստեղծումը։ «Կարմիր Գվարդիայի» ստեղծման դրդապատճառները երկուսն էին։

Սանձարձակ ավազակները գիշերներն անպատիժ գնդակահարում էին անմեղ մարդկանց և դիակներին փակցնում «ազգի դավաճան» պիտակը։ Հետագայում պարզվում էր, որ այդ «դավաճանները» հասարակ բանվորներ կամ գյուղացիներ են, որոնք դեմ էին պատերազմին, դժգոհ էին դաշնակցական խմբապետների լծից։ «Կարմիր Գվարդիան» պետք է գործուն դիմադրություն ցույց տար դաշնակցականների տեռորին։

Երկրորդ՝ օրեցօր ավելի պարզ էր դառնում, որ թուրքերի ներխուժումն Անդրկովկաս անխուսափելի է, ուստի և ինքնապաշտպանության համար հարկավոր էր ունենալ որոշ ռազմական ուժ։

«Կարմիր Գվարդիայում» ընդգրկված էին մի շարք ընկերներ երկաթուղային դեպոյից, արհեստանոցներից և այլ ձեռնարկություններից ու կազմակերպություններից։ «Կարմիր Գվարդիայի» ակտիվիստներն էին՝ Թ. Թադևոսյանը, Հ. Մարկոսյանը, Բ. Լոդյանը, Վ. Հակոբյանը, Գ. Հաննեսօղլյանը և ուրիշներ։

Բազմակողմանի էր մեր պարտիայի գործունեությունն Ալեքսանդրապոլում։ Կոմունիստները մեծ աշխատանք էին տանում բանվորների ու գյուղացիների շրջանում, հանդես էին գալիս ժողովներում ու միտինգներում, կազմակերպում հրապարակային դասախոսություններ ու զեկուցումներ։ Ապրիլ և մայիս ամիսներին առանձնապես ուժեղացվեց բանակում տարվող աշխատանքը։ Բայց այդ աշխատանքն ընդհատվեց Ալեքսանդրապոլի վրա թուրքերի հարձակման հետևանքով։ Այդ տեղի ունեցավ 1918 թվականի մայիսի 15-ին։

Մինչ այդ Ալեքսանդրապոլում կուտակվել էին զգալի թվով զորքեր։ Կարսից նահանջող զինվորները զայրույթով ու ատելությամբ էին խոսում Անդրկովկասյան հակահեղափոխության պարագլուխների դավաճան քաղաքականության մասին։ «Սրիկաները գլխովին թուրքերին վաճառեցին մեզ, մեր երեխաներին ու կանանց, մեր երկիրն ու ամբողջ ժողովրդին»— ասում էին նրանցից շատերը։

Քաղաքում սարսափելի դրություն էր ստեղծվել։ Հարձակման անսպասելիությունից, սարսափից խելակորույս, տագնապահար մարդիկ չգիտեին ինչ անել։ Տղամարդիկ, կանայք, երեխաները հագուստը, բարձը կամ կոշիկները ձեռքներին փախչում էին, իրենք էլ չիմանալով թե ուր։ Քաղաքի կենտրոնում ավելի ստվարաթիվ էր դեպի կայարան կամ դեպի խճուղի շտապող բազմությունը։ Իսկ շտաբում և ինտենդանտությունում աշխատող շատ զինվորականներ բեռնատար ու մարդատար ավտոմեքենաներով, իրենց ընտանիքներով և գույքով, նույնիսկ շներով ու կատուներով, ծլկում էին քաղաքից։ Ժողովուրդը թողնված էր բախտի քմահաճույքին։ Ամենուրեք քաոս էր և անարխիա։ Ո՞րտեղ էին «փառապանծ» ջանֆիդաները, որտե՞ղ էին խմբապետներն ու մաուզերիստները։

Այդ օրհասական ժամին դաշնակցականները ոչ մի տեղ չէին երևում։ Ասենք, նրանք ժողովրդի հետ երբեք չէին էլ եղել։ Ես շտապում էի պարտիայի քաղկոմ։ Շենքի դռան մոտ հանդիպեցի Ղարիբջանյանին. նա կիսազինվորական հագուստով էր և զինված։ Ինձ տեսնելով, աշխուժացավ, ժպիտ երևաց նրա գունատ դեմքին, կարծես սթափվեց խոր մտքերից։

Վազելուց շնչակտուր, ես հարցրի.

— Բագրատ, այս ի՞նչ է կատարվում չորս կողմը։

— Չորս կողմը՝ պատերազմ է, իսկական պատերազմ։ Թուրքական զորքերը հարձակվել են քաղաքի վրա։

Բագրատը կտրուկ ընդհատեց խոսակցությունը. առաջարկեց ինձ գնալ կայարան և երկաթուղայինների օգնությամբ կազմակերպել էվակուացիան։

Երկաթուղային կայարանում անասելի մեծ բազմություն էր հավաքվել։ Մարդատար և ապրանքատար բոլոր գնացքները լեփ-լեցուն էին մարդկանցով։ Ոչ ոք չէր մտածում հիվանդ և վիրավոր զինվորների մասին, որոնք կառամատույցին պառկած տնքում էին։

Կյանքի ողբերգական պահերին ծիծաղաշարժ բաներ էլ շատ են լինում։ Ալեքսանդրապոլցիները սիրում էին քնել բմբուլի մեծ բարձերին, ամանք տնից փախչելիս հետները վերցրել էին մի քանի այդպիսի բարձ։ Բայց, քանի որ վագոններում շատ նեղվածք էր, նրանք ստիպված դեն էին գցել բարձերը։ Սակայն կանայք, երևի որոշել էին բմբուլը թափել, պահելով գոնե բարձի երեսները։ Քամուց այդ բմբուլը բարձրացել և ձյան նման ծածկել էր ամբողջ կայարանը, լցվել մարդկանց աչքերը, բերանն ու ականջները։ Ամեն կողմից լսվում էր զայրալից հայհոյանք։

Կոմունիստ երկաթուղայինների օգնությամբ հաջողվեց ազատել վագոնները և նրանցում տեղավորել հոսպիտալներից բերված հիվանդ զինվորներին, ապա՝ կանանց, ծերերին ու երեխաներին։ Երեկոյան դեմ ոչ մի վագոն ու շոգեքարշ չմնաց կայարանում։ Թուրք զինվորները ճեղքել հասել էին կազաչի պոստը, որտեղ կռվում էր կարմիրգվարդիականների ջոկատը։ Պետք էր քաղաքը թողնել։ Կայարանում մնացած մի քանի ընկերների հետ ես Ալեքսանդրապոլից գնացի սարերը, որպեսզի գիշերն անցկացնեմ յայլաներից մեկում, իսկ հաջորդ օրը հասնեմ Մեծ Ղարաքիլիսա։

Պղտոր գետի նման սարերն էին ելնում տանջահար մարդիկ ու հոգնած անասունները։ Շիրակցին հեռանում էր հայրենի գյուղերից ու դաշտերից, թողնում պապենական տունն ու օջախը...

Երեկոյանում էր։ Հեռվում, կապույտ մշուշում էր մնացել հոշոտված և հեծեծող Ալեքսանդրապոլը։ Լեռների գագաթներին հանգչում էին վերջալույսի շողերը։ Այդ դժնդակ գիշերը ես անցկացրի Ջաջուռի լեռներում։ Առավոտյան հայտնի դարձավ, որ թուրքերը շարունակում են իրենց հարձակումը դեպի հյուսիս։ Գաղթականների հետ ես էլ շարունակեցի իմ ճանապարհը դեպի Թիֆլիս։ Այստեղ ևս քաղաքի բնակչությունը տագնապալից վիճակում էր։ Պատմում էին թուրք ասկյարների գազանությունների, հայ գաղթականների ծանր վիճակի մասին։ Շշուկներ էին լսվում Անդրկովկասյան սեյմի մոտալուտ վախճանի մասին։

Եվ իրոք, 1918 թվականի մայիսի 25-ին մենշևիկները, դաշնակցականներն ու մուսավաթականները թաղեցին իրենց հարազատ մանկանը՝ Անդրկովկասյան սեյմը։ Այդ առթիվ ոչ ոք լաց չեղավ։ Սկսվեց Անդրկովկասի բուրժուանացիոնալիստական «անկախ» ռեսպուբլիկաների արյունոտ տիրապետության ժամանակաշրջանը։ Երկրամասի բոլշևիկյան կազմակերպությունները կրկնապատկված եռանդով գլխավորեցին բանվորների ու գյուղացիների պայքարը հանուն Սովետական իշխանության։

Ես բախտ չունեցա անմիջականորեն մասնակցելու Հայաստանում Սովետական իշխանության հաստատման համար մղվող մարտերին։ Այդ ժամանակ ես կատարում էի պարտիայի այլ հանձնարարություններ։ Բայց միշտ իմ բոլոր խոհերով ու զգացմունքներով ես մարտնչող Հայաստանի հետ էի։

ԳՈՒՐԳԵՆ ՈՍԿԱՆՅԱՆ
(ՍՄԿՊ անդամ 1916 թ.)

1 «Պրոլետար» թերթի հրատարակման փաստը հաստատում են նաև հին բոլշևիկներ Գ. Ջաղացպանյանը և Կ. Խաչատրյանը։— Խմբ.։

# ՆԱՄԱԿՆԵՐ ԵՎ ԹՂԹԱԿՑՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԲԱՄԲԱԿԱԳՈՐԾՈՒԹՅԱՆ ՄԵՋ ԼԱՅՆՈՐԵՆ ԿԻՐԱՌԵԼ ՄԵՔԵՆԱՑՈՒՄԸ

*Մեր ռեսպուբլիկայում գյուղատնտեսության կարևոր ճյուղերից մեկը բամբակագործությունն է։ Այն Արարատյան դաշտավայրի շրջանների էկոնոմիկայում գրավում է բավականին մեծ տեսակարար կշիռ և հանդիսանում է կոլտնտեսությունների եկամտի գլխավոր աղբյուրներից մեկը։*

*Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXII համագումարը նշեց, որ պետության շահերը պահանջում են առաջիկայում ևս արագորեն ավելացնել բամբակի արտադրությունը։ «Բամբակենու ցանքերի ընդարձակման հետ մեկտեղ,—ասում է Ն. Ս. Խրուշչովը,— որպես ամենագլխավոր խնդիր մնում է բերքատվության բարձրացումը ոռոգվող հողերն ավելի լավ օգտագործելու, բամբակի մշակումը մեքենայացնելու միջոցով»։*

*Բամբակի հումքի արտադրության ավելացման և ինքնարժեքի իջեցման գործում կարևոր նշանակություն ունի բամբակագործության մեջ կոմպլեքսային մեքենայացման արմատավորումը և կիրառումը։ Այն հնարավորություն կտա կրճատելու ագրոձեռնարկումների կատարման ժամկետները, բարձրացնելու կատարվող աշխատանքների որակը, որով և ամուր հիմք կստեղծվի կայուն, բարձր և էժան հումք ստանալու համար։ Մյուս կողմից մեքենայացումը կթեթևացնի բամբակագործների, հատկապես կանանց ֆիզիկական աշխատանքը և նրանց հնարավորություն կտա ավելի շատ զբաղվելու իրենց երեխաների դաստիարակությամբ, կուլտուրական պահանջմունքները բավարարելու գործով։*

*Հայաստանի Կոմպարտիայի Կենտկոմի և Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի 1959 թվականի օգոստոսի համատեղ որոշմամբ 1959—1965 թվականների համար մշակված են բամբակագործության կոմպլեքսային մեքենայացման ամենակարևոր միջոցառումները՝ քառակուսի բնային ցանքը, սահմանված թվով սերմեր բնում ցանելը, մեքենայական բերքահավաքը, ճկուն խողովակներով և սիֆոններով ոռոգումը և այլն։*

*Ռեսպուբլիկայի բամբակագործների եռուն ջանքերի շնորհիվ բամբակենու մշակությունը կոմպլեքսային մեքենայացման ենթարկելու ուղղությամբ անցյալ տարի որոշ աշխատանք կատարվեց։ Բավական է ասել, որ քառակուսի-բնային եղանակով ցանվեց 3300 հեկտար տարածություն։ Քառակուսի-բնային ցանքի արմատավորման բնագավառում որոշակի հաջողությունների հասավ Վեդու շրջանի Ղարալար գյուղի Հ. Հակոբյանի ղեկավարած բրիգադան։ Այստեղ 72 հեկտար տարածության վրա ցանքը կատարվեց քառակուսի-բնային եղանակով՝ 50×50 սխեմայով։ Կոլտնտեսության բամբակենու մյուս 88 հեկտարը*



*ցանվեց և մշակվեց սովորական եղանակով։ Քառակուսի-բնային ցանքի և մշակության համար յուրաքանչյուր հեկտարի վրա ծախսվեց 12 մարդ-օր, իսկ սովորական մշակության համար՝ 28 մարդ-օր (չհաշված բերքահավաքը)։ Առավել մեծ է բերքատվության տարբերությունը։ Քառակուսի-բնային եղանակով մշակված դաշտերի ամեն մի հեկտարից միջին հաշվով ստացվեց 26,7 ցենտներ, իսկ սովորական եղանակով մշակված դաշտերից՝ 15,4 ցենտներ բամբակի հումք։*

*Քառակուսի-բնային ցանքի արմատավորումն ունի կարևոր տնտեսական նշանակություն։ Այն հնարավորություն է տալիս երկու անգամ կրճատելու ցանքի նորման, 50—60 տոկոսով՝ բամբակենու նոսրացման աշխատանքները, որը համարվում է բամբակագործության ամենաաշխատատար պրոցեսներից մեկը։*

*Ռեսպուբլիկայի բամբակագործները, հաշվի առնելով քառակուսի-բնային ցանքի առավելությունները, ընթացիկ տարում 5860 հեկտարի (կամ ամբողջ պլանտացիայի 45 տոկոսը) ցանքը կատարեցին այդ պրոգրեսիվ եղանակով, իսկ Վեդու շրջանի բամբակագործները բամբակենու պլանտացիաների 70 տոկոսի ցանքը կատարեցին քառակուսի-բնային եղանակով։*

*Բամբակագործության հետագա զարգացման համար վճռական նշանակություն ունի չանաքի մեքենայացումը։ Մինչդեռ այդ գործը մեր ռեսպուբլիկայում գտնվում է խիստ ցածր մակարդակի վրա։*

*Սկսած 1950 թվականից, ռեսպուբլիկայում բերվել են բամբակ հավաքող տարբեր մարկայի շուրջ 200 մեքենաներ, սակայն դրանց զգալի մասը օգտագործվել է որպես շարժիչ՝ գյուղատնտեսական այլ աշխատանքներ կատարելու համար։ 1960 թվականին ռեսպուբլիկայում եղած չանաքի 50 մեքենաներից բերքահավաքի համար օգտագործվել են միայն 23-ը, որոնք հավաքել են ընդամենը 409 հեկտարի բերք, կամ պլանային առաջադրանքը կատարվել է 13 տոկոսով։*

*Բամբակենու բերքահավաքի մեքենայացման ցածր մակարդակը հետևանք է այն բանի, որ կոլտնտեսությունների ղեկավարները պահպանողական վերաբերմունք են ցույց տալիս այդ գործին, իսկ պարտիական կազմակերպություններն անբավարար են տարածում ինչպես ռեսպուբլիկայի, այնպես էլ Միության առաջավոր բամբակ հավաքող մեքենավարների փորձը։*

*1960 թվականին ռեսպուբլիկայում ստացվել է 21 և ընթացիկ տարում՝ 20 նոր ԽՎՍ—1/2 բամբակ հավաքող մեքենաներ։ Փորձը ցույց տվեց, որ այդ մեքենաները նախորդների համեմատությամբ ունեն մի շարք առավելություններ։ Նոր մեքենաները միաժամանակ մաքուր կերպով հավաքում են 2 շարք (հետևապես 2 անգամ բարձր է արտադրողականությունը) և մեխանիկ վարորդի համար ունեն ավելի լավ հարմարանքներ։*

*Անցյալ տարի Արտաշատի շրջանի Արևշատ գյուղի կոլտնտեսության կոմպլեքսային բրիգադայի բրիգադավար Խ. Խաչատրյանը 25 հեկտար հողատարածությունից ԽՎՍ—1/2 մարկայի մեքենայով հավաքեց 51 տոննա բամբակ։ Անվանի մեխանիզատորը այս տարի ևս լավագույն ցուցանիշների հասավ։ Մտնելով ՍՄԿՊ XXII համագումարի պատվին ծավալված սոցիալիստական մրցության մեջ, նա 23 հեկտարի բերքը հավաքեց մեքենաներով և տվեց բարձր արտադրանք։ Թվում էր, որ Արտաշատի շրջանի մյուս կոլտնտեսությունների պարտիական կազմակերպությունները Խաչատրյանի օրինակով մեքենայացված չանաք կկազմակերպեն նաև իրենց մոտ։ Բայց այդպես չարվեց, որի*

հետևանքով շրջանում 1960 թվականին պլանով նախատեսված 400 հեկտարի դիմաց մեքենայով հավաքվեց 39 հեկտար, նույնիսկ ԽՎՍ—1/2 մարկայի 2 նոր մեքենաներ բոլորովին չօգտագործվեցին բերքահավաքի ժամանակ: Բամբակի բերքահավաքի մեքենաները լրիվ կարողությամբ չեն օգտագործում նաև մյուս շրջանները:

Բամբակի մեքենայական բերքահավաքի հաջողությունը մեծ չափով կախված է դաշտերի նախապատրաստումից: Անհրաժեշտ է ընտրել համեմատաբար մեծ և հարմար հարթությամբ դաշտեր, մշակությունն այդ դաշտերում կազմակերպել այնպես, որ բամբակենին ունենա փարթամ և հավասար աճ. այդպիսի պայմաններում բամբակ հավաքող մեքենաները տալիս են լավ արդյունք:

Բամբակ հավաքող մեքենաների աշխատանքի որակը մեծ չափով կախված է դաշտերի մաքրությունից, որովհետև մոլախոտերը արգելակում են բամբակի հավաքը, այդ պատճառով պետք է հասնել նրան, որպեսզի բամբակենին զերծ լինի մոլախոտերից:

Բամբակացան շրջանների պարտիական ու սովետական կազմակերպությունները և կոլտնտեսությունների վարչությունները պարտավոր են հասնել այն բանին, որպեսզի մեքենաներով չանաքելու համար առանձնացված տարածությունների բերքը չհավաքվի ձեռքով:

Բամբակենու կոմպլեքսային մեքենայացման գործում խիստ կարևոր նշանակություն ունի ոռոգման մեքենայացումը: Հաշվարկները ցույց են տալիս, որ ոռոգման հետ կապված ծախսերը բավականին մեծ տեսակարար կշիռ են կազմում բամբակի հումքի ինքնարժեքի մեջ: Հետևապես, ոռոգման մեքենայացումը այժմ կարևոր անհրաժեշտություն է և պետք է ընթանա է՛լ ավելի կատարելագործված ձևերով՝ անձրևացնող մեքենաների միջոցով, ճկուն խողովակներով, սիֆոններով, ինչպես նաև ոռոգման կատարելագործված այլ եղանակներով:

Վերջին տարիներս Միության առանձին կոլտնտեսությունների և գիտահետազոտական կազմակերպությունների կողմից փորձարկվել են մեքենայացված ոռոգում՝ ոռոգիչ սարքավորումների օգնությամբ՝ ճկուն խողովակների միջոցով: Փորձարկումները ցույց են տվել, որ մեքենայացված ոռոգումը մի շարք առավելություններ ունի սովորական ակոսային ոռոգման համեմատությամբ: Ճկուն խողովակներով ոռոգման նախապատրաստման համար միջին հաշվով մեկ հեկտարի համար ծախսվում է 2—3 մարդ-ժամ, իսկ սովորական ձևով ոռոգելիս՝ 10—14 մարդ-ժամ: Ճկուն խողովակներով ոռոգման կիրառումը զգալի չափով հեշտացնում է ջրի բաշխումը հողակտորի վրա, հեշտացնում է ջրի մղումը առանձին խորդուբորդությունների վրա և կարգավորում ջրի բաշխումը:

Ոռոգման մեքենայացման ուղղությամբ արդեն առաջին քայլերն են կատարվում մեր ռեսպուբլիկայում: «Հայգյուղտնտտեխնիկայի» միավորման բազաներում դեռևս վաղ գարնանը ստացվել են 10 հազար մետր այդպիսի խողովակներ, որոնք բաժանված են բամբակացան շրջանների միջև: Արտաշատի շրջանը փոխադրել է 1000 մետր, որից 500 մետրը ներդրված է Խ. Խաչատրյանի բրիգադայում՝ 23 հեկտար տարածության վրա ոռոգումը պրոգրեսիվ եղանակով կատարելու համար:

Բամբակագործության մեքենայացման կարևոր պայմաններից մեկը կոմպլեքսային մեքենայացումն ու առաջավոր փորձի լայն արմատավորումն է, որը



հնարավորություն է տալիս բարձրացնելու երկրագործության կուլտուրան և երկրում ստեղծելու գյուղատնտեսական մթերքների առատություն: Այդ գործում լուրջ հաջողություններ է ձեռք բերել Ուզբեկստանի անվանի մեխանիզատոր, Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Վալենտին Տյուպկոն: Նրա բրիգադայի անդամները աշխատանքի նկատմամբ ցուցաբերում են կոմունիստական վերաբերմունք, բացահայտում են աշխատանքի արտադրողականության բարձրացման ռեզերվները, լայնորեն կիրառում են բամբակենու աճեցման նոր մեթոդները և խելացի օգտագործում տեխնիկան:

Մեր ռեսպուբլիկայի բամբակացան շրջանները վերջին տարիներում որոշակի աշխատանք են կատարել կոմպլեքսային մեքենայացման բրիգադաներ կազմակերպելու ուղղությամբ: Արդեն գործում են այդպիսի 24 բրիգադաներ (Արտաշատում՝ 2, Վեդիում՝ 12, Էջմիածնում՝ 6, Հոկտեմբերյանում՝ 2, Շահումյանում՝ 2): Այդ բրիգադաները ցանել են 1300 հեկտար բամբակենի, որի մշակությունը հիմնականում կոմպլեքսային մեքենայացման է ենթարկված:

Բամբակագործության մեքենայացման մակարդակի բարձրացման գործում մեծ նշանակություն ունի մեխանիզատորական կադրերի պատրաստումը, ինչպես նաև այդ ուղղությամբ կոլտնտեսականների ուսուցման կազմակերպումը:

Գյուղատնտեսության մեքենայացումը պրոպագանդելու ուղղությամբ մեծ անելիքներ ունի ռեսպուբլիկայի Գյուղատնտեսության մինիստրության գիտության, պրոպագանդայի և առաջավոր փորձի արմատավորման վարչությունը և Գյուղատնտեսության մեխանիզացիայի և էլեկտրիֆիկացիայի գիտահետազոտական ինստիտուտը:

Պարտիայի XXII համագումարը երկրի բամբակագործների առջև խնդիր է դրել՝ հասնել այն բանին, որպեսզի յուրաքանչյուր կոլտնտեսություն և սովխոզ առաջիկա տարիներին բամբակի պլանտացիաների յուրաքանչյուր հեկտարի բերքատվությունը միջին հաշվով հասցնի 25 ցենտների: Մեր ռեսպուբլիկայում կան բազմաթիվ կոլտնտեսություններ, որոնք 1960 թվականին և այս տարի յուրաքանչյուր հեկտարից ստացել են 30—35 ցենտներ բերք: Բամբակագործության մեջ լիովին կոմպլեքսային մեքենայացում կիրառելու, աշխատանքը օրինակելիորեն կազմակերպելու միջոցով մենք կարող ենք համագումարի առաջադրանքը գերակատարել:

Ն. ՎԻՐԱԲՅԱՆ
ՀԿՊ ԿԿ-ի գյուղբաժնի վարիչ

հետևանքով շրջանում 1960 թվականին պլանով նախատեսված 400 հեկտարի դիմաց մեքենայով հավաքվեց 39 հեկտար, նույնիսկ ԽՎՍ—1/2 մարկայի 2 նոր մեքենաներ բոլորովին չօգտագործվեցին բերքահավաքի ժամանակ։ Բամբակի բերքահավաքի մեքենաները լրիվ կարողությամբ չեն օգտագործում նաև մյուս շրջանները։

Բամբակի մեքենայական բերքահավաքի հաջողությունը մեծ չափով կախված է դաշտերի նախապատրաստումից։ Անհրաժեշտ է ընտրել համեմատաբար մեծ և հարմար հարթությամբ դաշտեր, մշակությունն այդ դաշտերում կազմակերպել այնպես, որ բամբակենին ունենա փարթամ և հավասար աճ. այդպիսի պայմաններում բամբակ հավաքող մեքենաները տալիս են լավ արդյունք։

Բամբակ հավաքող մեքենաների աշխատանքի որակը մեծ չափով կախված է դաշտերի մաքրությունից, որովհետև մոլախոտերը արգելակում են բամբակի հավաքը, այդ պատճառով պետք է հասնել նրան, որպեսզի բամբակենին զերծ լինի մոլախոտերից։

Բամբակացան շրջանների պարտիական ու սովետական կազմակերպությունները և կոլտնտեսությունների վարչությունները պարտավոր են հասնել այն բանին, որպեսզի մեքենաներով չանաքելու համար առանձնացված տարածությունների բերքը չհավաքվի ձեռքով։

Բամբակենու կոմպլեքսային մեքենայացման գործում խիստ կարևոր նշանակություն ունի ոռոգման մեքենայացումը։ Հաշվարկները ցույց են տալիս, որ ոռոգման հետ կապված ծախսերը բավականին մեծ տեսակարար կշիռ են կազմում բամբակի հումքի ինքնարժեքի մեջ։ Հետևապես, ոռոգման մեքենայացումը այժմ կարևոր անհրաժեշտություն է և պետք է ընթանա ճ՛լ ավելի կատարելագործված ձևերով՝ անձրևացնող մեքենաների միջոցով, ճկուն խողովակներով, սիֆոններով, ինչպես նաև ոռոգման կատարելագործված այլ եղանակներով։

Վերջին տարիներս Միության առանձին կոլտնտեսությունների և գիտահետազոտական կազմակերպությունների կողմից փորձարկվել են մեքենայացված ոռոգում՝ ոռոգիչ սարքավորումների օգնությամբ՝ ճկուն խողովակների միջոցով։ Փորձարկումները ցույց են տվել, որ մեքենայացված ոռոգումը մի շարք առավելություններ ունի սովորական ակոսային ոռոգման համեմատությամբ։ Ճկուն խողովակներով ոռոգման նախապատրաստման համար միջին հաշվով մեկ հեկտարի համար ծախսվում է 2—3 մարդ-ժամ, իսկ սովորական ձևով ոռոգելիս՝ 10—14 մարդ-ժամ։ Ճկուն խողովակներով ոռոգման կիրառումը զգալի չափով հեշտացնում է ջրի բաշխումը հողակտորի վրա, հեշտացնում է ջրի մղումը առանձին խորդուբորդությունների վրա և կարգավորում ջրի բաշխումը։

Ոռոգման մեքենայացման ուղղությամբ արդեն առաջին քայլերն են կատարվում մեր ռեսպուբլիկայում։ «Հայգյուղտնտտեխնիկայի» միավորման բազաներում դեռևս վաղ գարնանը ստացվել են 10 հազար մետր այդպիսի խողովակներ, որոնք բաժանված են բամբակացան շրջանների միջև։ Արտաշատի շրջանը փոխադրել է 1000 մետր, որից 500 մետրը ներդրված է Խ. Խաչատրյանի բրիգադայում՝ 23 հեկտար տարածության վրա ոռոգումը պրոգրեսիվ եղանակով կատարելու համար։

Բամբակագործության մեքենայացման կարևոր պայմաններից մեկը կոմպլեքսային մեքենայացումն ու առաջավոր փորձի լայն արմատավորումն է, որը



հնարավորություն է տալիս բարձրացնելու երկրագործության կուլտուրան և երկրում ստեղծելու գյուղատնտեսական մթերքների առատություն։ Այդ գործում լուրջ հաջողություններ է ձեռք բերել Ուզբեկստանի անվանի մեխանիզատոր, Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Վալենտին Տյուպկոն։ Նրա բրիգադայի անդամները աշխատանքի նկատմամբ ցուցաբերում են կոմունիստական վերաբերմունք, բացահայտում են աշխատանքի արտադրողականության բարձրացման ռեզերվները, լայնորեն կիրառում են բամբակենու աճեցման նոր մեթոդները և խելացի օգտագործում տեխնիկան։

Մեր ռեսպուբլիկայի բամբակացան շրջանները վերջին տարիներում որոշակի աշխատանք են կատարել կոմպլեքսային մեքենայացման բրիգադաներ կազմակերպելու ուղղությամբ։ Արդեն գործում են այդպիսի 24 բրիգադաներ (Արտաշատում՝ 2, Վեդիում՝ 12, Էջմիածնում՝ 6, Հոկտեմբերյանում՝ 2, Շահումյանում՝ 2)։ Այդ բրիգադաները ցանել են 1300 հեկտար բամբակենի, որի մշակությունը հիմնականում կոմպլեքսային մեքենայացման է ենթարկված։

Բամբակագործության մեքենայացման մակարդակի բարձրացման գործում մեծ նշանակություն ունի մեխանիզատորական կադրերի պատրաստումը, ինչպես նաև այդ ուղղությամբ կոլտնտեսականների ուսուցման կազմակերպումը։

Գյուղատնտեսության մեքենայացումը պրոպագանդելու ուղղությամբ մեծ անելիքներ ունի ռեսպուբլիկայի Գյուղատնտեսության մինիստրության գիտության, պրոպագանդայի և առաջավոր փորձի արմատավորման վարչությունը և Գյուղատնտեսության մեխանիզացիայի և էլեկտրիֆիկացիայի գիտահետազոտական ինստիտուտը։

Պարտիայի XXII համագումարը երկրի բամբակագործների առջև խնդիր է դրել՝ հասնել այն բանին, որպեսզի յուրաքանչյուր կոլտնտեսություն և սովխոզ առաջիկա տարիներին բամբակի պլանտացիաների յուրաքանչյուր հեկտարի բերքատվությունը միջին հաշվով հասցնի 25 ցենտների։ Մեր ռեսպուբլիկայում կան բազմաթիվ կոլտնտեսություններ, որոնք 1960 թվականին և այս տարի յուրաքանչյուր հեկտարից ստացել են 30—35 ցենտներ բերք։ Բամբակագործության մեջ լիովին կոմպլեքսային մեքենայացում կիրառելու, աշխատանքը օրինակելիորեն կազմակերպելու միջոցով մենք կարող ենք համագումարի առաջադրանքը գերակատարել։

Ն. ՎԻՐԱԲՅԱՆ
ՀԿՊ Կենտկոմի գյուղբաժնի ճրահանգիչ

## ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄՈՒՄ ԵՎ ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏՈՒՄ

ՀԿԿ Կենտկոմի բյուրոն և Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետը քննության առնելով գյուղատնտեսության կապիտալ շինարարության ընթացքը՝ նշեցին, որ այն ռեսպուբլիկայում միանգամայն անբավարար է ընթանում։ Դա հետևանք է այն բանի, որ ռեսպուբլիկայի Գյուղատնտեսության, Մթերումների, Շինարարության մինիստրությունները, «Հայգյուղտնտեխնիկա» միավորումը, Սովխոզների գլխավոր վարչությունը, առանձին նախագծային կազմակերպություններ, շինարարական տրեստներ, պարտիայի շրջկոմներ ու շրջսովետների գործկոմներ համապատասխան միջոցառումների չեն դիմել գյուղատնտեսության կապիտալ շինարարության պլանը ժամանակին կատարելու համար։

Կենտկոմի բյուրոն և Մինիստրների Սովետը Գյուղատնտեսության, Մթերումների մինիստրություններին և Սովխոզների գլխավոր վարչությանը պարտավորեցրին շինարարական կազմակերպությունների հետ միասին տասն օրվա ընթացքում մշակել և իրականացնել կոնկրետ միջոցառումներ՝ անպայման ապահովելու կապիտալ շինարարության պլանի կատարումը և գյուղատնտեսական օբյեկտների ժամանակին օգտագործման հանձնումը։

Շինարարության մինիստրությանը հանձնարարվեց կարճ ժամանակում վերացնել գյուղական շինարարական կազմակերպությունների աշխատանքում եղած թերությունները. ամեն մի օբյեկտի շինարարության գծով կազմել գրաֆիկ և ապահովել դրա կատարումը. մինչև տարվա վերջը ավարտել Ախուրյանի, Մարտունու և Սիսիանի շրջանների անասունների արհեստական սերմնավորման կայանների, Լոռու փորձնական բազայի հորթանոցի և մյուս օբյեկտների շինարարությունը ու դրանք հանձնել շահագործման։

«Հայգյուղտնտեխնիկա» միավորմանը պարտավորեցվեց անհրաժեշտ միջոցառումների դիմել ընթացիկ տարվա գյուղատնտեսական շինարարության պլանը կատարելու համար. մինչև տարվա վերջն ավարտել Քանաքեռի, Մարտունու, Կարմրաշենի սովխոզների բնակելի շենքերի, Շահումյանի շրջանի Ազիզբեկովի անվան սովխոզի ջերմոցի, Արովյանի շրջանի Թռչնաբուծական ֆաբրիկայի և մյուս օբյեկտների շինարարությունն ու շահագործման հանձնումը։

Գյուղատնտեսության կապիտալ շինարարության պլանի կատարումն ապահովելու նպատակով Կենտկոմի բյուրոն և Մինիստրների Սովետը կոնկրետ հանձնարարություններ տվին նաև ռեսպուբլիկայի Մթերումների, Շինարարության մինիստրություններին, Պետպլանին, Պետշինին և պարտիայի շրջկոմներին ու շրջսովետների գործկոմներին։



### ՈՒՂՂՈՒՄ

*Մեր ամսագրի № 10-ի 41-րդ էջում ներքևից 17-րդ տողը կարդալ այսպես. «պետք է հասցվեն մինչև 13 միլիոն տոննայի, իսկ կաթի գնումները՝ մինչև 50 միլիոն տոննայի» և այնուհետև ինչպես տեքստում։*

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ԹՈՒՄԱՆՅԱՆ Հ. Ե., ԿԻՐԱԿՈՍՅԱՆ Ա. Մ., ԿԻՐԱԿՈՍՅԱՆ Ջ. Ս., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍԱՐԳՍՅԱՆ Վ. Հ.

Թողարկիչ՝ Ս. Սարյան
Սրբագրիչ՝ Ջ. ԱՎԱԳՅԱՆ

Խմբագրության հասցեն՝ Երևան, ՀԿՊ Կենտկոմի շենք, հեռ. 2—56—92

Адрес редакции: Ереван, здание ЦК КП Армении, тел. 2—56—92

ՎՖ 10601 Պատվեր 2488 Տիրաժ 8850

Տպ. 7 մամուլ, մամուլում 68 340 նիշ: Ստորագրված է տպագրության 27/XI 1961 թ.։

Հայկական ՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Հրատարակչությունների և պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր ... տպարան, Երևան։



## ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

### «ՍԻՐԻՈՒՍ»-Ը ԱՄԵՆԱՀԶՈՐ ԼԱՄՊՆ Է ԱՇԽԱՐՀՈՒՄ

Վերջերս Մոսկվայի ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդեսի «Մեքենաշինության» պավիլիոնը երեկոները լուսավորվում է այնպիսի վառ և հավասարաչափ լույսով, որ դժվար է տարբերել արևից։ Այդ լույսը արձակում է «Սիրիուս»-ը, որի հզորությունը հավասար է 300 հազար վատի և տալիս է այնքան լույս, որքան հիսուն մոմանոց 25 հազար սովորական էլեկտրական լամպերը միասին։ «Սիրիուս»-ը կարող է լուսավորել մինչև 100 հեկտար տարածություն։ Ոչ հեռու ապագայում 200—300 մետր բարձրություն ունեցող խոշոր էներգետիկ սարքավորումները «Սիրիուս» տիպի լամպերով, երեկոյան ժամերին, արևի լույս կտան քաղաքներին։ Լուսավորող ինքնատիպ այդ սարքավորումը Մոսկվայի էլեկտրալամպերի գործարանի բանվորների և ինժեներա-տեխնիկական անձնակազմի փայլուն նվերն է պարտիայի XXII համագումարին։

### ԻՆՔՆԱԹԱՓ ՀՍԿԱՆ

Բելոռուսիայի ավտոգործարանի կոլեկտիվը ՍՄԿԿ XXII համագումարի օրերին ավարտեց նոր «Բել-ԱԶ-540» քսանյոթ տոննա բեռնատարողությամբ հսկա ինքնաթափ ավտոմեքենայի ստեղծման աշխատանքները։ Նոր մեքենան իր նախորդ 25 տոննանոց, «ՄԱԶ—525» ինքնաթափի համեմատությամբ ավելի կոմպակտ է, վերցնում է 2 հազար կիլոգրամ ավելի բեռ, իսկ քաշը 4 տոննայով պակաս է նրանից։ Մեքենայի արագությունը ժամում ավելի քան 50 կիլոմետր է։ Հիդրոտեխնիկական փոխանցումները թեթևացնում են վարորդի ֆիզիկական աշխատանքը և հեշտացնում մեքենայի ղեկավարումը։ Ներկայումս գործարանի կոլեկտիվը պատրաստվում է նոր՝ 45 տոննա բեռնատարողությամբ փորձնական մեքենա հավաքել։ Աշխատանքներ են տարվում նաև ստեղծելու 60 տոննա բեռնատարողությամբ ինքնաթափ մեքենա։

### ԿԱՊ ՈՒԼՏՐԱՄԱՆԻՇԱԿԱԳՈՒՅՆ ՃԱՌԱԳԱՅԹՆԵՐԻ ՄԻՋՈՑՈՎ

Ինչպես հաղորդում է անգլիական «Նյու Սույենտիստ» ժուռնալը «Վեստինգաուզ էլեկտրիկ» ֆիրմայի ինժեներները մշակել են կոսմիկական կապի նոր սիստեմ ուլտրամանիշակագույն ճառագայթների միջոցով, որը մասնագետների կարծիքով մի շարք առավելություններ ունի ներկայումս օգտագործվող ինֆրակարմիր ճառագայթային և ռադիոալիքային կապի համեմատությամբ։ Նշում են, որ այս միջոցով հնարավոր է կապվել մինչև 15 միլիոն միլ հեռավորության վրա, ինչպես նաև հեռուստատեսային կապ հաստատել լուսնի հետ։ Երկնային և ջերմային աղմուկից զերծ լինելը, հեռավոր տարածության վրա կապվելու հնարավորությունը բարենպաստ պայմաններ են կոսմիկական նավերի հետ կապի նման մեթոդն օգտագործելու համար։

### ՃԿՈՒՆ ԲԵՏՈՆ

Ընթացիկ տարին երկրագնդի բոլոր մասերի համար բնորոշ էր երկրաշարժերի ինտենսիվ գործունեությամբ, որի հետևանքով հազարավորներն են տուժել, իսկ վնասները հասել են միլիարդների։ Ամերիկյան ինժեներ Էդմոնդ Նազարը առաջարկել է նոր, ճկուն բետոն երկրագնդի՝ երկրաշարժերի առավել ենթակա շրջաններում շենքերի ծածկը և պատերի ծեփը շաղախելու համար։ Ճկուն բետոնը 10 անգամ ավելի մեծ ճնշման է դիմանում, քան սովորականը։

### ԳՐՊԱՆԻ ՌԱԴԻՈԸՆԴՈՒՆԻՉ

Չեխոսլովակյան մասնագետները ստեղծել են գրպանի նոր ռադիոընդունիչ, որը հավաքված է կիսահաղորդիչների վրա և աշխատում է արևի էներգիայով։ Փոքրիկ մարտկոցը արևի էներգիան վերափոխում է էլեկտրականի և նրանով սնում ռադիոընդունիչը։

ԳԻՆԸ 25 ԿՈՊ.։

# ԲԱՑՎԱԾ Է

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ

## «ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ»

ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳՐԻ

## 1962 ԹՎԱԿԱՆԻ ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

**ԱՄՍԱԳԻՐԸ**

*հրապարակում է ՍՄԿՊ և ՀԿՊ պատմության, ռևոլյուցիոն շարժման, քաղաքատնտեսության, փիլիսոփայության, արդյունաբերության և գյուղատնտեսության էկոնոմիկայի, միջազգային կյանքի վերաբերյալ հոդվածներ։*

**ԱՄՍԱԳԻՐԸ**

*լուսաբանում է ռեսպուբլիկայում կոմունիստական շինարարության պրակտիկան, զետեղում է նյութեր պարտիական, կոմերիտական, պրոֆմիութենական և սովետական շինարարության, պրոպագանդիստական և մասսայական-քաղաքական աշխատանքի հարցերի մասին։*

**ԱՄՍԱԳԻՐԸ**

*լուսաբանում է գիտության, գրականության ու արվեստի զարգացման հարցերը, տպագրում է կոնսուլտացիաներ, տեղեկանքներ, մամուլի տեսություններ, քննադատական-գրախոսական հոդվածներ, պատասխանում է ընթերցողների հարցերին։*

**ԱՄՍԱԳԻՐԸ**

*տպագրում է նյութեր եղբայրական սովետական ռեսպուբլիկաների, ժողովրդական դեմոկրատիայի երկրների, արտասահմանյան կոմունիստական շարժման մասին։*

### ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅԱՆ ԱՐԺԵՔԸ

Տարեկան — 3 ռ.

Կես տարին — 1 ռ. 50 կ.

### ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆՆ ԸՆԴՈՒՆՎՈՒՄ Է՝

*Կապի գրասենյակներում, բաժանմունքներում, «Սոյուզպեչատ»-ի քաղաքային բաժիններում, գործարաններում, ֆաբրիկաներում, հիմնարկ-ձեռնարկություններում, ուսումնական հաստատություններում, սովխոզներում, կոլտնտեսություններում՝ մամուլի հասարակական լիազորների միջոցով։*

*«ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ»*